# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**5** ՄԱՅԻՍ 1973

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов» — теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն



# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԸ

1973 թ. ապրիլի 26—27-ը կայացավ ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը:

Պլենումը լսեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ զեկուցումը «Կուսակցության XXIV համագումարի որոշումների իրականացման ուղղությամբ ՍՄԿԿ Կենտկոմի միջազգային գործունեության մասին»:

Զեկուցման շուրջ ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեցին ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկ. Ն. Վ. ՊՈԴԳՈՌՆԻՆ, ՍՄԿԿ Լենինգրադի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Գ. Վ. ՌՈՄԱՆՈՎԸ, Մոսկվայի Մ. Վ. Ֆրունզեի անվան բամբակե գործվածքեղենի ֆաբրիկայի ջուլհակուհի ընկ. Մ. Ս. ԻՎԱՆՆԻԿՈՎԱՆ, Ադրբեջանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Հ. Ա. ԱԼԻԵՎԸ, ՍՍՀՄ Մինիստրների սովետի նախագահ ընկ. Ա. Ն. ԿՈՍԻԳԻՆԸ, ՍՄԿԿ Սվերդլովսկի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. ՅԱ. Պ. ՌՅԱԲՈՎԸ, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար ընկ. Մ. Ա. ՍՈՒՍԼՈՎԸ, Ղազախստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Դ. Ա. ԿՈՒՆԱԵՎԸ, Ուկրաինայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Վ. ՇՉԵՐԲԻՑԿԻՆ, ՍՍՀՄ արտաքին գործերի մինիստր ընկ. Ա. Ա. ԳՐՈՄԻԿՈՆ, Կիրգիզիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Տ. ՈՒՍՈՒԲԱԼԻԵՎԸ, ՍՍՀՄ պաշտպանության մինիստր ընկ. Ա. Ա. ԳՐԵՉԿՈՆ, ՍՍՀՄ կոմպոզիտորների միության վարչության առաջին քարտուղար ընկ. Տ. Ն. ԽՐԵՆՆԻԿՈՎԸ, ՍՍՀՄ Մինիստրների սովետին առընթեր պետական անվտանգության կոմիտեի նախագահ ընկ. ՅՈՒ. Վ. ԱՆԴՐՈՊՈՎԸ, Բելոռուսիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Պ. Մ. ՄԱՇԵՐՈՎԸ, Ուզբեկստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Շ. Ռ. ՌԱՇԻԴՈՎԸ, Լիտվայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ա. ՅՈՒ. ՍՆԵՉԿՈՒՍԸ, ՍՍՀՄ արտաքին առևտրի մինիստր ընկ. Ն. Ս. ՊԱՏՈԼԻՉԵՎԸ, Կրասնոդարի երկրամասի Ուստ-Լաբինսկի շրջանի «Կուբան» կոլտնտեսության կոմպլեքսային բրիգադի բրիգադավար ընկ. Մ. Ի. ԿԼԵՊԻԿՈՎԸ:

Պլենումում եզրափակման խոսքով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԸ:

Պլենումը միաձայն որոշում ընդունեց այդ հարցի վերաբերյալ:

Պլենումը թոշակի անցնելու կապակցությամբ ընկ. Պ. Ե. ՇԵԼԵՍՏԻՆ ազատեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամի պարտականություններից:

Պլենումը թոշակի անցնելու կապակցությամբ ընկ. Գ. Ի. ՎՈՐՈՆՈՎԻՆ ազատեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամի պարտականություններից:

Պլենումը ընկ. ՅՈՒ. Վ. ԱՆԴՐՈՊՈՎԻՆ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածուից փոխադրեց քաղբյուրոյի անդամ:

Պլենումը ընկ. Ա. Ա. ԳՐՈՄԻԿՈՅԻՆ ընտրեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ:

Պլենումը ընկ. Ա. Ա. ԳՐԵՉԿՈՅԻՆ ընտրեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ:

Պլենումը ընկ. Գ. Վ. ՌՈՄԱՆՈՎԻՆ ընտրեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու:

Դրանով ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը ավարտեց իր աշխատանքը:

# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXIV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԻ ԻՐԱԿԱՆԱՑՄԱՆ ՈՒՂՂՈՒԹՅԱՄԲ ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

## ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՈՒՄԸ՝ ԸՆԴՈՒՆՎԱԾ 1973 Թ. ԱՊՐԻԼԻ 27-ԻՆ

Լսելով և քննարկելով ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցումը կուսակցության XXIV համագումարի որոշումների իրականացման ուղղությամբ ՍՄԿԿ Կենտկոմի միջազգային գործունեության մասին, Կենտկոմի պլենումը ամբողջովին և լիովին հավանություն է տալիս ամբողջ աշխարհում կայուն խաղաղություն հաստատելու և կոմունիզմ կառուցող սովետական ժողովրդի համար հուսալի անվտանգություն ապահովելու նպատակով քաղբյուրոյի կատարած աշխատանքին և նշում է ընկ. Լ. Ի. Բրեժնևի անձնական մեծ ավանդը այդ խնդիրների լուծման գործում:

Պլենումը լիակատար համաձայնություն է հայտնում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարի զեկուցման մեջ տրված միջազգային իրադրության վերլուծությանը և ընդգծում է ՍՄԿԿ միջազգային գործունեության բնագավառի այն խնդիրների հրատապությունը, որոնք առաջ են քաշվել զեկուցման մեջ:

ՍՄԿԿ-ի ակտիվ, նախաձեռնող միջազգային քաղաքականությունը, որը հենվում է սովետական պետության հզոր ուժի ու հեղինակության վրա, ողջ ժողովրդի աջակցության վրա, նպաստում է համաշխարհային իրադրության մեջ տեղի ունեցող դրական տեղաշարժերին: Զգալիորեն ամրապնդվել են սոցիալիզմի եղբայրական երկրների դիրքերն ու նրանց միասնությունը, մեծացել է նրանց համաձայնեցված քաղաքականության ազդեցությունը միջազգային իրադարձությունների ընթացքի վրա, լայն ճանաչում են ստացել խաղաղ գոյակցության սկզբունքները որպես սոցիալական տարբեր կարգերի պատկանող պետությունների հարաբերությունների նորմաներ, շրջադարձ է կատարվում «սառը պատերազմից» դեպի լարվածության մեղմացում: Դադարեցված է Վիետնամի դեմ ուղղված իմպերիալիստական ագրեսիան:

Դրա հետ մեկտեղ պլենումը վերստին ուշադրություն է հրավիրում այն բանի վրա, որ անհրաժեշտ է ցուցաբերել մշտական զգոնություն և պատրաստ լինել հակահարված տալու իմպերիալիզմի ագրեսիվ, ռեակցիոն շրջանների բոլոր ոտնձգություններին:

Կենտկոմի պլենումը քաղբյուրոյին հանձնարարում է այսուհետև ևս անշեղորեն իրականացնել ՍՄԿԿ XXIV համագումարի սահմանած արտաքին քաղաքական կուրսը, ղեկավարվելով ներկա պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևի տված զեկուցման դրույթներով ու հետևություններով, պայքարել խաղաղության ծրագիրը լիովին կենսագործելու համար, հասնել այն բանին, որ միջազգային իրադրության մեջ ձեռք բերված բարենպաստ փոփոխությունները հաստատուն բնույթ կրեն: Դրան մեծապես կնպաստի մեր կուսակցության ու պետության ղեկավարների և մյուս պետությունների ներկայացուցիչների միջև բարձր մակարդակի ուղղակի կոնտակտների շարունակումը:





ՍՄԿԿ-ն անհրաժեշտ ամեն բան կանի սոցիալիստական պետությունների հետագա համախմբման, նրանց հետ համակողմանի եղբայրական կապերի ամրապնդման և ընդլայնման համար: Առանձնակի նշանակություն է ստանում ՏՓԽ-ի երկրների հետ տնտեսական համագործակցության կատարելագործումը, որը ներկա փուլում պահանջում է առավելագույնս օգտագործել սոցիալիստական տնտեսական ինտեգրացման հնարավորությունները, որ կնպաստի սոցիալիստական համագործակցության տնտեսական ու պաշտպանական հզորության հետագա ամրապնդմանը:

ՍՄԿԿ-ն հավաստում է սովետական ժողովրդի համերաշխությունը վիետնամական ժողովրդի հետ և ըստ ամենայնի կնպաստի խաղաղության հաստատմանը Հնդկաչինում:

ՍՄԿԿ Կենտկոմը ելնում է այն բանից, որ նախադրյալներ են ստեղծվել Եվրոպայում անվտանգության ու համագործակցության կայուն սիստեմ ստեղծելու համար, որը խաղաղ գոյակցության կենդանի և ձգողական օրինակ կհանդիսանար: Այդ առնչությամբ պլենումը սկզբունքային նշանակություն է տալիս համաեվրոպական խորհրդակցության հաջող անցկացմանը:

Պլենումը հավանություն է տալիս սոցիալական այլ կարգ ունեցող պետությունների հետ Սովետական Միության հարաբերությունները խաղաղ գոյակցության սկզբունքներով կարգավորելու ուղղությամբ կատարվող աշխատանքին և դա համաշխարհային քաղաքականության մեջ դրական միտումների ընդլայնման և ամրապնդման կարևոր պայմանն է համարում: Այդ երկրների հետ ՍՍՀՄ-ի արտաքին տնտեսական փոխշահավետ կապերի աշխուժացումը, այդ ճանապարհին եղած նոր հնարավորությունների օգտագործումը կնպաստեն խաղաղության ամրապնդմանը և համապատասխանում են մեր ժողովրդի շահերին:

Պլենումը անհրաժեշտ է համարում այսուհետև էլ զարգացնել համագործակցությունը Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի պետությունների հետ. հավաստում է իսրայելական ագրեսիայի դեմ պայքարող արաբական ժողովուրդների օրինական իրավունքները պաշտպանելու, մերձավորարևելյան կոնֆլիկտը ՄԱԿ-ի անվտանգության խորհրդի հայտնի բանաձևին համապատասխան կարգավորելու ՍՄԿԿ-ի գիծը:

Պլենումը գոհունակությամբ է նշում մարքս-լենինյան կուսակցությունների և մասսայական հասարակական շարժումների համերաշխությունը խաղաղության ծրագրի իրականացման ուղղությամբ ՍՄԿԿ-ի և սովետական պետության գործունեության հետ: ՍՄԿԿ-ն առաջվա պես հաստատակամորեն սոցիալիստական, լենինյան կուրս կվարի իմպերիալիզմի դեմ ուղղված հակամարտության մեջ, իր ամբողջ միջազգային քաղաքականության մեջ, կաջակցի անկախության և սոցիալական առաջադիմության իրենց իրավունքը պաշտպանող ժողովուրդներին: Հետևողականորեն հանդես գալով մարքսիզմ-լենինիզմի

սկզբունքների հիման վրա կոմունիստական շարժման քաղաքական ու գաղափարական համախմբվածությունն ապահովելու օգտին, ՍՄԿԿ Կենտկոմը պատրաստակամություն է հայտնում եղբայրական կուսակցությունների հետ միասին մասնակցելու այդ նպատակին ուղղված կոնկրետ նախաձեռնությունների իրականացմանը:

Պլենումն ընդգծում է, որ սոցիալիստական երկրների և համաշխարհային կոմունիստական շարժման համախմբվածության դեմ, միջազգային լարվածության մեղմացմանը ձգտող խաղաղասեր պետությունների ու ժողովուրդների ջանքերի դեմ ՉԺՀ-ի ղեկավարության համառ պայքարը, Պեկինի հակասովետական կուրսը վնաս է հասցնում խաղաղության գործին և միջազգային սոցիալիզմին: Պլենումը հավաստում է մեր կուսակցության վճռականությունը՝ Չինաստանի հետ հարաբերություններում այսուհետև ևս վարելու ՍՄԿԿ XXIV համագումարի գիծը:

Կենտկոմի պլենումը ՍՍՀՄ-ի կոմունիստներին, բոլոր աշխատավորներին կոչ է անում հնգամյակի երրորդ՝ վճռական տարվա հարվածային աշխատանքով դնել ՍՄԿԿ XXIV համագումարի սահմանած բոլոր պլանային առաջադրանքների կատարման ու գերակատարման ամուր հիմքը, հասնել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի արդյունավետության զգալի աճին և թողարկվող արտադրանքի որակի բարձրացման:

Հայրենիքի բարօրության օգտին իր անձնվեր աշխատանքով , բարձր գիտակցականությամբ, լենինյան կուսակցության շուրջը համախմբվածությամբ սովետական ժողովուրդը նոր մեծ ավանդ կներդնի խաղաղության ապահովման և մարդկության սոցիալական առաջադիմության գործում:





*ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՈՐՈՇՈՒՄԸ*

# ՌՍԴԲԿ II ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ 70-ԱՄՅԱԿԻ ՄԱՍԻՆ

1973 թվականի հուլիսի 30-ին լրանում է ՌՍԴԲԿ 2-րդ համագումարի բացման 70 տարին: Համագումարի համաշխարհային պատմական նշանակությունն այն է, որ այդ համագումարում ավարտվեց հեղափոխական մարքսիստական կազմակերպությունների միավորման պրոցեսը և կազմավորվեց Ռուսաստանի բանվոր դասակարգի կուսակցությունը՝ գաղափարա-քաղաքական ու կազմակերպական այն սկզբունքների հիման վրա, որոնք մշակվել էին Վ. Ի. Լենինի կողմից: Երևան եկավ նոր տիպի պրոլետարական կուսակցություն՝ բոլշևիկների կուսակցությունը, լենինյան մեծ կուսակցությունը: «Բոլշևիզմը, որպես քաղաքական մտքի հոսանք և որպես քաղաքական կուսակցություն, գոյություն ունի 1903 թվականից» (Լենին):

Այդ պահից ի վեր մեր կուսակցության անցած ուղին պատմության մեջ իրեն հավասարը չունի: Համեմատաբար ոչ մեծ ընդհատակյա կազմակերպությունից նա վերածվեց կոմունիստների հզոր, համախմբված, գրեթե տասնհինգմիլիոնանոց բանակի՝ աշխարհում առաջին սոցիալիստական պետության կառավարող կուսակցության: ՍՄԿԿ-ն՝ բանվոր դասակարգի կուսակցությունը, դարձել է կոմունիզմ կառուցող բովանդակ սովետական ժողովրդի մարտական ավանգարդը: Հանձին կուսակցության, գրել է Լենինը, «մենք տեսնում ենք մեր դարաշրջանի միտքը, պատիվն ու խիղճը»:

Ստեղծելով կուսակցությունը, Վ. Ի. Լենինը ելնում էր այն բանից, որ իմպերիալիզմի և պրոլետարական հեղափոխությունների պայմաններում բանվոր դասակարգին անհրաժեշտ էր նոր տիպի կուսակցություն, իսկապես հեղափոխական, իսկապես կոմունիստական կուսակցություն, որը պետք է արմատապես տարբերվի Երկրորդ ինտերնացիոնալի կուսակցություններից: Կուսակցությունը, Վ. Ի. Լենինի բնորոշմամբ, պետք է գլխավորի պրոլետարիատի պայքարը հասարակության հեղափոխական վերափոխման համար, լինի կապիտալիզմից սոցիալիզմին և կոմունիզմին հեղափոխականորեն անցնելու առաջատար ուժը: Հենվելով Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի դրույթների, ռուսական և համաշխարհային բանվորական շարժման փորձի վրա, ստեղծագործաբար զարգացնելով մարքսիզմը իմպերիալիզմի դարաշրջանի պայմաններում, Լենինը ստեղծեց ամբողջական ուսմունք կուսակցության, որպես բանվոր դասակարգի հեղափոխական կազմակերպության բարձրագույն ձևի, մասին, համակողմանիորեն մշակեց նրա տեսական ու կազմակերպական հիմունքները. բոլշևիզմի ստրատեգիան ու տակտիկան, կուսակցական կյանքի նորմերը և կուսակցական ղեկավարության սկզբունքները:

Ռուսաստանում հեղափոխական պրոլետարական կուսակցության սաղմը հանդիսացավ 1895 թվականին Վ. Ի. Լենինի կողմից ստեղծված Պետերբուրգի «Բանվոր դասակարգի ազատագրության պայքարի միությունը», որի շուրջը սկսեցին միավորվել երկրի մի շարք արդյունաբերական կենտրոնների սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունները: 1898 թվականին տեղի ունեցավ առաջին համագումարը, որը հռչակեց Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական

բանվորական կուսակցության (ՌՍԴԲԿ) հիմնադրումը: Սակայն Լենինի ու աքսորում գտնվող նրա մերձավոր փինակիցների բացակայությամբ կայացած համագումարը չկարողացավ մշակել կուսակցության ծրագիր և կանոնադրություն, հաղթահարել սոցիալ-դեմոկրատական շարժման տարընթացությունը:

Հեղափոխական պրոլետարական կուսակցության գաղափարական ու կազմակերպական նախապատրաստության, օպորտունիստներից սահմանազատվելու գործում ակնառու ծառայություն է պատկանում Լենինի ստեղծած ու նրա ղեկավարած «Իսկրա» թերթին: Թերթի շուրջը սկզբունքային մարքսիստական հիմքի վրա համախմբվեցին կուսակցության տեղական կոմիտեները, պրոֆեսիոնալ հեղափոխականների մի ամբողջ պլեադա: «Իսկրան», Լենինի խոսքերով, միավորեց Ռուսաստանի հեղափոխական պրոլետարիատի ամբողջ ծաղիկը:

ՌՍԴԲԿ երկրորդ համագումարը ընդունեց կուսակցության մարքս-լենինյան ծրագիրը՝ ինքնակալության, կալվածատերերի և կապիտալիստների իշխանության տապալման համար, պրոլետարիատի դիկտատուրայի՝ որպես հասարակության սոցիալիստական վերափոխման գործիքի, հաստատման համար մղվող պայքարի ծրագիրը: Նա ամրապնդեց բոլշևիզմի հաղթանակը «էկոնոմիստների» օպորտունիզմի նկատմամբ, ուժգին հարված հասցրեց միջազգային սոցիալ-դեմոկրատիայում նրանց համախոհներին:

ՌՍԴԲԿ երկրորդ համագումարը շրջադարձային կետ հանդիսացավ նաև համաշխարհային բանվորական շարժման մեջ: «Բոլշևիկյան կուսակցության ստեղծումը,— ասված է «Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ» ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսներում,— նոր էտապ բացեց ռուսական և միջազգային բանվորական շարժման մեջ: Առաջին անգամ պրոլետարիատը ունեցավ մի կազմակերպություն, որն ունակ է պատմական նոր պայմաններում հաջողությամբ վարելու նրա պայքարը սոցիալական ազատագրության համար»:

Կուսակցության մասին Լենինի ուսմունքը խոշորագույն ավանդ է հեղափոխական մարքսիզմի գանձարանում: Մարքսիզմ-լենինիզմի մեջ իրենց գիտական արտահայտությունը գտան բոլոր երկրների պրոլետարների դասակարգային պայքարի կենսական պահանջմունքները:

Վ. Ի. Լենինը կուսակցությունն ստեղծում, ամրապնդում և կոփում էր՝ անհրաժեշտ պայքար մղելով բուրժուական և մանրբուրժուական գաղափարախոսության, ռևիզիոնիզմի, տրոցկիզմի, աջ և «ձախ» օպորտունիզմի, սոցիալ շովինիստների և նացիոնալ-ուկլոնիստների դեմ, մարքսիզմի հեղափոխական սկզբունքների բոլոր հակառակորդների դեմ:

Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ հաղթեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, որը բացեց մարդկության պատմության նոր՝ կապիտալիզմից սոցիալիզմին և կոմունիզմին անցնելու դարագլուխը:

Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ իրագործվեցին իրենց խորությամբ, թափով ու տեմպերով չտեսնված սոցիալիստական վերափոխումներ: Մեր հայրենիքը, հաղթահարելով դարավոր հետամնացությունը, դարձավ սոցիալիստական հզոր տերություն: ՍՄԿԿ-ն բոլոր ազգությունների աշխատավորներին միավորեց մարքսիզմ-լենինիզմի գաղափարական հիմքի վրա, դաստիարակեց մարդկանց սերունդներ՝ կոմունիզմի անձնվեր կառուցողների, իսկական ինտերնացիոնալիստների սերունդներ:



Լենինյան կուսակցության շուրջը սովետական ժողովրդի միաձույլ համախմբվածությունը, Հոկտեմբերի գործին, սոցիալիստական հայրենիքին, նրա անսահման նվիրվածությունը վառ կերպով դրսևորվեցին Հայրենական մեծ պատերազմի դաժան տարիներին: Սովետական մարդիկ անօրինակ արիություն, մասսայական հերոսություն ցուցաբերեցին ռազմաճակատում և թիկունքում: Հավատարիմ լինելով իր ինտերնացիոնալ պարտքին, Սովետական Միությունը օգնեց ստրկացված ժողովուրդներին ազատագրվելու ֆաշիստական լծից: Առաջին սոցիալիստական պետության հզորությունը, ՍՄԿԿ-ի լենինյան ճիշտ քաղաքականությունը նպաստեցին Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրներում ժողովրդա-դեմոկրատական, սոցիալիստական հեղափոխությունների հաջողությանը, իմպերիալիզմի գաղութային սիստեմի փլուզմանը:

ՍՄԿԿ-ի ղեկավարությամբ սովետական ժողովրդի իրականացրած սոցիալ-տնտեսական խոշորագույն վերափոխումների գլխավոր արգասիքը եղավ կարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցումը: Հասարակության տնտեսական, սոցիալական և հոգևոր կյանքում կատարված արմատական փոփոխությունների հիման վրա կազմավորվեց մարդկանց պատմական նոր հանրություն՝ սովետական ժողովուրդը, ավելի քան հարյուր ազգերի և ազգությունների աշխատավորների անխախտ եղբայրությունը, որոնք միաձուլված են ընդհանուր շահերով ու նպատակներով, միասնական մարքս-լենինյան գաղափարախոսությամբ: Ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների բարեկամության վառ ցուցադրումը եղավ ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի համաժողովրդական տոնակատարությունը:

Սոցիալիստական հասարակարգի զարգացման կարևորագույն օբյեկտիվ օրինաչափությունը կոմունիստական կուսակցության ղեկավար դերի աճն է, որն ավելի մեծ ուժով է դրսևորվում կոմունիզմի կառուցման փուլում:

ՍՄԿԿ ծրագրում, XXIII և XXIV համագումարների որոշումներում և այլ փաստաթղթերում կուսակցության մասին լենինյան ուսմունքը իր հետագա զարգացումն է գտնում: Ստեղծագործաբար հարստացնելով մարքսիզմ-լենինիզմը, ՍՄԿԿ-ն համագումարների և պլենումների որոշումներում, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50-ամյակի, Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի, Սովետական Միության 50-ամյակի հետ կապված կուսակցական փաստաթղթերում տվեց սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման, արդի համաշխարհային հեղափոխական շարժման փորձի խոր ընդհանրացումը:

Կուսակցության, ամբողջ սովետական ժողովրդի կյանքում ակնառու իրադարձություն էր ՍՄԿԿ XXIV համագումարը, որը մշակեց արդի փուլում կոմունիստական շինարարության քաղաքական հստակ գիծը: Համագումարը պատմական խնդիր առաջ քաշեց՝ ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության նվաճումները օրգանապես միացնել տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունների հետ, ապահովել ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի նշանակալի վերելք՝ արտադրողական ուժերի արագ ու համակողմանի զարգացման հիման վրա:

Կուսակցության ղեկավարությամբ բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը, ժողովրդական մտավորականությունը հաջողությամբ իրականացնում են համագումարի որոշումները: Ուշադրության կենտրոնում է համառ պայքարը իններորդ հնգամյակի երրորդ, վճռական տարվա պլանի կատարման համար: «Այժմ գլխավոր խնդիրն է,— ընդգծում է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևը,— շեշտակիորեն փոխել կողմնորո-

շումը, շեշտը դնել տնտեսության վարման ինտենսիվ մեթոդների վրա, դրանով իսկ ապահովել էկոնոմիկայի արդյունավետության լուրջ բարձրացումը»:

Իրականացնելով սովետական քաղաքական սիստեմի կատարելագործման համակողմանի նպատակասլաց գործունեություն, ՍՄԿԿ-ն մեծ ուշադրություն է նվիրում սոցիալիստական դեմոկրատիայի հետագա կարգացմանը, աշխատավորների դեպուտատների սովետների՝ իսկական ժողովրդապետության մարմինների, արհմիությունների, կոմերիտական և մյուս մասսայական հասարակական կազմակերպությունների դերի ըստ ամենայնի բարձրացմանը:

Որքան լավ է կուսակցության որակական կազմը, որքան կազմակերպված են գործում նրա բոլոր կոմունիստները ընդունված որոշումների կատարման ասպարեզում, այնքան բարձր է կուսակցության ղեկավար դերը: Դա ամենաանմիջական կերպով կախված է կուսակցական կարգապահության, կոմունիստների գաղափարական համոզվածության և տեսական պատրաստության մակարդակից, դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքի հետևողական իրականացումից, կոմունիստական շինարարության բոլոր ասպարեզներում մասսաների հետ կոմունիստների ամենօրյա կապից: ՍՄԿԿ-ն մշտապես կատարելագործում է կուսակցական ղեկավարման ոճն ու մեթոդները: Նա անդուլ կերպով հոգ է տանում իր բոլոր կազմակերպությունների մարտունակությունը բարձրացնելու մասին, կոմունիստներին դաստիարակում է թերությունների նկատմամբ բոլշևիկյան անհաշտության ոգով, անհրաժեշտ պայմաններ է ստեղծում քննադատության և ինքնաքննադատության կարգացման համար: Կուսակցական փաստաթղթերի փոխանակման կապակցությամբ կատարվող քաղաքական և կազմակերպչական աշխատանքը նպաստում է կուսակցության հետագա ամրապնդմանը, հասարակության ամբողջ կյանքի ղեկավարման մեթոդների կատարելագործմանը, հանձնարարված գործի համար յուրաքանչյուր կոմունիստի պատասխանատվության բարձրացմանը:

ՍՄԿԿ-ն հետևողական պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի կուսակցություն է: Ինտերնացիոնալիզմի դրոշով նա բազմազգ սովետական երկրի աշխատավորներին բոլոր փորձությունների միջով հասցրեց համաշխարհային պատմական նշանակություն ունեցող հաղթանակների ու նվաճումների: Ինտերնացիոնալիզմը, նացիոնալիզմի ամեն տեսակ դրսևորումների նկատմամբ անհաշտությունը մեր կյանքի օրենքն է, կոմունիստական շինարարության խնդիրների հաջող լուծման կարևորագույն պայմանը:

XXIV համագումարի մշակած խաղաղության ծրագրի իրականացման՝ ՍՄԿԿ-ի արտաքին քաղաքական կուրսը ապահովում է մեր երկրում կոմունիստական շինարարության բարենպաստ արտաքին պայմաններ, համաշխարհային սոցիալիստական համագործակցության ամրապնդում, նպաստում է բանվորական և ազգային-ազատագրական շարժմանը: Նա ուղղված է իմպերիալիզմի ագրեսիվ քաաքականության դեմ, խաղաղ գոյակցության սկզբունքների և հակադիր սոցիալական սիստեմ ունեցող պետությունների հետ փոխշահավետ համագործակցության հաստատման, ընդհանուր խաղաղության և ժողովուրդների անվտանգության ամրապնդման, ամբողջ աշխարհում սոցիալական առաջադիմության ապահովման նպատակին: Այդ կուրսը համապատասխանում է բոլոր ժողովուրդների շահերին:

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը համաշխարհային կոմունիստական շարժման մարտական, փորձված ջոկատն է: ՍՄԿԿ-ի տեսական գործունեությունը, նրա լենինյան սկզբունքային քաղաքականությունը,



սոցիալիստական համագործակցության համախմբվածության համար, մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի հիման վրա ամբողջ միջազգային կոմունիստական շարժման միասնության համար, բուրժուական գաղափարախոսության, ռեֆորմիզմի, աջ և «ձախ» օպորտունիզմի դեմ նրա հետևողական պայքարը արժանանում են եղբայրական մարքս-լենինյան կուսակցությունների հավանությանն ու աջակցությանը: Լենինիզմի սկզբունքների կենսագործման, հեղափոխական պայքարի, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ղեկավարման ՍՄԿԿ-ի հսկայական փորձը, պատմական յուրաքանչյուր նոր փուլի պահանջներին համապատասխան բուն կուսակցության կարգացման մեծ փորձը դարձել է ամբողջ համաշխարհային հեղափոխական շարժման սեփականությունը: Առանց այդ փորձի համակողմանի հաշվառման, աներևակայելի է մարքսիզմ-լենինիզմի կարգացումը:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն անհրաժեշտ է համարում ՌՍԴԲԿ 2-րդ համագումարի 70-ամյակը լայնորեն նշել որպես լենինյան կուսակցության պատմության, մեր երկրի պատմության, ամբողջ միջազգային կոմունիստական և բանվորական շարժման պատմության նշանակալի տարեթիվ:

Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմները, կուսակցության երկրկոմները, մարզկոմները, քաղկոմները և շրջկոմները, սկզբնական կուսակցական կազմակերպությունները, սովետական բանակի և ռազմա-ծովային նավատորմի գլխավոր քաղաքական վարչությունը, սահմանապահ և ներքին զորքերի քաղվարչությունները այդ տարեթվի կապակցությամբ պետք է քաղաքական աշխատանք ծավալեն բնակչության բոլոր խավերի մեջ, հատուկ ուշադրություն նվիրելով կուսակցության մասին լենինյան ուսմունքի, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ղեկավարման ՍՄԿԿ-ի համաշխարհային պատմական փորձի, համաշխարհային կոմունիստական ու բանվորական շարժման միասնության և համախմբվածության համար նրա պայքարի պրոպագանդմանը:

Լայնորեն օգտագործելով Հոկտեմբերի 50-ամյակի և Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի, ՍՄԿԿ XXIV համագումարի հետ կապված կուսակցական փաստաթղթերը, պրոպագանդիստական և մասսայական-քաղաքական աշխատանքն ուղղել «Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության հիսնամյակի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ շարադրված խնդիրների լույսի տակ աշխատավորների կոմունիստական դաստիարակությունն ուժեղացնելու նպատակին: Կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների քաղաքական ու կազմակերպչական աշխատանքի գլխավոր բովանդակությունը պետք է դառնա 1973 թվականի ժողովրդատնտեսական պլանը և ամբողջությամբ վերցրած իններորդ հնգամյակի առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար համաժողովրդական սոցիալիստական մրցության կարգացումը:

ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտը, հասարակական գիտությունների ակադեմիան և բարձրագույն կուսակցական դպրոցը, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի հումանիտար ինստիտուտների մասնակցությամբ, կանցկացնեն ՌՍԴԲԿ 2-րդ համագումարի 70-ամյակին նվիրված գիտական կոնֆերանս: Վ. Ի. Լենինի կենտրոնական թանգարանը և նրա ֆիլիալները, Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի թանգարանը կկազմակերպեն ՍՄԿԿ-ի պատմական ուղին արտացոլող ցուցահանդեսներ:

## ԱՌԱՎԵԼ ՆՊԱՏԱԿԱՍԼԱՑ ՈՒ ՆԵՐԳՈՐԾՈՒՆ

Մեր կուսակցության գաղափարական պայքարի հարուստ վինանոցում իրենց ուրույն տեղն ու դերն ունեն սովետական մամուլը, հեռուստատեսությունը և ռադիոն, որոնց տոնն ամեն տարվա մայիսին մեծ շուքով ու հանդիսավորությամբ նշվում է մեր անծայրածիր հայրենիքում:

Արդեն երկու տարուց ավելի է, ինչ սովետական մամուլը, հեռուստատեսությունն ու ռադիոն անդուլ պրոպագանդում են իններորդ հնգամյակի խնդիրները: Ինչպես ողջ երկրում, այնպես էլ մեր հանրապետությունում, հայաբավոր բանգյուղթղթակիցների, ժուռնալիստների գլխավոր հոգսը ՍՄԿԿ XXIV համագումարի պատմական որոշումների կենսագործումն է,՝ կոմունիստական կուսակցության ու սովետական կառավարության սոցիալ-տնտեսական քաղաքականության պրոպագանդան: Նրանց ելույթները նոր լիցք ու կշիռ են ստացել հատկապես ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1972) պլենումից հետո, հնգամյակի երրորդ՝ վճռական տարվա ժողովրդա-տնտեսական պլանները ժամկետից շուտ կատարելու համար մղվող պայքարում:

Այս ամբողջ ժամանակամիջոցում հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումը, գիտության ու ժողովրդական տնտեսության կապի ամրապնդումը՝ աշխատատար պրոցեսների համակողմանի մեքենայացումը, արտադրանքի որակի բարելավումը, ինքնարժեքի իջեցումը, խնայողության հաստատուն ռեժիմի կիրառումը, ռեզերվների ու հնարավորությունների առավել լիակատար օգտագործումը, սոցիալիստական մրցության հետագա կարգացումը եղել և մնում են ինֆորմացիայի ու մասսայական պրոպագանդայի առանցքային հարցերը:

Գոհունակությամբ պետք է նշել, որ հանրապետության մամուլը, հեռուստատեսությունը, ռադիոն տալիս են մեր բազմաբովանդակ առօրյայի վառ ու տպավորիչ նկարագիրը, շարունակում աշխատավորներին հաղորդել կուսակցության առաջադրած հիմնական խնդիրները, ակտիվորեն նպաստել մեր երկրում կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծմանը: Հիշարժան են հատկապես այն ջանքերը, որ ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի նախապատրաստության ընթացքում գործադրվեցին հանրապետության բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի մտահորիզոնի ընդլայնման, ստեղծագործական ակտիվության բարձրացման, սոցիալիստական հայրենասիրության պրոպագանդման, կյանքի բոլոր բնագավառներում ու կենցաղում ինտերնացիոնալիզմի սկզբունքների խորացման համար: Տեսադաշտում ունենալով բովանդակ Սովետական Միությունը, որի համաստեղության մեջ բոլոր հանրապետությունները՝ և՛ մեծերը, և՛ փոքրերը առաջին մեծության աստղեր են, մեր մամուլի և ինֆորմացիայի օրգանները հոբելյանական տարում պատշաճ մակարդակով լուսաբանեցին ՍՍՀՄ հիանալի նվաճումները, որպես սովետների երկրի բոլոր ազգերի ու ազգությունների համատեղ աշխատանքի արդյունք, որպես ժողովուրդների սոցիալիստական փոխօգնության, նրանց քաղաքական, սոցիալ-տնտեսական ու գաղափարական ընդհանրության արգասիք, որպես համապետական շահերը միութենական ու ինքնավար հանրապետությունների շահերի հետ ներդաշնակորեն զուգակցելու խորհրդանիշ: Քիչ հրապարակումներ ու հաղորդումներ չեղան ժողովուրդների լենինյան բարեկամության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի և սովետական հայրենասիրության գործարար դրսևորումների ու օրգանական միասնության մասին:

Վերոհիշյալ թեմաները տեսակարար մեծ կշիռ են կազմում նաև այժմ, երբ շարունակվում է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի՝ *Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության 50-ամյակի մասին* զեկուցման ու հոբելյանական մյուս փաստաթղթերի ակտիվ պրոպագանդան: Խելացի են վարվում մամուլի այն օրգաններն ու ինֆորմացիայի միջոցները, որոնք, գործարար խոսակցություն բացելով սովետական մարդկանց համազգային հպարտության մասին, իրենց հրապարակումներում ու հաղորդումներում շոշափում են ազգային հարցի և ազգային հարաբերությունների հետագա կարգացման, սովետական քաղաքացիների ինտերնացիոնալ դաստիարակության արմատական խնդիրները:

Իններորդ հնգամյակի ժողովրդա-տնտեսական պլանների կենսագործման համար մղվող պայքարը թևակոխել է իր ամենավճռական փուլը: Ուստի, հասկանալի է, թե ինչու մեր առջև նոր ուժով է ծառանում ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած խնդիրների արծարծման ու պրոպագանդման անհրաժեշտությունը, թե ինչու ամսագրերը, հանրապետական և շրջանային թերթերը, հեռուստատեսությունը, ռադիոն մշտապես անդրադառնում են արդյունաբերության, գիտության և ժամանակակից գյուղի պրոբլեմներին:

Ձգտելով մասսայականցնել փաստական առատ նյութը, որով այնպես հարուստ է կյանքը, «Սովետական Հայաստան», «Կոմունիստ», «Սովետ Էրմանիստանի», «Ռյա թազա» թերթերի խմբագրությունները, հատկապես վերջին ժամանակներում, իրենց ուշադրությունը բևեռել են այնպիսի անհրաժեշտ հարցերի լուսաբանման վրա, ինչպիսիք են հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումը, նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի արմատավորումը, կապիտալ շինարարության և արտադրանքի որակի բարելավումը:

Այս թերթերի էջերում կարևոր տեղ են զբաղեցնում արդյունաբերական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, սովխոզների կոլեկտիվների աշխատանքի նկարագրությունը, սոցիալիստական պարտավորությունների կատարման համար ծավալած նրանց անդուլ պայքարը: Հետաքրքրական են «Սովետական Հայաստան», «Կոմունիստ» թերթերի և հանրապետության հեռուս-

տնտեսության համատեղ ստուգայցերը գարնան գյուղատնտեսական աշխատանքների նախապատրաստության ու ընթացքի մասին:

Լավ գործ է ձեռնարկել երիտասարդական «Ավանգարդ» թերթը՝ պաշտպանելով ու զարգացնելով «Կոմերիտական տարին՝ 11 ամիս» հայրենասիրական նախաձեռնությունը: Շինարարության որակի հարցերն զգալի տեղ են գրավում «Երեկոյան Երևանի» էջերում: Տեխնիկական առաջընթացի ու ռեզերվների արդյունավետ օգտագործման բազմազան հարցերին է հաճախակի անդրադառնում Լենինականի «Բանվոր» քաղաքային թերթը:

«Հայաստանի արդյունաբերություն» ամսագիրը պարբերաբար անդրադառնում է արտադրանքի որակի ու հուսալիության բարձրացմանը: Ընթերցողների հիշողության մեջ խորապես տպավորվել է Չարենցավանի գործիքաշինական գործարանում կազմակերպված «Կլոր սեղանի շուրջը» միջոցառումը: ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի ու վերոհիշյալ ամսագրի խմբագրության՝ արտադրության մեջ գիտության և տեխնիկայի նվաճումների արագ արմատավորմանը նվիրված համատեղ նիստը հանգեցրեց ակադեմիայի սիստեմում տեխնիկական գիտությունների բաժնի ստեղծմանը, լուծվեցին պղնձի և մոլիբդենի աղքատ հանքավայրերի օգտագործման, տրանսֆորմատորների երկաթաթերթիկների պատրաստման պրոցեսի մեքենայացման հետ առնչվող խնդիրները:

Նպատակասլաց ու ներգործուն են «Հայաստանի գյուղատնտեսություն» ամսագրի հրապարակումները: Ժուռնալիստ-գյուղատնտեսները, մասնագետների հետ սերտորեն համագործակցած, բացահայտում են գյուղատնտեսության յուրաքանչյուր ճյուղի զարգացման ռեալ հնարավորությունները, հետևողականորեն պրոպագանդում ու մասսայականացնում առաջավոր տնտեսությունների գործունեությունը, գյուղատնտեսական արտադրության կազմակերպման նոր ձևերն ու մեթոդները:

Ակտիվացել է նաև շրջանային մամուլի գործունեությունը: Նրա շատ օրգաններ, տեղական առանձնահատկություններից ելնելով, առաջին պլան են մղել գյուղատնտեսական արտադրության հետ անմիջականորեն առնչվող որոշակի հարցեր: Սիսիանի «Որոտան» շրջանային թերթը, օրինակ, հատուկ ուշադրություն է նվիրում ֆերմաներում աշխատատար պրոցեսների մեքենայացման պրոբլեմին: Ստեփանավանի շրջանի կուսակցական կազմակերպությունների, սովետական և տնտեսական օրգանների աշխատանքային պրակտիկայից բխող շատ հարցեր և, հատկապես, գյուղատնտեսական մթերքների որակի բարձրացման խնդիրը լայնորեն արծարծվում են «Փարոս» թերթում: Սոցիալիստական մրցության կազմակերպման ու զարգացման ասպարեզում դրվատելի են «Արտաշատ», «Աշտարակ», «Սևան» շրջանային թերթերի խմբագրությունների գործադրած ջանքերը:

Ուսանելի շատ բան կարելի է գտնել հանրապետության հեռուստատեսության ու ռադիոյի ծրագրերում:

Հիմնական տպավորությունը բարենպաստ է: Հանրապետության ինֆորմացիայի ու պրոպագանդայի միջոցներն արդի փուլում առավել անմիջականորեն են արձագանքում հասարակական կյանքի կարևոր իրադարձություններին, ծանրակշիռ դարձնում իրենց հարցադրումները, արձագանքում ՍՄԿԿ XXIV համագումարի և Կենտրոնական կոմիտեի դեկտեմբերյան պլենումի որոշումներում արծարծված խնդիրներին: Նրանք հանդես են գալիս տեղերում ծնունդ առած հայրենասիրական նախաձեռնությունների պաշտպանությամբ, դրսևո-



րում սոցիալիստական մրցության հիմնական պրոցեսները լայնորեն ու խորությամբ լուսաբանելու ձգտում:

Սակայն մտահոգության առիթները ևս քիչ չեն:

Ժողովրդա-տնտեսական կարևոր նշանակություն ունեցող հարցեր բարձրացնելիս զգացվում է ընդգրկման սահմանափակությունը: Հասարակական արտադրության արդյունավետության խնդիրներն արծարծվում են առանձին ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների շրջանակներում: Ընդգրկման ոլորտի մեջ չեն ներառվում ժողովրդական տնտեսության ամբողջական ճյուղեր, մինիստրություններ ու գերատեսչություններ, քաղաքներ ու շրջաններ: Թերթերի ու ամսագրերի հրապարակումներից, ինչպես և հեռուստատեսության և ռադիոյի հաղորդումներից հազիվ թե հնարավոր լինի ստույգ գաղափար կազմել հանրապետության կուսակցական, սովետական, տնտեսական օրգաններին հուզող հոգսերի մասին: Իսկ հոգսերը շատ են: 1972 թվականին 97 ձեռնարկություն (ընդհանուրի 14 տոկոսը) թերակատարել է արտադրանքի իրացման պլանը: Դրա կեսը բաժին է ընկնում թեթև, մնացած մասը՝ էլեկտրատեխնիկական, քիմիական, գունավոր մետալուրգիայի արդյունաբերության ձեռնարկություններին: Ողջ արդյունաբերության մեջ տևականորեն թերակատարվում են նոր տեխնիկայի ներդրման պլանները, անբավարար են մեքենայացվում ու ավտոմատացվում արտադրապրոցեսները, խախտվում են նոր արտադրատեսակների յուրացման նորմատիվ ժամկետները: Բազմաթիվ կարևորագույն օբյեկտներ 1972 թվականին շահագործման չեն հանձնվել շինարարների անկազմակերպ աշխատանքի հետևանքով: Հանրապետության մի քանի շրջաններում անբավարար աշխատանք է ծավալվում մեքենայացման, քիմիացման, մելիորացման և գիտատեխնիկական առաջընթացի հիման վրա գյուղատնտեսական արտադրության արդյունավետության բարձրացման համար:

Մամուլի շատ օրգաններ վերջին ժամանակաշրջանում թուլացրել են տնտեսական ռեֆորմի պրոպագանդան, անուշադրության մատնել այդ ասպարեզում կուտակված փաստական հարուստ նյութը՝ մոռանալով, որ ռեֆորմը՝ կառավարման կատարելագործումը, տնտեսական մեխանիզմի վերակառուցման երկարատև պրոցես է: Նրանց էջերում խիստ պակասել է խնայողության հարցերի արծարծումը: Հազվադեպ են բարձրացվում ընթերցողներին հուզող այնպիսի կարևորագույն հարցեր, որպիսիք են՝ նյութական ու դրամական միջոցների արդյունավետ օգտագործումը, անարտադրողական ծախսերի շեշտակի կրճատումը:

Հանրապետության մամուլի, հեռուստատեսության, ռադիոյի հրատապ ու անմիջական խնդիրն է՝ ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի որոշումների ոգով սիստեմատիկաբար վերհանել ամբողջ տնտեսական աշխատանքի կատարելագործման, ժողովրդական տնտեսության պլանավորման արմատական բարելավման, արտադրության ղեկավարման ոճն ու նորանոր մեթոդները:

Անելիքները շատ են հատկապես «Սոցիալիստական մրցության կազմակերպման հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման պրոպագանդման ասպարեզում: Նրանք պարտավոր են կուսակցական կազմակերպություններին ավելի մոտիկից ու կոնկրետ օգնություն ցույց տալ աշխատավորական մասսաների ստեղծագործական ակտիվությունն ու նախաձեռնությունը զարգացնելու գործում, սոցիալիստական մրցության յուրաքանչյուր հարցին մոտենալ ՍՄԿԿ XXIV համագումարի մշակած սոցիալ-տնտեսական քաղաքակա-

նության դիրքերից, այդ շարժումն օրգանապես միահյուսել սոցիալիստական էկոնոմիկայի արագաթափ վարգացման խնդիրների հետ:

Թերթի յուրաքանչյուր համար, հեռուստատեսային ու ռադիոհաղորդման յուրաքանչյուր ծրագիր պետք է դարձնել աշխատանքի առաջավոր եղանակների ու ձևերի ուսուցման ամբիոն, չբավարարվել միայն արտադրական պլանների կատարման մասին թվերի հրապարակմամբ, կարողանալ իմաստավորել փաստերը, դրանք դիտել իբրև երևույթ:

Առաջնահերթ խնդիր է սխեմատիզմի վերացումը արտադրության նորարարների՝ բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության լավագույն ներկայացուցիչների փորձի տարածման գործում: Հարկ է աստիճանաբար ձերբազատվել աշխատանքի հերոսների կենսագրությունների սոսկական վերապատմումից, առավել լայն տեղ հատկացնել կենսական ու հասարակական նշանակություն ունեցող երևույթներին ու փաստերին, խորապես բացահայտել սոցիալիստական կոլեկտիվիզմի էությունը, համակողմանի լուսաբանել ժողովրդական տնտեսության ակտուալ պրոբլեմները: Պետք է ավելի հաճախակի տեղ հատկացնել իններորդ հնգամյակի առաջամարտիկներին:

Հրապարակվել են հանրապետության առանձին քաղաքների, շրջանների, մինիստրությունների, շինարարական տրեստների, խոշոր ձեռնարկությունների ու գյուղական տնտեսությունների աշխատավորների ստանձնած սոցիալիստական պարտավորությունները: Դրանց կատարման հրապարակային վերահսկողությունը և մրցության մեջ ձեռք բերված արդյունքների համակողմանի հաշվառումը մեր մամուլի և ինֆորմացիայի ու պրոպագանդայի մյուս միջոցների առաջնահերթ անելիքներից մեկն է: Անհրաժեշտ է հաճախակի անդրադառնալ սոցիալիստական մրցության կազմակերպման ու ղեկավարման մարզում կուսակցության քաղկոմ-շրջկոմների գործունեության վերլուծմանը, այդ բնագավառում սովետական, արհմիութենական օրգանների աշխատանքը լուսաբանելիս վեր բարձրանալ ստորին օղակներից, չսահմանափակվել պլենումների, ակտիվների, խորհրդակցությունների, փոխանցիկ դրոշների հանձնման արարողությունների մասին երկարաշունչ հաշվետվություններով. մեր մամուլին բնորոշ մի թերություն, որը «Հաշվետվությունների շռնդալից հնչյունների ներքո» հոդվածում իրավամբ քննադատվեց ՍՄԿԿ Կենտկոմի օրգան «Պրավդա» թերթում:

Սոցիալիստական մրցությունն առավել ներգործուն դարձնելու, կատարման ստուգումը բարելավելու, լավագույն փորձը ցուցադրելու, ետ մնացողներին առաջավորների մակարդակին հասցնելու նպատակով անհրաժեշտ է անշեղորեն կիրառել համեմատելիության սկզբունքը, միակողմանի չարտացոլել սոցիալիստական մրցությունը, բնավ չմոռանալով, որ կատարման ստուգումը սոցիալիստական մրցության զարգացման կարևորագույն նախադրյալն է: Մրցակից կոլեկտիվների աշխատանքի արդյունքները գնահատելիս անհրաժեշտ է ինչպես հարկն է հաշվի առնել ընդունված ու կատարված պլանների լարվածությունը, արտադրական ծախսումների մակարդակը, ռեալ ռեզերվներն ու հնարավորությունները: Մամուլը պետք է անհանդուրժողականության մթնոլորտ ստեղծի որոշ տեղերում դեռևս գոյություն ունեցող այնպիսի երևույթների նկատմամբ, ինչպիսիք են՝ բյուրոկրատիզմը, անձեռներեցությունը, աչքակապությունը, անտարբերությունը: Անհրաժեշտ քննադատություն պետք է ծավալել պետական պլաններն ու սոցիալիստական պարտավորությունները սիստեմատիկաբար ձախողողների, մրցության դեմոկրատական հիմունքների խախտման բոլոր դրսևորումների դեմ:



Հարկավոր է պատշաճ ուշադրություն նվիրել աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի, որպես սոցիալիստական մրցության բարձրագույն ձևի, դաստիարակության հարցերին, դրանց նվիրված նյութերում ու հաղորդումներում հաղթահարել դեռևս նկատելի շաբլոնն ու վերացականությունը:

Վերը նշված խնդիրները հանգամանորեն արծարծվեցին ՀԿԿ Կենտկոմի օրերս տեղի ունեցած պլենումում, որը լսեց և քննարկեց ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Ա. Ե. Քոչինյանի զեկուցումը «1973 թվականի պետական պլանի և սոցիալիստական պարտավորությունների կատարման համար աշխատավորներին մոբիլիզացնելու ուղղությամբ հանրապետության կուսակցական կազմակերպությունների քաղաքական ու կազմակերպչական աշխատանքի մասին՝ ՍՄԿԿ Կենտկոմի 1972 թվականի դեկտեմբերյան պլենումի որոշումների լույսի տակ» հարցը: Պլենումի որոշումների լայն պրոպագանդան, դրանց կենսագործման համար ակտիվորեն պայքարելը հանրապետության կուսակցական կազմակերպությունների, մամուլի, ռադիոյի և հեռուստատեսության առաջնահերթ գործն է:

Տակավին սովետական իշխանության արշալույսին Վլադիմիր Իլյիչ Լենինն ընդգծել է, որ *պետությունն ուժեղ է մասսաների գիտակցականությամբ, նա ուժեղ է այն ժամանակ, երբ մասսաներն ամեն բան գիտեն, ամեն ինչի մասին կարող են դատել, ամեն ինչի մոտենում են գիտակցաբար:* Մեծ առաջնորդի այս խոսքերն այսօր իրականություն են դարձել:

Գիտակցականության նման մակարդակը սոցիալիստական սիստեմի կենսունակության, կապիտալիստական աշխարհի նկատմամբ նրա վճռական առավելությունների բացահայտ ապացույցն է, մասսաների մարքս-լենինյան դաստիարակության մեծագույն ցուցանիշը, ուր իրենց անառարկելի ներդրումն ունեն մամուլը, ռադիոն և հեռուստատեսությունը, որոնք, արտոնված լինելով մեծ լիազորություններով, հավատարմությամբ ու մարտականորեն են ծառայում կոմունիզմի, մեծ Լենինի գործին:

ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած խնդիրներն ու նպատակները վեհ են և հումանիստական: Ռեալ ու գիտականորեն հիմնավորված են դրանց իրականացման ուղիներն ու միջոցները: Սովետական ողջ ժողովուրդը ներգրավված է բարդ, դժվարին ու ոգեշունչ աշխատանքի մեջ: Այդ ստեղծարար վերափոխումների ակտիվ մասնակիցներն են նաև մեր հանրապետության ժուռնալիստները, բանգյուղթղթակիցները, որոնք միշտ էլ գտնվել են կուսակցության առաջադրած խնդիրների բարձրության վրա: Եվ իններորդ հնգամյակի երրորդ՝ վճռական տարում նրանք, անտարակույս, ամեն ինչ կանեն հանրապետության ժողովրդական տնտեսության վիթխարի խնդիրների լուծման համար, վերստին կցուցադրեն իրենց հավատարմությունն ու նվիրվածությունը կոմունիստական կուսակցության գործին, խորապես ըմբռնելով ՍՄԿԿ XXIV համագումարի հաշվետու զեկուցման մեջ ընդգծված հետևյալ միտքը. կուսակցության գաղափարադաստիարակչական ողջ աշխատանքի միջուկը *աշխատավորության հոծ զանգվածների կոմունիստական աշխարհայացքի ձևավորումն է, նրանց դաստիարակումը մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով:*

# ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԿԱՌԱՎԱՐՈՒՄԸ

Մ. Խ. ԻԳԻԹԽԱՆՅԱՆ
Փիլիսոփայական գիտությունների
թեկնածու

*Ժամանակակից աշխարհում սոցիալական վիթխարի ջանքեր են գործադրվում կառավարման ոլորտում։ Այդ բանը բացատրվում է բարդացած հասարակական կյանքի պահանջներով, սոցիալական, տնտեսական, կուլտուրական, կոմունիկացիոն և այլ պրոցեսների տարածական-ժամանակային կապերի շրջանակների ընդլայնմամբ, պրոցեսներ, որոնց դինամիզմին ու ունիվերսալացմանը մեծ զարկ տվեց գիտատեխնիկական հեղափոխությունը։ Վերջինս մարդկային գործունեության մասնագիտացող բնագավառների միջև հարուցեց նախկինում անհայտ բազմաթիվ փոխադարձ կապեր, որոնք նոր պահանջներ են ներկայացնում պրոցեսների կոորդինացմանը, կարգավորմանը, վերահսկմանը, կանոնավորմանը, նպատակ ունենալով մշակել և իրականացնել կառավարման այս կամ այն սիստեմի գործելու ընդհանուր կամ հավասարակշռված ռեժիմներ։*

*Սակայն, գիտության ու տեխնիկայի զարգացման արդի տենդենցներն ու դրանց ստեղծած սպեցիֆիկ ձևերը, միջոցներն ու եղանակները համահարթո՞ւմ են, արդյոք, սոցիալական կարգի բնույթով պայմանավորված սկզբունքները, կառավարման նպատակները, մարդը, «անհատական» գործոնը դո՞ւրս են մղվում այդ պրոցեսից։ Այլ կերպ ասած, տեղի՞ է ունենում, արդյոք, կառավարման ինչ-որ «ազատագրում» դասակարգային գաղափարախոսությունների, նրա սուբյեկտ հանդիսացող աշխարհայացքային, բարոյական և այլ կարգի արժեքային սիստեմների ու կողմնորոշումների ազդեցությունից։*

*Այս հարցերի պատասխանները երևան են բերում փիլիսոփայական և սոցիոլոգիական դիրքերի հակադրություն, որը կախված է կառավարման էության վերլուծության մեթոդոլոգիական ելակետային սկզբունքներից, հասարակական հարաբերությունների բնույթից։ Այսպես, տեխնոկրատական կոնցեպցիաների (և մեթոդոլոգիական տեսակետից դրանց հետ կապված «ինդուստրիալ» ու «պոստինդուստրիալ» հասարակության, «կառավարողների», «տեխնոտրոն դարի» հասարակության և այլ տեսությունների) կողմնակիցները դրական պատասխան են տալիս վերոհիշյալ հարցերին։ Ելակետային այլ դիրքերից նույն հետևություններին են հանգում նաև, այսպես կոչված՝ «իմացության սոցիոլոգիայի», սայենտիզմի և այլ ուղղությունների բազում ներկայացուցիչներ։ Բայց այս հարցերը սոսկ առաջին հայացքից են թվում մասնակի բնույթի։ Ըստ էության դրանք կապված են փիլիսոփայական արմատական պրոբլեմների հետ՝ աշխարհում մարդու տեղի ու դերի, նրա կյանքի իմաստի, պատմության սուբյեկտի և դրա առաջընթացի կրողի դերը կատարելու՝ մարդու ունակության ու հնարավորությունների և փիլիսոփայական արմատական այլ պրոբլեմների հետ։ Ուստի, պատահական չէ այն փաստը, որ անկախ սուբյեկտիվ դրդապատճառներից, հիշյալ հայացքների կրողները հասարակական կյանքի (սոցիալական գիտության, կուլտուրայի, քաղաքականության, կառավարման) «դեիդեոլոգիզացիայի» իրենց տեսությունները միանգամայն կոնցեպտուալ կերպով կապում են առաջընթացի դեհումանիզացիայի վերաբերյալ հետևություններին։*

*XX դարի հետադեմ սոցիալական ուտոպիաների կողմնակիցները, տեխնիկային, կիբեռնետիկական սիստեմներին վերագրելով ապագա հասարակության կառավարման բոլոր ֆունկցիաների սուվերեն կրողի դեր, արդեն այսօր հոգեհանգիստ են երգում մարդու բանականությանն ու կամքին, նրան սոսկ համարելով նախապես ընդունված որոշումները կուրորեն կատարող մի գործիք։ Դրանով իսկ բուրժուական փիլիսոփայության և սոցիոլոգիայի դեհումանիստական դարավոր տենդենցը նշված կոնցեպցիաներում կարծես հանգում է իր տրամաբանական վախճանին, առանձին ակներևությամբ դրսևորելով իր սոցիալական ու գաղափարական «կանխորոշվածությունը», այսինքն՝ կախումը խոշոր մոնոպոլիստական կապիտալի շահատենչական ձգտումներից։*

*Հետևողականորեն մերկացնելով տեխնիկայի դերի և կառավարման զուտ տեխնիկական ասպեկտների գերաճման հետ կապված ուտոպիաները, մարքսլենինյան տեսությունն այդ պրոբլեմները դիտում է պատմականորեն՝ տնտեսական հարաբերությունների, սեփականության ձևերի և դրանցով որոշվող կառավարման բնույթի ու արգասիքների հետ ունեցած իմմանենտ կապի մեջ, կառավարում, որը հասարակական տարբեր սիստեմներում տարբեր ազդեցություն է ունենում հասարակության կյանքի, անհատի և մասսայի ճակատագրի վրա։ Դա հնարավորություն է ընձեռում նաև, մի կողմից՝ ռացիոնալ կերպով բացատրելու կառավարման «դեիդեոլոգացված» կոնցեպցիաների ծագման պատճառները, ինչպես և դրանց կապը ժամանակակից արևմտյան փիլիսոփայության ու սոցիոլոգիայի դեհումանիստական գծի հետ և, միաժամանակ, խիստ գիտականորեն հիմնավորելու սոցիալիզմի պայմաններում անհատի ու մասսայի ազատության և ակտիվության աճման օրինաչափ կապը նրանց նոր կենսապայմանների ու ֆունկցիաների հետ՝ կառավարման սիստեմում։*

## 1

*Սոցիալական պրոցեսների կառավարումը միշտ նպատակային բնույթ ունի։ Ֆունկցիոնալ առումով այն կոչված է լուծելու քաղաքական, տնտեսական, գիտատեխնիկական, կուլտուրական, գաղափարախոսական, դաստիարակչական և այլ խնդիրներ։ Դրանց լուծման միջոցների ու մեթոդների ընտրությունը ամենայն ակներևությամբ ցույց է տալիս կառավարման՝ սոցիալական գործունեության այդ կարևոր ոլորտի, ներքին կապը որոշակի շահերի, ձգտումների ու իդեալների հետ, որոնք դրսևորվում են կառավարման սուբյեկտի (կուսակցության, պետության, հասարակական կազմակերպության և այլն) աշ-*









խարհայացքում, քաղաքական, իրավական, բարոյական, այլ խոսքով՝ գաղափարախոսական հայեցակետում։ Ընդսմին, դրությունը սկզբունքորեն չի փոխվում այն բանից, թե կառավարման տվյալ կոնկրետ պրոցեսում կամ ակտում իբրև սուբյեկտ հանդես է գալիս առանձին ա՞նձ, թե՞ մի ամբողջ կազմակերպություն, սոցիալական ինստիտո՞ւտ, թե՞ անմիջականորեն սոցիալական խումբ և այլն։ Բայց, քանի որ կառավարումը իրականացվում է պետականորեն կազմակերպված ձևերով, դասակարգային հարաբերությունների սիստեմում, ապա այդ գործունեության ոլորտում նույնպես գլխավոր դիրքերը տնտեսապես իշխող դասակարգինն են։

Յուրաքանչյուր տվյալ հասարակական-տնտեսական ֆորմացիայի շրջանակներում՝ տարբեր երկրներում բազմազան են կառավարման կառուցվածքը, ձևերն ու մեխանիզմները, նրա տարրերի ենթակարգումը և այլն՝ հատկապես պետական ղեկավարման ոլորտում։

Սակայն, երբ մենք քննության ենք առնում դասակարգային տիրապետության ողջ էությունը, նրա խնդիրները և հիմնական եղանակներն ու միջոցները՝ դրանց առավել ընդհանուր սոցիալական բնութագրերով ու տենդենցներով, երևան են գալիս դասակարգային կառավարման յուրաքանչյուր պատմականորեն կոնկրետ տիպի բոլոր ձևերի ու նպատակասլացության մեջ մարմնավորված գաղափարախոսական սկզբունքների ներքին միասնությունն ու հարաբերական կայունությունը։ Եվ դա խորապես օրինաչափ է, քանի որ դասակարգը՝ արտադրության տվյալ եղանակի կրողը, գիտակցորեն ստեղծում է պետական, տնտեսական և այլ կարգավորման այնպիսի սիստեմ, որը լավագույն ձևով ծառայեր սեփական շահի վերաբերյալ իր ունեցած պատկերացումներին, որոնք տեսական արտահայտություն և հիմնավորում են գտնում գաղափարախոսական որոշակի կոնցեպցիայի մեջ։

Հետևաբար, կառավարման սիստեմը ոչ թե պասսիվ է արտացոլում աշխարհայացքային, քաղաքական-իրավական, բարոյական և այլ սկզբունքներ, կարծես կողքից, դրսից իր վրա է կրում դրանց ազդեցությունը, այլ տիրապետող հասարակական, ինչպես և գաղափարախոսական հարաբերությունների պրակտիկայում, սոցիալ-քաղաքական, տնտեսական, կուլտուրական և այլ ինստիտուտներում նրանց ամրապնդման, արմատավորման, օբյեկտիվացման գործուն միջոց է։

Սոցիալիստական հասարակարգում, որի առաջընթացը հիմնվում է հասարակական զարգացման օրենքների գիտական իմացության վրա, զգալի չափով մեծանում է կառավարման վրա սուբյեկտիվ գործոնի ազդեցությունը՝ ընդհանրապես և գիտա-տեսական գիտակցությանը՝ առանձնապես։ Մարքս-լենինյան գաղափարախոսությունը՝ որպես կոմունիստական կուսակցության քաղաքականության տեսական հիմք, որոշում է կառավարման հիմնական տենդենցներն ու նպատակները, միջոցներն ու մեթոդները, նրա ոլորտների ու մակարդակների փոխգործողության սկզբունքները։ Զարգացած սոցիալիզմի պայմաններում ավելի են ընդլայնվում կառավարման սուբյեկտի «ծավալն» ու սահմանները. կառավարումը դառնում է ավելի ու ավելի մասսայական, ընդգրկում աշխատավորների նորանոր խավեր, որոնք ակտիվորեն ու անմիջականորեն մասնակցում են հասարակական և պետական գործերին։

Խոսելով պետության կառավարմանը մասսաների մասնակցության սոցիալիզմի ընձեռած վիթխարի հնարավորությունների մասին, Վ. Ի. Լենինը, միաժամանակ, ընդգծում էր, որ դրանց իրականացումը մեծապես կախված է



աշխատավորների կուլտուրական մակարդակի բարձրացումից, նրանց կոմունիստական դաստիարակությունից և վստահություն էր հայտնում, որ «մոտ ապագայում մենք կտեսնենք մի հսկայական ռեզերվ» (Երկեր, հ. 29, էջ 215)։ 1919 թվականին նա գրել է. «...մինչև այժմ չենք հասել այն բանին, որ աշխատավոր մասսաները կարողանան մասնակցել կառավարմանը,— բացի օրենքից, կա նաև կուլտուրական մակարդակ, որը ոչ մի օրենքի չես ենթարկի։ Կուլտուրական այդ ցածր մակարդակն այն է անում, որ սովետները, իրենց ծրագրով լինելով աշխատավորության միջոցով կառավարելու օրգաններ, իրականում հանդիսանում են կառավարման օրգաններ աշխատավորության համար՝ պրոլետարիատի առաջավոր խավի միջոցով, բայց ոչ աշխատավորական մասսաների միջոցով» (Նույն տեղը, էջ 214)։

Մեր ժամանակում դրությունը արմատապես փոխվել է։ ՍՍՀՄ-ում պետության կառավարման գործին մասնակից են դարձել աշխատավորների ամենալայն խավերը։ Լենինի վերոհիշյալ ասույթն իր հրատապությունը պահպանում է նաև այսօր, ակնհայտ է դառնում այն օրինաչափ կապը, որ գոյություն ունի գաղափարական ու դաստիարակչական աշխատանքի և կառավարմանը մասսաների գնալով ավելի լայն ու գործուն մասնակցության միջև։

Եվ, եթե այս տեսանկյունից դիտենք ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները, կտեսնենք, թե կուսակցությունն ինչպես է ժողովրդական կրթության, աշխատավորների գաղափարական դաստիարակության աճի, նրանց ընդհանուր կուլտուրայի և պրոֆեսիոնալ գիտելիքների բարձրացման խնդիրների հետ սերտ կապակցված, կոմպլեքսային ձևով առաջադրում սոցիալիստական դեմոկրատիան, պլանավորումն ու կառավարումը է՛լ ավելի կատարելագործելու, դրա գիտական հիմունքները խորացնելու հարցերը։

Սոցիալական կառավարման հիմնական պրոբլեմները, որոնք արտացոլում են կոմունիստական ֆորմացիայի ձևավորման օրինաչափությունները, առանձնահատուկ նշանակություն են ստանում սոցիալիստական ողջ սիստեմի զարգացման արդի փուլում, երբ ծավալվող գիտատեխնիկական հեղափոխության և համաշխարհային ասպարեզում գաղափարական պայքարի սրման պայմաններում անչափ ուժեղանում է կառավարման ազդեցությունը երկու սիստեմների մրցության ընթացքի և հետևանքների վրա։ Կառավարման սոցիալիստական սիստեմի կատարելագործումը, նրա գիտական հիմքերի խորացումը, ինչեց ՍՄԿԿ XXIV համագումարը, ենթադրում են նաև հասարակական գիտությունների, սոցիալ-քաղաքական, տնտեսական և այլ հետազոտությունների ու դրանց հիմնավորված հանձնարարականների ավելի սերտ կապ կոմունիստական շինարարության պրակտիկայի, մասնավորապես՝ պետական, տնտեսական ու սոցիալական կառավարման խնդիրների հետ։

Գաղափարախոսական գործոնը կառավարման պրոցեսների վրա ներազդում է ամենատարբեր մակարդակներում և տարբեր ձևերով ու ուղղություններով։ Այն ներգործում է կուսակցական ու պետական ղեկավարման, հասարակական կազմակերպությունների, պլանավորող, վարչական և տնտեսական օրգանների գործունեության ոճի ու մեթոդների կատարելագործման պրոցեսի, կոմունիստական սկզբունքների ու նորմերի ձևավորման վրա։ Գաղափարական-դաստիարակչական գործոնի դերը առանձնապես մեծանում է սովետական հասարակարգի զարգացման արդի փուլում, երբ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ մեր երկրի աշխատավորները պայքարում են հնգամյակի երրորդ, վճռական տարվա պլանների հաջող կատարման համար,

ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության նվաճումներն ավելի սերտորեն կապելով պլանաչափ ու համամասնորեն զարգացող, աշխատավորների շահերին ծառայող սոցիալիստական էկոնոմիկայի առավելությունների հետ։ Այս պայմաններում բացառիկ կարևոր է ընթացիկ և հեռանկարային պլանավորման որակի, բոլոր օղակներում կառավարման և վերահսկողության սիստեմի հստակության ու կարգավորվածության, պետական և արտադրական կարգապահության պահպանման խնդիրների հաջող լուծումը։

Այժմ գլխավոր խնդիրն է շեշտակիորեն փոխել կողմնորոշումը, շեշտը դնել տնտեսության վարման ինտենսիվ մեթոդների վրա, դրանով իսկ ապահովել էկոնոմիկայի արդյունավետության լուրջ բարձրացումը։ «Խոսքն այն մասին է, որ տնտեսական աճն ավելի ու ավելի մեծ չափով տեղի ունենա աշխատանքի արտադրողականության բարձրացման և գիտատեխնիկական առաջընթացի արագացման միջոցով, գործող արտադրական կարողությունների առավել լրիվ օգտագործման միջոցով, տնտեսության մեջ ներդրված յուրաքանչյուր ռուբլու, օգտագործվող մետաղի, վառելիքի, ցեմենտի, պարարտանյութերի յուրաքանչյուր տոննայի փոխհատուցումը բարձրացնելու միջոցով» (Լ. Ի. Բրեժնև, Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության հիսնամյակի մասին», «Լենինյան ուղիով», 1973, № 1, էջ 44)։

Սրանով էլ որոշվում է պահանջների այն բարձր մակարդակը, որ կուսակցությունն այսօր ներկայացնում է սովետական մարդկանց գաղափարական-քաղաքական դաստիարակությանը, նրանց կոմունիստական խոր համոզմունքների ձևավորմանը։ Եվ դա հասկանալի է, կառավարման սոցիալիստական տիպը, հենվելով մարքս-լենինյան տեսության վրա, միաժամանակ կատարելագործվում է աշխատավորների ամենալայն զանգվածների բարձր գիտակցականությամբ և կազմակերպվածությամբ։ «...Բոլոր քաղաքացիների հասարակական գիտակցության դաստիարակումը կոմունիստական շինարարության պրոցեսի կարևորագույն բաղկացուցիչ մասերից մեկն է»,— ասաց Լ. Ի. Բրեժնևն իր զեկուցման մեջ։

Կառավարման արդյունավետության գաղափարախոսական չափանիշները սոցիալիստական հասարակարգում մարդասիրական բնույթ ունեն, քանի որ կապված են կառավարման պրոցեսների և արգասիքների պրոգրեսիվության աստիճանի գնահատման հետ։ Կառավարման արդյունավետության գնահատման գաղափարախոսական չափանիշները, որոնք որոշում են նաև նրա կատարելագործման բնույթը, մասնավորապես հետևյալներն են. քաղաքում և գյուղում ապրող մարդկանց աշխատանքի, կենցաղի, ժամանցի պայմանների մեջ եղած էական տարբերությունների հաղթահարման պրոցեսի ինտենսիվության, ողջ հասարակական աշխատանքի ու նրա բովանդակության ինտելեկտուալիզացման աստիճանը, հասարակության և պետության կառավարմանը ինքնագործ բնակչության ավելի ու ավելի լայն զանգվածների մասնակցության աճը, յուրաքանչյուր առանձին անհատի ունակությունների ու ստեղծագործական ուժերի զարգացմանը նպաստող սոցիալական պայմանների կատարելագործման վրա կառավարման պրոցեսի ազդեցության աստիճանը և այլն։ Սոցիալիստական հասարակարգում գաղափարախոսությունը, քաղաքականությունը և կառավարումը ըստ էության լուծում են մի ընդհանուր խնդիր, որը կապված է հումանիզմի բարձրագույն արժեքների՝ ազատության, սոցիալական հավասարության և արդարության խորացման ոլորտում հասարակության առաջընթացի հետ։



Կառավարման սոցիալիստական տիպը, որը հիմնված է գիտական քաղաքականության և գիտակցված կոմունիստական իդեալի վրա, պարունակում է գաղափարախոսական այն բարձրագույն սկզբունքը, որի իրականացումը աստիճանաբար կհանգեցնի սոցիալական կառավարման դասակարգային, քաղաքական բնույթի հաղթահարմանը ապագա կոմունիստական հասարակարգում և կառավարման պետական ձևերը կվերածի հասարակական ինքնավարության ոլորտի։

Այսպիսով, մենք շոշափեցինք մի շատ կարևոր առանձնահատկություն ևս, որը սոցիալիզմի ժամանակաշրջանի կառավարումը տարբերում է դասակարգային կառավարման բոլոր հայտնի տիպերից։ Ինչպես գիտենք, ամեն մի հասարակության մեջ կառավարման պարտադիր հատկանիշն ու նրա առանձնահատկությունը գործունեության որոշ ռեժիմի, կառուցվածքի տարրերի ֆունկցիոնալ կապերի ապահովումն է՝ նրանց կայուն վերարտադրության նպատակով։ Բայց անտագոնիստական հասարակարգերում այդ սկզբունքը տարածվում է նաև դասակարգային հարաբերությունների բնույթի ու հեռանկարների վրա՝ տիրող դասակարգի տիրապետության պայմաններն ու ձևերը հավերժացնելու համար։ Կառավարման սոցիալիստական տիպը մարմնավորում է պրոցեսի սկզբունքորեն տարբեր դիալեկտիկան, որի գաղափարախոսական հիմնավորումը համընկնում է հասարակական զարգացման օբյեկտիվ օրինաչափությունների գործողության հետ։ Սոցիալական հարաբերությունների կառավարման պրոցեսում օրգանապես և գիտակցված զուգորդվում են տիրապետող հասարակական կապերի ու հարաբերությունների վերարտադրման և անդասակարգ հասարակության ձևավորման նպատակով դրանց փոփոխման ու զարգացման խնդիրները։ Սա բարդ պրոցես է, որը ենթադրում է ո՛չ միայն իր համապատասխան վերարտադրումը ընդհանուր քաղաքականության մակարդակով, այլև կադրերի գաղափարախոսական հասունությունը կառավարման բոլոր մակարդակներում, նշված սկզբունքների իրականացման կարողությունը։

Ահա թե ինչու գիտական կառավարման սկզբունքներին տիրապետելն օգնում է, որ նրանք տիրապետեն կազմակերպական-տեխնիկական, վարչական, սոցիալ-քաղաքական և գաղափարախոսական ասպեկտներին, որոնց կապը զարգացած սոցիալիզմի պայմաններում օբյեկտիվ և օրինաչափ բնույթ ունի։ Այս խնդրի հրատապ ու պատշաճ լուծումը նոր թափ ստացավ կուսակցության XXIV համագումարից հետո։

Այսպիսով, մարքս-լենինյան գաղափարախոսությունը կառավարման ասպարեզում կատարում է բացառիկ կարևոր ֆունկցիաներ՝ կոմունիստական կուսակցության քաղաքականության գաղափարա-տեսական հիմնավորման, կառավարման ընդհանուր խնդիրների, դրա ոլորտների, մակարդակների ու ձևերի կապի և փոխգործողության արմատական սկզբունքների որոշման, կառավարման ողջ սիստեմի արդյունավետության ու նրա զարգացման տենդենցների գնահատման հիմնական չափանիշների մշակման, կառավարման մասսայական սուբյեկտի պրակտիկ գործունեության աշխարհայացքային, քաղաքական, բարոյական կողմնորոշման ասպարեզում։

Մենք տեսանք, որ գաղափարախոսության ներգործությունը կառավարման վրա սոցիալիզմի և կապիտալիզմի ժամանակաշրջաններում սկզբունքորեն տարբեր են ոչ միայն բովանդակությամբ (կառավարման սուբյեկտի բնույթով,

դասակարգային նպատակներով), այլև ձևերով, ինտենսիվությամբ ու գործունեությամբ։ Այնուհանդերձ, ուշադրության առնենք պրոբլեմի մի այլ ասպեկտ։

Շահագործողական հասարակարգերում միասնական հասարակական հետաքրքրության բացակայությունը, ինչպես նաև կառավարման պետական, տնտեսական և այլ բնագավառների սիստեմների կապը շահամոլական դասակարգային նպատակների հետ, բացառում են կառավարման բոլոր ոլորտների, պայմանների ու ձևերի միասնության հնարավորությունը։ Կառավարման սկզբունքները և կառուցվածքը սահմանելիս մասնավոր սեփականատիրական հարաբերությունների վրա հիմնված հասարակարգերում գաղափարախոսության ֆունկցիաները անհամեմատ սահմանափակ են, քան սոցիալիզմի պայմաններում։ Ավելին, կառավարման մի շարք ոլորտներ, հակառակ տիրապետող դասակարգի ձգտումների, դառնում են հակադիր դասակարգային գաղափարախոսությունների բախման ասպարեզ։ Այսպես, եթե կապիտալիզմի օրոք պետական-իրավական և տնտեսական կարգավորման ու վերահսկողության ոլորտներում իրականացվում են տիրապետող գաղափարախոսության սկզբունքները, ապա չի կարելի այդ բանը անվերապահորեն ասել ոչ-ձևական խմբերում իրականացվող բարոյական հարաբերությունների, արժեքային սիստեմների կանոնավորման, դասակարգային-օպոզիցիոն քաղաքական միավորումների հարաբերությունների ու գործունեության կազմակերպման սկզբունքների և կարգավորման նորմերի նկատմամբ և այլն։

Կառավարման սիստեմը անտագոնիստական հասարակություններում և, հատկապես, նրանց վերջին ստադիայում, ինչպես այդ մասին համոզիչ կերպով վկայում է ժամանակակից իմպերիալիզմի օրինակը, ունի աղաղակող հակասություն։ Այն արտահայտվում է տիրապետող դասակարգի նպատակների և ընդհանուր արդյունքների անհամատեղելիության մեջ։ Այդ արդյունքները հակասության մեջ են մտնում նախապես դրված նպատակի հետ, ավելին, խարխլում են կառավարման սիստեմի բուն հիմքերը։ Այդ պրոցեսն ուղեկցվում է կառավարման սուբյեկտի էլիտար բնույթի ուժեղացմամբ, որը դրսևորվում է կապիտալիստական երկրների հասարակական կյանքի հետագա բյուրոկրատացման մեջ։

## 2

Ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում զգալիորեն բարդանում են կառավարման գաղափարախոսական ասպեկտները, ծագում են մեթոդոլոգիական նոր պրոբլեմներ։ Այդ բանը որոշակիորեն երևան է գալիս, երբ մենք քննության ենք առնում կառավարումը՝ որպես մի բարդ դինամիկ սիստեմ, վերլուծում դրա կառուցվածքային տարրերը, կառավարման սոցիալական և կազմակերպական-տեխնիկական ասպեկտների փոխգործողությունը և այլն։

Անկասկած, ընդլայնվում է անմիջական անհատական գործունեության մի շարք հին ձևերին փոխարինող կառավարման որոշակի ենթասիստեմների ինքնավարության ոլորտը, արմատական փոփոխություններ են տեղի ունենում կառավարման աշխատանքի պրոֆեսիոնալ կառուցվածքում և այլն։ Մեծանում է կառավարման «արտագաղափարային» տարրերի տեսակարար կշիռը, որոնք ունակ են լուծելու սոցիալական պլանավորման և կարգավորման մի շարք խնդիրներ։

Այդ իսկ պատճառով առանձին ուսումնասիրողներ, ուշադրությունը սևեռելով կառավարման հատուկ, տեխնիկա-կազմակերպական և բուն տեխնոլոգիական ասպեկտների վրա, կամա թե ակամա, տուրք են տալիս այն տեսակետին, ըստ որի, իբր, ստեղծվում է «ընդհանրապես հասարակության» համար համընդհանուր կառավարման ինչ-որ մի գիտություն՝ միասնական սկզբունքներով, ընդհանուր առարկայով և այլն։ Դրանով կառավարման սուբյեկտի, հետևաբար և գաղափարախոսական գործոնի սոցիալ-դասակարգային շահերի դերը, ասես, դուրս է բերվում կառավարման գիտության շրջանակներից։ Իսկ եթե նույնիսկ հաշվի է առնվում գաղափարախոսության ազդեցությունը, ապա առավելապես վերլուծության այն աստիճանում, երբ կառավարումը հանդես է գալիս որպես արդեն գործող իրողություն, և նրա արդյունավետության վրա ազդող բազում գործոնների թվում դրսևորվում են նաև պրոցեսի մասնակիցների գաղափարախոսական հայացքները։ Հարկ կա՞ արդյոք ասելու, որ նման մոտեցումը տառապում է նեղմտությամբ և միակողմանիությամբ, ուստի և խեղաթյուրում է կառավարման հետ գաղափարախոսության բարդ և «բազմականալ» կապը։ Այդ կապն ու փոխգործողությունը, ինչպես տեսանք, ընդգրկում է նրա դինամիկայի և վերարտադրության ողջ ցիկլը՝ կառավարման խնդիրների և դրա կազմակերպման ձևերի բնորոշումից մինչև դրա գործունեության պրոցեսի կարգավորումն ու վերջինիս արդյունքների օգտագործումը։ Ընդսմին, ցիկլի բոլոր տարրերի և աստիճանների, նրանց փոխգործողության արդյունավետության գնահատումը կատարվում է, վերջին հաշվով, գաղափարախոսական այնպիսի չափանիշների կիրառման միջոցով, որոնք կոնկրետ պատմական, դասակարգային բնույթ ունեն։

Կառավարման վրա գաղափարախոսության ներգործության միակողմանի մեկնաբանմանն է հանգեցնում նաև կառավարման առանձին ենթասիստեմների, ոլորտների, մակարդակների (հատկապես տեխնիկական, կիբեռնետիկական սկզբունքների հետ կապված ինֆորմացիոն կապի և կարգավորման) դերի բացարձակացումը, դրանք սոցիալական ամբողջի նկատմամբ միանգամայն ինքնակա սիստեմների կարգը դասելը։ Բայց, նման մոտեցումը խեղաթյուրում է ընդհանուրի և առանձնահատուկի, ամբողջի ու մասի օբյեկտիվ դիալեկտիկան հասարակության կառավարման կառուցվածքում։

Մինչդեռ, արտադրության կառավարման, ասենք, ավտոմատացված սիստեմների տեղն ու դերը քննության առնելիս և դրանց հեռանկարները գնահատելիս չի կարելի հաշվի չառնել, որ դրանք, ամբողջությամբ վերցրած, սոցիալական կառավարման միջնորդավորող օղակներ, ենթասիստեմներ են, որոնք դուրս են գալիս զուտ տեխնիկական լուծումների շրջանակներից և ունեն գաղափարախոսական բնութագրեր։ Բայց այստեղ անհանդուրժելի է նաև պրոբլեմի պարզեցումը, որ կարող է հանգեցնել պրոբլեմի վուլգար սոցիոլոգիզացիայի (և իդեոլոգիզացիայի)։ Չի կարելի հաշվի չառնել կառավարման բարդացած կառուցվածքը և այն հանգամանքը, որ, ի տարբերություն անցյալի, երբ մարդը հանդես էր գալիս որպես կառավարման խնդիրների տեխնիկական իրականացման անմիջական մասնակից, իսկ մեքենական տեխնիկան չէր ստեղծում կառավարման ինքնուրույն կառուցվածքներ, մեր ժամանակում մարդը ո՛չ միայն կանգնում է տեխնիկայի «ղեկին», վերահսկելով ու կարգավորելով նրա գործողությունները, այլ հարաճուն չափով սկսում է այդ ֆունկցիաները հանձնել ժամանակակից ինքնակառավարվող սիստեմներին, իսկ նրա անձնական մասնակցությունը վերջիններիս կառավարմանը սկզբունքորեն փոխում է իր բնույթը և միջնորդավորվում բազմաթիվ այլ սիստեմնե-

րով։ Այս դեպքում կառավարման գաղափարախոսական ասպեկտները դրսևորվում են այլ ձևերով ու այլ մակարդակներով, մասնավորապես, հասարակության կողմից տվյալ ենթասիստեմի գործունեության օբյեկտիվացված արդյունքների օգտագործման բնույթի մեջ։ Եվ պատահական չէ, որ կապիտալիզմի ու սոցիալիզմի օրոք հակադիր են (և՛ օբյեկտիվորեն, և՛ պրակտիկ իրականացման գիտակցված ձևերով) գիտատեխնիկական հեղափոխության, մասնավորապես, ավտոմատացված կառավարման սիստեմների գործունեության սոցիալական արդյունքները։ Եվ թեպետ գաղափարախոսական գործոնը վերոհիշյալ սիստեմների գործունեության իմանենտ նախադրյալ չէ, դա բոլորովին չի նշանակում թե, իբր, այդ սիստեմներն իրենց կապերով ու միջնորդավորումներով, որոնք նրանց մտցնում են կառավարման սոցիալական լայն կառուցվածքի «կոնտեքստի» մեջ, կարող են դիտվել որպես կառավարման գիտության ինքնաբավ օբյեկտներ։

Ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխությունը, անկասկած, ուժեղացնում է այն տպավորությունը թե, իբր, կառավարումն ունի գաղափարախոսական գործոնի ներգործությունից «ազատագրվելու» տենդենց։ Բացի այն պատճառներից, որոնք կապված են նպատակադրված գործունեության հնացած ձևերն ու պրոցեսները սահմանափակելու և դուրս մղելու հետ, այդ տպավորությունը կապիտալիզմի պայմաններում հիմնավորվում է աշխատանքի ու նրա արդյունքների օտարման պրոցեսի ընդլայնմամբ։ Աշխատանքի առարկայի վրա սուբյեկտի ներգործության աստիճանը, որ մի ժամանակ ընկալվում էր «առողջ բանականությամբ», այսօր ավելի ու ավելի քիչ է ընկալվում գիտակցության կողմից, քանի որ հաշվիչ-լուծող սարքերը, ինչպես վերը նշվեց, իրենց վրա են վերցնում բազմաթիվ «ավանդական մարդկային» ֆունկցիաներ։ Իսկ դա նորից ցույց է տալիս, որ առանց հաշվի առնելու մարդկային գործունեության, հասարակության և բնության փոխգործողության, կառավարման հեղափոխականացման և դրա հնացած կառուցվածքների ու մեխանիզմների հեղաբեկման օրինաչափ տենդենցների և ստեղծագործական աշխատանքի էության ու ձևերի արմատական փոփոխությունների բուն դիալեկտիկան, անխուսափելիորեն «հայտնվում է» մետաֆիզիկական երկընտրանքը՝ «մարդը, թե՞ տեխնիկան»։ Դա էլ, իր հերթին, հանգեցնում է, այսպես կոչված՝ ռացիոնալ-տեխնիկական մտածողության (որը, իբր, ընդգրկում է մարդկային մտածողության ողջ ոլորտը և բացարձակապես դետերմինացված է արտասոցիալական գործոնով, տրամաբանությամբ և տեխնիկայի զարգացման ու դրա կառավարման իմանենտ պահանջներով) հակադրմանը «գաղափարախոսական դատողություններին», որոնք, որպես թե, խորթ են օբյեկտիվ գիտությանը։ Դժվար չէ նկատել, որ նման էլիտար տեսությունները սնող ժամանակակից սայենտիստական ու տեխնոկրատական հայացքները, ժխտում են սոցիալ-պատմական, դասակարգային-գաղափարախոսական գործոնների դերը։

Մեթոդոլոգիական այն հիմնական սխալներից մեկը, որոնք կառավարման առարկայացված և նյութականացված օբյեկտներն ու դրանց հետ կապված կառավարման ավտոնոմ սիստեմները հակադրում են մարդուն և նրա գործունեությանը, հետևանք է հասարակության կյանքի և նրա առաջընթացի համար համապիտանի առարկայական-զգայական, սուբյեկտ-օբյեկտների հարաբերությունների անտեսման, որոնք իրականացվում են մարդկանց, դասակարգերի նպատակադրված գործունեության պրոցեսում։



Գործունեության, ինչպես և կառավարման գործունեության ըմբռնման այս ծայրաստիճան լայն ասպեկտը միշտ ենթադրում է սուբյեկտ-օբյեկտի հարաբերություն, ուրեմն և, նպատակադրված, գիտակից, պատճառաբանված հարաբերություն։ Իսկ կառավարումը՝ որպես սոցիալական երևույթ, միշտ հանդիսանում է իբրև առարկայական-զգայական գործունեությամբ հանդես եկող սուբյեկտ-օբյեկտի հարաբերության ձև, կողմ։

Հարցն այն է, որ տեխնիկան, որքան էլ կատարյալ, որքան էլ մարդուց «անկախ» լինի, սեփական սիստեմի շրջանակներում չի կարող իրականացնել ծրագրավորման, վերահսկողության, կանոնավորման և այլ ֆունկցիաներ, ունակ չէ կապի մեջ «մտնելու» մարդկանց, հասարակության շահերի հետ այլ կերպ, քան սուբյեկտ-օբյեկտի հարաբերությունների կառուցվածքի շրջանակներում։

* * *

Զարգացած սոցիալիստական հասարակարգի հետագա առաջընթացի պահանջները սոցիալական պրոցեսների կառավարման պրոբլեմը անհրաժեշտաբար դարձնում են հասարակական գիտությունների գաղափարախոսական ողջ աշխատանքի կենտրոնական պրոբլեմներից մեկը։

Սոցիալիստական հասարակարգը խորապես շահագրգռված է կառավարման սիստեմի անընդմեջ կատարելագործմամբ, որպեսզի այն դառնա հասարակական կյանքի վրա գիտակցված և արդյունավետ ներգործման ազդեցիկ միջոց՝ հօգուտ կոմունիզմի հաղթանակի։ Ողջ ինքնագործ բնակչությանը նոր հասարակարգի գիտակից կառուցողներ դարձնելու այդ պրոցեսը խարսխվում է մարքսիզմ-լենինիզմի գիտական գաղափարախոսության վրա։

# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆԸ*

Ա. ԿՈՒՆԻՆԱ

Միջազգային հարաբերություններն իրենց բնույթով չափազանց բարդ երևույթ են։ Ընդունված բնորոշման համաձայն, դրանք ընդգրկում են «ժողովուրդների, պետությունների և պետությունների սիստեմների, համաշխարհային ասպարեզում գործող հիմնական սոցիալական, տնտեսական ու քաղաքական ուժերի և կազմակերպությունների միջև տնտեսական, քաղաքական, գաղափարախոսական, իրավական, դիվանագիտական, ռազմական բոլոր կապերն ու փոխհարաբերությունները»[1]։ Վերջիններիս հիմքում ընկած են ամենատարատեսակ, հաճախ ուղիղ հակադիր շահեր։ Այդ կապակցությամբ միջազգային հարաբերությունների ընդհանուր պատկերն այսօր ներկայանում է անչափ բազմակողմանի։

Միջազգային քաղաքականության կենտրոնում է երկու սիստեմների պայքարը։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի աճի ու ամրապնդման շնորհիվ արմատապես փոխվեց ուժերի հարաբերակցությունն աշխարհում։ Միջազգային հարաբերություններին ակտիվորեն մասնակցում են Ասիայի և Աֆրիկայի տասնյակ նոր պետություններ։ Անչափ աճել է լայն զանգվածների հետաքրքրությունը միջազգային-քաղաքական պրոբլեմների նկատմամբ, համապատասխանաբար ուժեղացել է նաև նրանց ազդեցությունը այդ պրոբլեմների լուծման վրա։ Գիտատեխնիկական հեղափոխությունը նպաստում է երկրների կապերի ինտենսիվացմանը։ Բարձրանում են միջազգային հարաբերությունների դերն ու նշանակությունը։

Համաշխարհային ասպարեզում կատարվող ամենախոր տեղաշարժերը չեն վրիպում բուրժուական տեսաբանների ուշադրությունից։ Այդ մասին են վկայում Արևմուտքում լույս տեսնող բազմաթիվ գրքերն ու հոդվածները, որոնց հեղինակները փորձում են պատասխանել միջազգային հարաբերությունների բնույթի ու բովանդակության, նրանց զարգացման հեռանկարների, ժամանակակից աշխարհի ուժերի հարաբերակցության վերաբերյալ հարցերին։

* Տպագրվում է որոշ համառոտումներով։— Խմբ.։

[1]. «Международные отношения после второй мировой войны», т. 1 (1945—1949 гг.), Госполитиздат, 1962, стр. 26.



Միջազգային հարաբերությունների զարգացման բուրժուական տեսությունները բավական բազմաթիվ են ու բազմազան։ Ուստի սույն հոդվածում առանձնացված են միայն այն տեսությունները, որոնք առավել որոշակիորեն արտացոլում են, մի կողմից, իմպերիալիզմի անփոփոխ ագրեսիվ էությունը, իսկ մյուս կողմից՝ իմպերիալիզմի՝ փոփոխված պայմաններին հարմարվելու՝ գնալով ավելի ակնհայտ դարձող պրոցեսը։

«Ուժի դիրքի» քաղաքականության հետպատերազմյան տեսաբանները, շարունակելով Մաքիավելլիից և մեր դարասկզբի գեոպոլիտիկներից սկիզբ առած ավանդույթները, ջանում էին հիմնավորել, թե ամբողջ միջազգային քաղաքականությունը անխուսափելիորեն վերածվում է «ուժի դիրքի» քաղաքականության։ Բուրժուական պրոպագանդան համառորեն ձգտում էր այն բանին, որ «արտաքին քաղաքականություն» և «ուժի դիրքի» քաղաքականություն հասկացությունները «փողոցի մարդու» գիտակցության մեջ դառնան իսկական հոմանիշներ։ Երկար ժամանակ նման գաղափարներն ընկած էին Արևմուտքում սանձազերծված «սառը պատերազմի» հիմքում։

Դեռ 40-ական թվականներին ԱՄՆ-ում ստեղծվեց մի դպրոց, որը գլխավորում է պրոֆեսոր Հանս Մորգենթաուն։ Այդ դպրոցի կողմնակիցների կենտրոնական կոնցեպցիան այն էր, որ անհրաժեշտ է բացահայտորեն ուժ գործադրել արտաքին քաղաքականության մեջ։ «Քաղաքականությունը, պնդում էր Հ. Մորգենթաուն, «շահերի բախում է, որը լուծվում է ուժի համար մղվող պայքարի միջոցով»։ Ըստ որում Հ. Մորգենթաուն և նրա հետևորդները (Ռ. Օսգուդը, Ս. Պոսսոնին, Ռ. Ստրաուս-Հյուպեն և ուրիշներ) ուժի հասկացության մեջ մտցնում էին ոչ միայն ռազմական հզորությունը, այլև աշխարհագրական ու ժողովրդագրական գործոնները, արդյունաբերական պոտենցիալը, բնական հարստությունները, ժողովրդի ազգային բնավորության առանձնահատկությունները և այլն։ Բայց պետության ուժի գլխավոր աղբյուրը, «ուժի տեսության» կողմնակիցների համոզմամբ, ռազմական պոտենցիալի մեջ է։ «Ռազմական հզորությունն այն հիմքն է, որի վրա խարսխվում է երկրի դիրքորոշումը մյուս պետությունների նկատմամբ։ Եթե այդ հիմքը թույլ է և դյուրաբեկ, ամբողջ մնացածը դատապարտված է լինելու նույնքան սակավազոր ու անկայուն»[1],— ընդգծում էր Մորգենթաուն, իսկ Ռ. Օսգուդը ռազմական ուժը ուղղակի բնորոշել է իբրև «միջազգային հարաբերությունների անհրաժեշտ տարր», ապացուցելով, որ «դիվանագիտությունը խարսխվում է ուժի քաղաքականության վրա»[2]։

Մարքսիստները երբեք չեն ժխտել այն ակնհայտ փաստը, որ ռազմական ուժը մեծ դեր է խաղում միջազգային հարաբերություններում։ Ռազմական պոտենցիալի կազմն ու չափերը, և մասնավորապես հրթիռա-միջուկային զենք ունենալը, անկասկած, էական գործոններ են, որոնք լրջորեն որոշում են պետության դիրքը միջազգային ասպարեզում։ Իսկ ինչ վերաբերում է սովետական պետության, սոցիալիստական բոլոր երկրների շարունակ ամրապնդվող ռազմական հզորությանը, ապա դա, բացի դրանից, կատարում է նաև իմպերիալիստական ագրեսիան սանձահարող միջոցի դեր։ Սակայն խորապես սխալ է միջազգային հարաբերությունների ամբողջ բովանդակությունը հանգեցնել միայն մեկ գործոնի՝ ռազմական ուժի։

[1] Ibid., vol. II, p. 151.

[2]. Р. Осгуд. Ограниченная война, М., 1960, стр. 71.

Մարքսիզմի հիմնադիրները միշտ ընդգծել են բռնության դասակարգային ֆունկցիան, որը հանդես է գալիս բացառապես իբրև շահագործող դասակարգերի շահերը պաշտպանելու միջոց: Ֆ. Էնգելսի բնորոշմամբ, «բռնությունը միայն պաշտպանում է շահագործումը»: Հենց այդ է ռազմական ուժի դերը դասակարգային-անտագոնիստական հասարակության ինչպես ներքին, այնպես էլ արտաքին քաղաքականության մեջ[1]:

Իսկ բուրժուական տեսաբանները, բացարձակ ինքնաբավ դարձնելով ռազմական ուժը, գիտակցաբար անտեսում են միջազգային հարաբերությունների դասակարգային բովանդակությունը, իսկ դրա հետ միասին՝ նաև սոցիալ-քաղաքական գործոնների որոշիչ դերը: Բնութագրելով բուրժուական քաղաքական մտքի այդ առանձնահատկությունը, Կ. Մարքսը գրել է. «...սկսած Մաքիավելլիից, Հոբսից, Սպինոզայից, Բոդենից և նոր ժամանակի մյուս մտածողներից, չխոսելով արդեն ավելի վաղ շրջանի մտածողների մասին, ուժը պատկերվում էր իբրև իրավունքի հիմք. դրանով իսկ քաղաքականության տեսական քննարկումը ազատված է բարոյականությունից...»[2]:

Թեև «Գերմանական գաղափարախոսությունը» (որտեղից վերցված են այս խոսքերը) գրվելու ժամանակից անցել է ավելի քան հարյուր տարի, Կ. Մարքսի նշած առանձնահատկությունը բնորոշ է նաև ժամանակակից բուրժուական տեսությունների համար: Հենց այն պատճառով, որ դրանց մեջ անտեսվում է սոցիալ-քաղաքական գործոնների դերը, նրանց հեղինակները ի վիճակի չեն իմաստավորելու սոցիալիզմի ուժի աղբյուրները, որոնք սովետական պետության գոյության առաջին տարիներին արդեն ապահովեցին նրա հաղթանակը իմպերիալիզմի ռազմական գերակշիռ ուժերի դեմ մղված պայքարում: «Այն ուժը, որի վրա հենվում էր և ձգտում էր հենվել այդ նոր իշխանությունը,— գրում էր Վ. Ի. Լենինը,— ոչ թե մի բուռ զինվորականների զավթած սվինի ուժն էր, ոչ թե «ոստիկանական քաղաքամասի» ուժ, ոչ թե փողի ուժ... Նա հենվում էր ժողովրդական մասսայի վրա»[3]:

Միջազգային հարաբերություններում ռազմական ուժի առաջնային դերի մասին բուրժուական քաղաքական գիտության գլխավոր թեզիսից բխում է «ուժերի հավասարակշռության» կոնցեպցիան: Այն ձևավորվել է XVI—XVII դարերում, երբ Անգլիան ու Ֆրանսիան միմյանց դեմ զինված պայքար էին մղում եվրոպական ու համաշխարհային քաղաքականության մեջ գերիշխանության հասնելու համար:

Վաղուց է ձևավորվել «ուժերի հավասարակշռության» վրա հիմնված քաղաքականության այնպիսի կարևոր կողմը, ինչպիսին է հակահեղափոխական ինտերվենցիոնիզմը, որը հանդես է գալիս իբրև շահագործող դասակարգերի գործիք՝ ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարը ճնշելու ժամանակ: «Ինտերվենցիան միշտ եղել է հավասարակշռության սիստեմի զենք»[4],— դեռևս անցյալ դարում գրել է միջազգային իրավունքի էքսպերտ Հ. Օպենհայմը: Եվ այսօր բուրժուական տեսաբանները, խոսելով «ուժերի հավասարակշռությունը» պահպանելու մասին, նկատի ունեն պրոլետարիատի հեղափոխական ելույթները և ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարը ճնշելու ան-

---

[1] К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 20, стр. 156.
[2] К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 3, стр. 314.
[3] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 31, էջ 435:
[4] H. B. Oppenheim. System des Wôlkerrechts. Frankfyrt 1845, S. 31.



հրաժեշտությունը:

Այժմ «ուժերի հավասարակշռության» կոնցեպցիան ձեռք է բերել որոշ նոր գծեր, և դա կատարվել է համաշխարհային ասպարեզում ուժերի տեղաբաշխման մեջ տեղի ունեցած փոփոխությունների ազդեցության տակ:

Կառուցելով միջազգային հարաբերությունների «մոդելներ», «ուժերի հավասարակշռության» կողմնակիցները ելնում են միմյանց նկատմամբ և ամբողջ սիստեմի նկատմամբ որոշ «հավասարակշռության» մեջ գտնվող դասակարգայնորեն համասեռ պետությունների ինչ-որ վերացական սիստեմի առկայությունից: Այդպես են վարվում, օրինակ, ամերիկացի հետազոտող Մորտոն Կապլանը: Ձևակերպելով «ուժերի հավասարակշռության» սիստեմի գործողության իր «վեց կանոնները», նա փորձում է ապացուցել, թե պետությունները միջազգային ասպարեզում «նույնական միավորներ» են[1]: Այս մոտեցումը հայտնի է նաև որպես «բիլիարդի գնդակների» սկզբունք:

Հարցադրման մեջ դժվար չէ գտնել բուրժուազիայի դասակարգային նպատակները, նրանց ձգտումը՝ ժամանակակից միջազգային հարաբերություններից գիտակցորեն դեն նետել նրանց դասակարգային բովանդակությունը՝ սկզբունքորեն տարբեր արտաքին քաղաքականություն վարող սոցիալական երկու սիստեմների՝ սոցիալիզմի և կապիտալիզմի, հակամարտությունը: Այս կամ այն պետության արտաքին քաղաքականությունը վերացական մեծություն չէ, ինչպես այդ փորձում են ներկայացնել բուրժուական տեսաբանները, այլ ածանցված է նրա սոցիալ-քաղաքական կարգից: Իմպերիալիզմի արտաքին քաղաքականության բովանդակությունը, որը համապատասխանում է նրա դասակարգային բնույթին, Վ. Ի. Լենինի բնորոշմամբ, համաշխարհային տիրապետությունն է[2]: Ի տարբերություն դրանից, սոցիալիստական երկրների արտաքին քաղաքական սկզբունքները պայմանավորված են հաղթանակած բանվոր դասակարգի դասակարգային շահերով: Այդ սկզբունքներն են՝ պրոլետարական ինտերնացիոնալիզմը և հասարակական տարբեր կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցությունը:

«Ուժերի հավասարակշռության» «արտադասակարգային» միլիտարիստական կոնցեպցիայի շրջանակներում 60-ական թվականների ընթացքում բուրժուական տեսաբանները պատկերում էին երկու բևեռի բաժանված, կամ «երկբևեռ» աշխարհի նկարը: «Բևեռականությունը Միացյալ Նահանգների և Սովետական Միության միջև... դարձել է միջազգային քաղաքականության գերիշխող գիծ,— 1967 թվականին գրում էր Հ. Մորգենթաուն,— ԱՄՆ-ի և ՍՍՀՄ-ի հզորությունը... որոշում է ուժերի հավասարակշռությունը»[3]: Ավելին, ամերիկյան տեսաբանները ձգտում էին միջազգային հարաբերությունների ամբողջ բովանդակությունը ևս հանգեցնել այդ երկու պետությունների փոխադարձ ռազմական զսպումին:

Քաղաքական տեսակետից աշխարհն իրոք ունի երկու բևեռ, բայց այդ բևեռները ոչ թե «գերտերություններն» են, այլ երկու հակադիր սոցիալ-տնտեսական սիստեմները՝ սոցիալիզմը և կապիտալիզմը, որոնց հարաբերակցությունը անկասելիորեն փոխվում է հօգուտ սոցիալիզմի: «Իմպերիալիզմը,— ընդգծվում էր կոմունիստական ու բանվորական կուսակցությունների 1969

---

[1] M Kaplan. System and Process in International Politics. New York, pp. 22-23
[2] Տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 23, էջ 39:
[3] H. Morgenthau. Politics among Nations. New York, 1967, p. 336.

թվականի միջազգային խորհրդակցության փաստաթղթերում,— անզոր է վերադարձնելու իր կորցրած պատմական նախաձեռնությունը, հետ շրջելու ժամանակակից աշխարհի զարգացումը: Մարդկության զարգացման մայրուղին որոշում են համաշխարհային սոցիալիստական սիստեմը, միջազգային բանվոր դասակարգը, բոլոր հեղափոխական ուժերը»:

Իսկ «երկբևեռ աշխարհի» իմպերիալիստական կոնցեպցիայի դերն այն է, որ ժողովուրդների ուշադրությունը շեղի այն արմատական տեղաշարժերից, որոնց մեջ դրսևորվում են դեպի սոցիալիզմ տանող հասարակական զարգացման օբյեկտիվ օրինաչափությունները: Ստացվում է այն սխալ տպավորությունը, թե իբր կամային ակտի միջոցով (օրինակ, սպառազինությունների մրցավազքը ուժեղացնելու կամ ազգային անկախության համար պայքարող ժողովուրդների դեմ ագրեսիայի միջոցով) իմպերիալիստները կարող են սեփական հայեցողությամբ կասեցնել պատմության վերընթաց զարգացումը:

Վերջին տարիներին բուրժուական տեսությունների թվում առաջատար տեղ է գրավել միջազգային հարաբերությունների «ունիվերսալացման» կոնցեպցիան: Տարբեր տեսաբաններ այդ կոնցեպցիան տարբեր կերպ են ձևակերպում: Ոմանք խոսում են «համաշխարհային համագործակցության» կամ «համաշխարհային կարգի», մյուսները՝ «անդրազգային փոխհարաբերությունների» և «ունիվերսալ փոխադարձ կախման», երրորդները՝ «գլոբալ կոնվերգենցիայի» մասին: Այս կոնտեքստում էլ անհրաժեշտ է քննության առնել նաև «կցորդման» կոնցեպցիան:

Անվանումների ամբողջ բազմազանությամբ և փաստարկման որոշ նրբերանգների առկայությամբ հանդերձ խոսքը, ըստ էության, միևնույն բանի մասին է: Արդի պայմաններում, ասում են բուրժուական տեսաբանները, գլխավորապես գիտատեխնիկական հեղափոխության ազդեցության տակ, միջազգային հարաբերություններում երևան է գալիս հակասությունները հարթելու և «միասնական աշխարհ» ստեղծելու տենդենց: «Երկրների փոխկախվածությունը» ուժեղանալու հետևանքով, գրում են «կցորդման» կոնցեպցիայի հեղինակները, իբր տեղի է ունենում «ազգային և միջազգային սիստեմների միջև սահմանների սքողման» պրոցես: Ուստի, քաղաքական գիտության «առաջնահերթ խնդիրն» է համարվում ոչ թե ավանդական միջպետական հարաբերությունների, այլ «անդրազգային պրոցեսների» ուսումնասիրությունը[1]:

Ամերիկյան քաղաքական «Ֆորին աֆերս» առաջատար հանդեսը վերջին մի շարք համարներում ընդգծում էր ազգային օրգանները փոխարինելու համար «պետական իշխանության որոշ ատրիբուտներ ունեցող վերազգային ինստիտուտներ» ստեղծելու անհրաժեշտությունը:

Ողջ մարդկության համար պոտենցիալ սպառնալիք ներկայացնող միջուկային զենքի դարում օբյեկտիվ անհրաժեշտություն է դառնում միջպետական հարաբերություններից բացառել ուժի կիրառումը: Սակայն բուրժուական տեսաբանների առաջարկած երկընտրանքը (կամ «միասնական աշխարհ», կամ պատերազմ) սկզբունքորեն կեղծ է դուրս գալիս: Փաստորեն այստեղ ևս մենք տեսնում ենք երկու հակամարտ հասարակական-քաղաքական սիստեմների գոյության պայմաններում միջազգային հարաբերությունների դասակարգային էությունը թաքցնելու և սոցիալիստական համագործակցությունը «կակղեցնե-

[1] Տես „Transnational Relations and World Politics“. Ed. by R. O. Keohane, J. S. Nye, Jr., Cambridge, 1972.



լու» ուղիներ գտնելու կանխամտածված փորձը: Բացի դրանից, «միասնական աշխարհի» բուրժուական կոնցեպցիայի մեջ ևս կարելի է տեսնել «վերազգային աշխարհը» ինչ-որ մեկ պետության դիկտատին ենթարկելու ցանկությունը. այդ պետության տակ նրանք հասկանում են Միացյալ Նահանգները:

Տնտեսական կյանքի, քաղաքականության, գիտության և այլնի միջազգայնացման՝ որպես հասարակական զարգացման օրինաչափության, հարցը մեկնաբանելիս բուրժուական տեսաբանները թույլ են տալիս, մեկ ուրիշ, մեղմ ասած, աղավաղում ևս: Դեռևս Կ. Մարքսն էր նշել, որ արտադրաուժերի զարգացման օբյեկտիվ պահանջները ծնում են միջազգայնացման տենդենց: Պատմության բուրժուական ժամանակաշրջանը, գրել է գիտական կոմունիզմի հիմնադիրը, կոչված է, մասնավորապես, «զարգացնելու համաշխարհային այնպիսի հարաբերություններ, որոնք հիմնված լինեն ամբողջ մարդկության փոխադարձ կախման վրա»[1]: Այդ օրինաչափությունը առանձնապես ակնհայտ դարձավ մեր օրերում՝ գիտատեխնիկական հեղափոխության կապակցությամբ: Սակայն ժողովուրդների մերձեցման այդ օբյեկտիվ տենդենցի լրիվ դրսևորման ճանապարհին, տենդենց, որի բարձրագույն ձևն են դառնում պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների վրա հիմնված սոցիալիստական երկրների փոխհարաբերությունները, որպես խոչընդոտ հանդես է գալիս իմպերիալիզմը: Այնուամենայնիվ, ժամանակակից բուրժուական տեսաբանները ջանում են ապացուցել, թե իբր իմպերիալիզմը կարող է դառնալ «միասնական աշխարհի» կազմավորման երաշխիքը: Հենց այդ է իմպերիալիզմը տեսականորեն արդարացնելու փորձերից մեկը:

Այսօր գաղափարախոսական այս կամպանիայում որպես գլխավոր գործիք են ծառայում իմպերիալիստական համաշխարհային տնտեսական կապերում գնալով ավելի մեծ նշանակություն ստացող միջազգային մոնոպոլիաների գործունեության շուրջ կատարվող շարաշահությունները: Հետպատերազմյան շրջանում դրանց երևան գալը կապված է համաշխարհային սոցիալիստական սիստեմի առաջացման հետևանքով մոնոպոլիստական կապիտալի էքսպանսիայի մասշտաբների ու պայմանների փոփոխման հետ, միջազգային ասպարեզում ուժերի նոր տեղաբաշխման հետ, գաղութատիրության սիստեմի փլուզման, գիտատեխնիկական հեղափոխության զարգացման հետ: Միջազգային, կամ, ինչպես Արևմուտքում են անվանում, «անդրազգային», «բազմազգային» մոնոպոլիաները այն մոնոպոլիաներն են, որոնք արտադրական, վաճառահանման և հետազոտական ֆունկցիաներ են կատարում ամբողջ կապիտալիստական շուկայի մասշտաբով:

Իբրև վիթխարի գերշահույթներ կորզելու միջոց հանդիսացող այդ միջազգային մոնոպոլիաները բուրժուական քաղաքական գիտության մեջ պատկերվում են իբրև քաղաքակրթության փրկիչներ ջերմամիջուկային պատերազմի սպառնալիքից: «Կորպորացիաները շահույթներ են ուզում: Բայց միաժամանակ նրանք ուզում են խաղաղություն և հանգստություն»[2],— գրում է բազմազգային» մոնոպոլիաների ջատագովներից մեկը՝ Չ. Քինդլեբերգերը:

Համընդհանուր միավորման և խաղաղության ձգտող մոնոպոլիաներ՝ այս է բուրժուական գիտության «վերջին խոսքը»: Այս կապակցությամբ մարդ

[1] К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 9, стр. 230.

[2] Ch. Kindleberger. American Business Abroad. New Haven and London, 1969, p. 198.

ակամա հիշում է «ուլտրաիմպերիալիզմ» հասկացությունը, որի մասին Վ. Ի. Լենինը հետևյալն է ասել. «Որոշ բուրժուական հեղինակներ... այն կարծիքն էին արտահայտել, թե միջազգային կարտելները կապիտալի միջազգայնացման ամենացայտուն արտահայտություններից մեկը լինելով՝ հնարավորություն են տալիս հուսալ թե կապիտալիզմի ժամանակ խաղաղություն կհաստատվի ժողովուրդների միջև: Այս կարծիքը տեսականորեն բոլորովին անհեթեթ է, իսկ գործնականապես սոփեստություն է և վատթարագույն օպորտունիզմի անազնիվ պաշտպանության մի եղանակ: Միջազգային կարտելները ցույց են տալիս, թե որ աստիճան են աճել այժմ կապիտալիստական մոնոպոլիաները և թե ինչի համար է մղվում պայքարը կապիտալիստական միությունների միջև...»[1]:

Միջազգային կորպորացիաները որպես «միջազգային ինտեգրացման կատալիզատոր» պրոպագանդող բուրժուական կոնցեպցիաների դասակարգային էությունը ջրի երես է դուրս գալիս, հենց որ խոսակցությունը տեսության բնագավառից անցնում է բիզնեսի առօրյա պրակտիկային: Իր վերջին համարներից մեկում ամերիկյան գործարար շրջանների օրգան «Ֆորբս» հանդեսն իր ընթերցողներին պատմեց այն դժվարությունների մասին, որոնց բախվում են ամերիկյան «բազմազգային» կորպորացիաները, մասնավորապես՝ Ֆորդի ավտոմոբիլային ձեռնարկությունները: «Նրանք կանգնած են ուղեբաժանում,— տրտնջում է հանդեսը:— Արտասահմանում հարձակվում են նրանց վրա՝ որպես տրոյական ձիու: ԱՄՆ-ում նրանց մեղադրում են, որ նրանք արտահանում են բանվորական տեղերն ու... կապիտալը»: Ինչպե՞ս դուրս գալ դրությունից, ինչպե՞ս հասնել հետագա անարգել էքսպանսիայի՝ հատկապես Եվրոպայում: Այդ բանը կարելի է անել, սովորեցնում է հանդեսը, «վերացնելով ազգային սահմանները, որոնք բաժանում են Գերմանիան, Մեծ Բրիտանիան և Եվրոպայի մնացած մասը, և կազմակերպելով իսկական բազմազգ հիմքի վրա»[2]:

Վ. Ի. Լենինը գրել է. «Երբ անմիջապես պարզ չի լինում, թե քաղաքական կամ սոցիալական ինչպիսի խմբեր, ուժեր, մեծություններ են պաշտպանում որոշ առաջարկներ, միջոցառումներ և այլն, հարկավոր է միշտ դնել «Ո՞ւմ է ձեռնտու» հարցը»[3]: Բուրժուական տեսաբանները շարունակ գրում են այն մասին, որ «հնացել է» ազգային սուվերենությունը, որ հասունացել է այն վերացնելու պահանջը, գրում են «մարդկության միասնության մասին՝ հանուն ընդհանուր խաղաղության»: Ժողովուրդների հարաճուն փոխադարձ կախումը, գրում են նրանք, բխում է «տեխնիկայի ֆանտաստիկ զարգացումից և այն հասարակ փաստից, որ պետություններ-ազգերը այն ձևով, ինչպես նրանք գոյություն են ունեցել մինչև այժմ, դառնում են անախրոնիզմ, որը սպառնում է ամբողջ մարդկությանը»[4]: Բայց, պարզվում է, որ բանը ամենևին «մարդկության շահերը» չեն, այլ գերմոնոպոլիաների շահույթները, որոնց համար պետական սահմանները խոչընդոտ են հանդիսանում նրանց անսահման էքսպանսիայի ճանապարհին:

«Մարդկության միասնության» բուրժուական պրոպագանդան, որին իբր աջակցում են միջազգային կորպորացիաները, մոնոպոլիստական շրջանների

1 Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 22, էջ 334—335:

2 „Forbes", July 1972, p. 23.

3 Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 19, էջ 39:

4 1985/Corporate Planning Today for Tomorrow's World Market". New York, 1967, p. 89.



համար ծառայում է նաև որպես գաղափարախոսական զենք՝ պրոլետարական ինտերնացիոնալիզմի դեմ նրանց մղած պայքարում: Սոցիալիզմի արտաքին քաղաքականության այդ հիմնարար սկզբունքին, որն այսօր սոցիալիստական երկրների պետական հարաբերությունների ամուր հիմքն է, հակադրվում է մոնոպոլիաների «ինտերնացիոնալիզմը», որը կառուցված է ժողովուրդների ստրկացման ու տարանջատման վրա: Համաշխարհային երկու սիստեմների պայքարի սրման իրադրության մեջ կապիտալիստական տերությունները, չնայած նրանց բաժանող հարաճուն հակասություններին, ձգտում են միավորել ջանքերը, որպեսզի պահպանեն ու ամրապնդեն շահագործման ու ճնշման կարգը, ետ վերադարձնեն կորցրած դիրքերը:

Սակայն իմպերիալիզմի փորձերը, որոնց նպատակն է միավորել ջանքերը սոցիալիզմի դեմ մղվող պայքարում, խորտակվում են, բախվելով օրգանապես կապիտալիզմին հատուկ ներքին հակասություններին: «Ոչ ինտեգրացիայի պրոցեսները, ոչ էլ համաշխարհային սոցիալիզմի դեմ պայքարելու համար ջանքեր միավորելու իմպերիալիստների դասակարգային շահագրգռվածությունը չեն վերացրել իմպերիալիստական պետությունների միջև եղած հակասությունները»[1]:

Բուրժուական քաղաքական գիտության մեջ, առանձնապես ԱՄՆ-ում, մեծ տարածում են գտել միջազգային հարաբերությունների զարգացման այն կոնցեպցիաները, որոնց համար անկյունաքար են դառնում ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության հետևանքով առաջացող պրոցեսները: Այդպիսի տեսությունների պրակտիկ նպատակն է՝ «հիմնավորել իմպերիալիստական տերությունների արտաքին քաղաքական գործունեությունը, որը պայմանավորված է մոնոպոլիաների ձգտումով՝ գիտատեխնիկական առաջադիմության նվաճումներն օգտագործել իրենց դիրքերն ամրապնդելու համար: Արևմուտքում այդ ուղղությունը ստացել է «նոր տեխնոլոգիական քաղաքականություն» անունը: Մշակելով այն, մոնոպոլիստական շրջանները հույս ունեն գիտության ու տեխնիկայի նվաճումների օգնությամբ լուծել միջիմպերիալիստական հակասությունները, զարգացող երկրները պահել տնտեսության կապիտալիստական սիստեմում և դրանով գերակշռության հասնել երկու սիստեմների մրցության մեջ:

Միջազգային հարաբերությունների զարգացումը գիտատեխնիկական հեղափոխության հետ կապող կոնցեպցիաների առաջացման համար հողը նախապատրաստվել է 50-ական թվականների վերջին, երբ Արևմուտքում ծագել էր «միասնական ինդուստրիալ հասարակության» տեսությունը: Նրա զանազան տարբերակների հեղինակները՝ Ռ. Արոնը, Ու. Ռոստոուն, Դ. Հելբրայտը փորձում էին ստեղծել հասարակության տեխնոլոգիական զարգացման մի «համապարփակ» կոնցեպցիա, որտեղ վերընթաց զարգացումը «աճման փուլերով» պատկերվում էր որպես ավտոմատ պրոցես, որը ամբողջապես կախված է տեխնիկայի զարգացման մակարդակից, իսկ արտադրահարաբերությունները, որոնք բնորոշում են հասարակության սոցիալ-տնտեսական բնույթը, հաշվից բոլորովին դուրս են նետվում: «Միասնական ինդուստրիալ հասարակության» տեսությունը նպատակ ունի ջնջել դասակարգային հակադրությունը սոցիալիզ-

1 «ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը»: «Հայաստան» հրատ., Երևան, 1971, էջ 19:

մի և կապիտալիզմի միջև, որոնք բուրժուական գաղափարախոսները դիտում են որպես մեկ «ինդուստրիալ հասարակության» տարատեսակներ։

Այս տեսությունը իմպերիալիզմի արտաքին քաղաքական պրակտիկայում ակտիվորեն օգտագործվում էր 60-ական թվականներին։ Քենեդիի կառավարությունը, օրինակ, զարգացող երկրների հետ ունեցած իր հարաբերություններում փորձում էր չեզոքացնել սոցիալիզմի օրինակի ազդեցությունը նրանց վրա, ապացուցելով, որ, հենվելով ամերիկյան «օգնության» վրա, նրանք կարող են առաջադիմության հասնել առանց սոցիալական հեղափոխության։ «Տեխնոլոգիական հեղափոխությունը», պնդում էր այն ժամանակվա պետական քարտուղար Դին Ռասկը, ինքնին կհանգեցնի սոցիալական, տնտեսական և քաղաքական հարաբերությունների ձևափոխմանը նախկին գաղութներում և կիսագաղութներում[1]։

«Միասնական ինդուստրիալ հասարակության» տեսությունը և դրանից բխող «կոնվերգենցիայի» և «դեիդեոլոգիզացիայի» կոնցեպցիաները օգտագործվում էին նաև սոցիալիստական երկրները «խաղաղ ներթափանցելու» քաղաքականությունը «հիմնավորելու» համար։ Եվ քանի որ, ինչպես գտնում են բուրժուական տեսաբանները, կապիտալիստական և սոցիալիստական երկրները հակադիր սոցիալ-տնտեսական սիստեմներ չեն, այլ միևնույն «ինդուստրիալ հասարակության» տարբերակներ, որոնք իրարից զանազանվում են միայն տեխնիկա-տնտեսական ցուցանիշներով, ապա վաղ թե ուշ, երբ այդ ցուցանիշները հավասարվեն, իբր, տեղի կունենա նրանց «հանդիպումը» այն փուլում, որը բնորոշ է իր «մասսայական սպառման բարձր մակարդակով»։ Կկազմավորվի «միասնական համաշխարհային տնտեսական համագործակցություն, կամ «խառը հասարակություն»։ Հետևաբար, դատում են բուրժուական տեսաբանները, գաղափարախոսական պայքարը կորցնում է իր իմաստը և խոչընդոտ է պետությունների խաղաղ գոյակցության ճանապարհին։

«Դեիդեոլոգիզացիայի» տեսաբանների փաստարկումը տարբեր է։ Նյու-Յորքի համալսարանի պրոֆեսոր, նախկինում պրեզիդենտ Քենեդիի մերձավորագույն խորհրդական Ա. Շլեզինգեր-կրտսերը, օրինակ, գտնում է, որ խաղաղությունը կարող է հաստատվել միայն այն ժամանակ, երբ «գործածությունից հանվեն» «կապիտալիզմ» և «սոցիալիզմ» բառերը։ Պրինստոնի համալսարանի պրոֆեսոր Ջ. Քեննանը կոչ է անում խաղաղ համագործակցության, բայց հաշվի առնելով «ժամանակակից հասարակության զարգացման բնական ուժերը, որոնք մղում են դեպի միասնություն» և հարթում հակադրությունները[2]։ Զբ. Բժեզինսկին իր հաշիվները հիմնում է սոցիալիստական երկրների «գաղափարախոսական էրոզիայի» վրա, առաջարկելով «արտաքին հատուկ միջոցների» օգնությամբ արագացնել այն[3]։

Դեղատոմսերը, ինչպես տեսնում ենք, ամեն մի դեպքում տարբեր են, բայց բոլորի նպատակը մեկ է՝ հասարակական տարբեր կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության քաղաքականությունը տարածել նաև գաղափարախոսության ոլորտը։ «Դեիդեոլոգիզացիայի» տեսաբանները միջազ-

[1] Տե՛ս „The Department of State Bulletin", June 4. 1962.

[2] „Concern", March 15, 1965.

[3] Տե՛ս Zb. Brzezinski. The Soviet Bloc. Unity and Conflict. Cambrtdge (USA) ,1960.



գային հարաբերություններում տիրող լարվածությունը պահպանելու պատասխանատվությունը նախապես դնում են Սովետական Միության վրա, նրանից պահանջելով դադարեցնել գաղափարախոսական պայքարը։ Բայց այդ դեպքում էլ նրանք ոչ միայն մտադիր չեն հրաժարվել բուրժուական գաղափարախոսությունը տարածելուց, այլ, նոր հնարավորություններ են որոնում սոցիալիստական երկրների դեմ գաղափարական դիվերսիաների համար։

60-ական թվականների ընթացքում «ինդուստրիալ հասարակության», «կոնվերգենցիայի», «դեիդեոլոգիզացիայի» և այլ տեսությունները օգտագործվում էին սոցիալիստական երկրների նկատմամբ ԱՄՆ-ի քաղաքականության գաղափարախոսական հիմնավորման համար (պրեզիդենտ Քենեդիի «դիֆերենցված մոտեցումը», պրեզիդենտ Ջոնսոնի «կամուրջներ գցելը»)։ Այս ամենի նպատակն է՝ բոլոր միջոցներով խարխլել սոցիալիստական համագործակցության միասնությունը և քայքայել սոցիալիզմի հիմքերը, այսինքն՝ «խաղաղ մեթոդներով վերջ դնել կոմունիզմին»։

Այժմ փորձեր են արվում 60-ական թվականների տեսությունները ժամանակակից պայմաններին հարմարեցնելու համար։ «Միասնական ինդուստրիալ հասարակության» փոխարեն ներկայումս առաջ է քաշվում «մոդեռնացման» կոնցեպցիան, որը, իբր, տեղի է ունենում գիտատեխնիկական հեղափոխության ազդեցության տակ, որի հետևանքով «ջնջվում են սահմանները» սոցիալիստական և կապիտալիստական երկրների միջև։ Պնդում են, թե հակամարտությունը սոցիալիզմի և կապիտալիզմի միջև իբր գնալով ավելի է սքողվում գիտատեխնիկական առաջընթացի բնագավառում տեղի ունեցող մրցության պատճառով։ Մասնավորապես, ջանում են ապացուցել, թե գիտատեխնիկական հեղափոխության հետևանքով առաջացած պրոցեսների կառավարումը «միջազգային քաղաքականության կենտրոնական պրոբլեմն» է[1]։

Հենց այդ ոգով էլ Արևմուտքի որոշ տեսաբաններ մեկնաբանում են միջազգային հարաբերությունների մեջ նկատվող մեղմացման տենդենցը։ Նրանք դա համարում են ոչ թե համաշխարհային զարգացման իրական ուժ դարձած խաղաղ գոյակցության սկզբունքի հաղթանակ, այլ «քաղաքական պրագմատիզմի» հաղթանակ «գաղափարախոսական դոգմատիզմի» նկատմամբ[2]։

Քայքայիչ աշխատանքը սկսվում է նաև մյուս ծայրից։ Խաղաղ գոյակցության քաղաքականության արդյունավետության համար պահանջվում են գործնական ջանքեր։ Այն կենսագործելու համար պետությունները պետք է ամենից առաջ հրաժարվեն պատերազմից՝ որպես վիճելի հարցերը լուծելու միջոցից։ Իսկ բուրժուական տեսաբանները զանազան միջոցներով փորձում են անվտանգության մասին խոսակցությունը միջպետական հարաբերություններից փոխադրել սոցիալ-քաղաքական և գաղափարախոսական պրոբլեմների ոլորտը։

Միջազգային կյանքը «ապաքաղաքայնացնելու», նրանից միջպետական հարաբերությունների պրոբլեմները, և առաջին հերթին պատերազմի ու խաղաղության արմատական հարցերը հանելու փորձը արտացոլում է, մի կողմից, Արևմուտքի իմպերիալիստական շրջանների ցանկությունը՝ արգելակելու այն տենդենցների զարգացումը, որոնք տանում են դեպի Եվրոպայի և աշխարհի

[1] „American Foreign Policy in International Perspective". Washington, 1971, pp. 5, 20.

[2] „Encounter", February 1972.

անվտանգության արդյունավետ սիստեմի ստեղծում, իսկ մյուս կողմից՝ նրանց ձգտումը՝ հիմնավորելու իմպերիալիզմի միջամտությունը մյուս երկրների ներքին գործերին։ Թե մեկ, և թե մյուս դեպքում խարխլվում են հասարակական տարբեր կարգ ունեցող երկրների խաղաղ գոյակցության քաղաքականության հիմքերը։

Ժամանակակից միջազգային հարաբերությունների վերաբերյալ բուրժուական տեսաբանների հայացքները վերևում քննության առնված կոնցեպցիաներով չեն սպառվում։ Այնուհանդերձ, հնարավոր է անել որոշ հետևություններ։

Ամենից առաջ, թվարկված տեսությունները, որքան էլ նրանք տարբեր լինեն միմյանցից, ունեն մի ընդհանուր գիծ՝ դրանցում բացահայտված է ժամանակակից աշխարհում տեղի ունեցող պրոցեսների քիչ թե շատ ճշմարտացի բացատրությունը։ Միջազգային հարաբերությունների համակողմանի, համապարփակ վերլուծության փոխարեն կամայականորեն ընդգծվում է նրանց մերթ մեկ, մերթ մյուս կողմը («ուժը», գիտատեխնիկական հեղափոխությունը և այլն), որը հետո հրամցվում է որպես պետությունների հարաբերությունները որոշող միակ գործոն։ Ըստ որում, այդ գործոնը դիտվում է անփոփոխ ձևով, իբրև կանխորոշված եղելություն։

Ի հակադրություն բուրժուական մեթոդոլոգիայի, միջազգային հարաբերությունների վերլուծության մարքս-լենինյան մեթոդը հետազոտությունների դասակարգայնությունը, կուսակցականությունը զուգորդում է խոր գիտականության հետ։ Այն կառուցվում է ուսումնասիրվող երևույթների նկատմամբ համակողմանի դիալեկտիկական մոտեցման վրա՝ իրականության պատմա-մատերիալիստական մեկնաբանման պլանով։ Ինչպես նշել է Վ. Ի. Լենինը, «Մարքսը մատնանշեց պատմության, որպես միասնական, իր ամբողջ վիթխարի բազմակողմանիությամբ ու հակասականությամբ օրինաչափ մի պրոցեսի, գիտական ուսումնասիրության ուղին»[1]։

Բուրժուական քաղաքական գիտության մեջ «ուժային» կոնցեպցիաների գերակշռությունը արտացոլում է իմպերիալիզմի ագրեսիվ, ռեակցիոն էությունը։ Միաժամանակ այն վկայում է, որ բուրժուական տեսաբանները չեն ցանկանում իմաստավորել միջազգային հարաբերությունների օբյեկտիվ դասակարգային բովանդակությունը՝ որպես սոցիալիզմի և կապիտալիզմի, առաջադիմության ու հետադիմության ուժերի հակամարտություն։ Այդ հակամարտության մեջ սոցիալիզմի հաջողությունները բացատրվում են ոչ այնքան սոցիալիստական երկրների ռազմական հզորությամբ, որքան գլխավորապես սոցիալական սիստեմի առավելությամբ, այլ կերպ ասած՝ բարոյա-քաղաքական գործոններով։ Այդ առավելությունը դրսևորվեց սովետական իշխանության առաջին տարիներին և Հայրենական մեծ պատերազմի ժամանակ, երբ սովետական ժողովուրդը վճռական ավանդ ներդրեց ֆաշիզմի ջախջախման գործում։ Այն դրսևորվում է և այսօր. սոցիալիզմն ամենուրեք ստիպում է իմպերիալիզմին նահանջել։

Բուրժուական տեսությունները ձևափոխվում, կերպարանափոխվում են։ Այդ կապակցությամբ Արևմուտքում խոսում են «տեսական մտքի ակտիվության» մասին։ Բայց նման «ակտիվությունը» բոլորովին այլ բան է վկայում։

---

1 Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 21, էջ 58։



կյանքը որքան ավելի շատ է մեկը մյուսի հետևից հերքում այդ տեսությունները, այնքան բուրժուական գաղափարախոսները ավելի շատ են ստիպված լինում փոփոխված պայմաններին հարմարվելու պրոցեսում առաջադրել նորանոր կոնցեպցիաներ, որոնք շատ շուտով դարձյալ կդառնան ոչ պիտանի։

Բազմապիսի տեսությունների օգնությամբ բուրժուական գաղափարախոսները փորձում են խեղաթյուրել խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքի էությունը, որն այսօր դարձել է միջազգային զարգացման իրական ուժ։ Ղեկավարվելով այդ սկզբունքով, Սովետական Միությունը հետևողականորեն հանդես է գալիս կապիտալիստական երկրների հետ նորմալ հարաբերություններ պահպանելու, միջպետական վիճելի հարցերը բանակցությունների միջոցով լուծելու օգտին։ Սովետական Միությունը հաստատակամորեն պաշտպանում է բոլոր պետությունների ներքին գործերին չմիջամտելու, նրանց սուվերեն իրավունքներն ու տերիտորիալ անձեռնմխելիությունը հարգելու սկզբունքը։ Բայց, անշուշտ, խաղաղ գոյակցություն չի կարող լինել այնտեղ, ուր խոսք է լինում դասակարգային և ազգային-ազատագրական պայքարի պրոցեսների մասին՝ կապիտալիստական երկրներում։ Խաղաղ գոյակցության սկզբունքները անկիրառելի են ճնշողների և ճնշվողների հարաբերություններում, գաղութարարների և գաղութային ճնշման զոհերի հարաբերություններում։ Նրանք անկիրառելի են նաև գաղափարախոսական պայքարի ոլորտում։

ՍՄԿԿ, սոցիալիստական համագործակցության երկրների կոմունիստական և բանվորական կուսակցությունները խաղաղության ու միջազգային անվտանգության ամրապնդմանն ուղղված արտաքին քաղաքական կոնստրուկտիվ գործունեությունը զուգորդում են իմպերիալիզմի ագրեսիվ ձգտումների, այդ թվում և գաղափարախոսության ոլորտի քայքայիչ գործողությունների դեմ վճռական հակահարվածի հետ։ «Զգտելով հաստատել խաղաղ գոյակցության սկզբունքը,— հայտարարեց Լ. Ի. Բրեժնևը 1972 թվականի հունիսի 27-ին,— մենք մեզ հաշիվ ենք տալիս, որ հաջողությունները այդ կարևոր գործում ոչ մի չափով չեն նշանակում գաղափարախոսական պայքարի թուլացման հնարավորություն։ Ընդհակառակը, հարկավոր է պատրաստ լինել այն բանին, որ այդ պայքարը կուժեղանա, կդառնա սոցիալական երկու սիստեմների հակամարտության ավելի ու ավելի սուր ձև»[1]։

---

1 «Պրավդա», 1972 թվականի հունիսի 29։

«Международная жизнь», 1973, № 1.



# ՀԱՅՐԵՆԱՍԻՐՈՒԹՅԱՆ ԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ԷՈՒԹՅՈՒՆԸ

Կ. Ս. ՎԱՐԴԱՆՅԱՆ

Մեր ապրած դարաշրջանում, երբ սոցիալիստական համագործակցության ազգերն ու ժողովուրդները ողջ աշխարհի առաջավոր ուժերի աջակցությամբ շարունակում են առաջ մղել պատմության անիվը, երբ գնալով ավելի է խորանում ու ծավալվում միջազգային կապիտալիզմի համաշխարհային ճգնաժամը և չի թուլանում գաղութակալության վերջնական փլուզման թափը, երբ հզորանում է համաշխարհային կոմունիստական շարժումը, պրոլետարական ինտերնացիոնալիզմի ու հայրենասիրության նշանակությունն ու դերը աշխատավորների դաստիարակության շնորհակալ գործում մնում են թե՛ հրատապ և թե՛ հույժ կենսական։ Հայրենասիրության ու ինտերնացիոնալիզմի մարքս-լենինյան գաղափարները՝ համակելով աշխարհի միլիոնավոր մարդկանց, այսօր դարձել են հասարակական առաջընթացի հզոր շարժիչ ուժերը։ Ուստի, պատահական չէ, որ շահագործող դասակարգերի, իմպերիալիզմի ու համաշխարհային ռեակցիայի պաշտպանները ճգնում են ծուռ հայելու մեջ ներկայացնել հայրենասիրությունը, սեպ խրել աշխատավոր զանգվածների համերաշխության, նրանց ինտերնացիոնալ միասնության մեջ։

Մարքսիզմ-լենինիզմը հայրենասիրությունը խարսխում է պատմության մատերիալիստական ըմբռնման գիտական հիմքերի վրա։ Այդ ուսմունքի համաձայն, հայրենասիրական գաղափարները, իդեալներն ու զգացմունքները սերել են ազգային կեղեքման դեմ ծառացող ազատագրական այն շարժումների հորձանուտից, որոնք հանդիսացել են ազգային վայրագ կեղեքման սոցիալական դիմադարձության արձագանքները։ Սակայն հակամարտական հասարակությունների դարավոր պրոգրեսի վճռական գործոնը դասակարգերի կռիվն է, որով և պայմանավորված են ամեն ազգի ու ժողովրդի հասարակական կյանքի մնացած իրողությունները, այդ թվում և նրանց հոգևոր աշխարհի հակասալի ու բազմալի երևույթները։ Անհերքելի է մարքսիստական այն ճշմարտությունը, որ ազգերն իբրև սոցիալական (բայց ոչ բնական-ցեղային ու հավերժական) հանրություններ, գոյավորվել ու զարգացել են գերազանցորեն հասարակական օրինաչափությունների ազդեցության ներքո, որն իր խոր կնիքն է դրել ժողովուրդների սոցիալ-տնտեսական բոլոր ոլորտների, նմանապես և հոգևոր կյանքի, նաև ազգամիջյան հարաբերությունների վրա։



Ինչպես էլ քննարկենք ազգերի պատմությունը, չենք կարող անտեսել Լենինի այն ուղենիշ ցուցումը, որ յուրաքանչյուր ազգի կյանքում տնտեսականն է վճռող գործոնը։ Այստեղից բխում է, որ պրոլետարիատի ու բուրժուազիայի միջև մղվող անհաշտելի կռիվն է ազգի դիմորոշման չափանիշը։

Ոչ անցյալում, ոչ այսօր, լենինյանները բնավ չեն անտեսել, որ ազգային կուլտուրան, ազգային գիտակցությունը և ազգային հոգեբանությունը խոշոր դեր են խաղացել յուրաքանչյուր ազգի առաջընթացում։ Բայց նրանք հար շեշտում են, թե սոցիալական վերոհիշյալ երևույթները իրականում խորապես հակասալի են։ Ազգային կուլտուրան բովանդակում է՝ համազգայինն ու դասակարգայինը, համամարդկայինն ու ազգային յուրակերպը և, որ գլխավորն է, որքան զարգանում է ազգը, նույնքան որոշիչ են դառնում նրան այլ ազգերին մերձեցնող համամարդկային, եղբայրացնող, բայց ոչ բաժանող ձգտումները։ ՍՍՀՄ-ում գոյավորված սովետական ժողովրդի բարգավաճումը և սոցիալիստական ազգերի եղբայրական դաշինքի ամրապնդումը դա են ապացուցում։

Հետևողական լենինյանները հաճախ ընդգծել են, որ իմպերիալիզմի օրոք բուրժուական ազգերի կուլտուրան, ազգային գիտակցությունն ու հոգեբանությունը գերազանցապես դասակարգային բնույթ ունեն, արտացոլում են հակոտնյա դասակարգերի անմիջական շահերն ու կեղեքչական միտումները։ Ուստի, համազգային շահերը, չնայած դասակարգային ներհակ շահերի առկայությանը, դրսևորվում են կապիտալիստական ազգերի պատմության միայն սկզբնական շրջանում։ Համազգային շահերը, բառիս բուն իմաստով, ունեն սոցիալիստական ազգերը, որոնց էկոնոմիկան և իդեոլոգիան կատարյալ սոցիալիստական են։ Որ ազգային կյանքում մեծ դեր են խաղացել ազգային պետությունն ու ազգային կուլտուրան և դրանց համընթաց գոյավորված ազգային գիտակցությունն ու հոգեբանությունը, ինչպես ազգային, նմանապես և ինտերնացիոնալիստական գաղափարները, ազգային զգացմունքները, նացիոնալիզմը, շովինիզմը, ազգային նկարագիրը և այլն, այս իրողությունը մշտապես հաշվի է առնված ազգային հարցի միակ լուծողների՝ լենինյանների կողմից, նայած ազգերի զարգացման կոնկրետ փուլերին, նրանց ներսում ուժգնացող դասակարգային կռվի իրական մակարդակին։

Քանի որ հայրենասիրության պրոբլեմը բազմաբովանդակ է, տվյալ հոդվածում կշոշափենք միայն հայրենասիրության դասակարգային էության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի հետ նրա միասնության հարցերը։

Սերը հայրենիքի, իր ժողովրդի, նրա լեզվի, մշակույթի, ազգային առաջադեմ ավանդույթությունների նկատմամբ— հայրենասիրությունը, պատմական, սոցիալական երևույթ է, այն գոյավորվել է դեռևս հազարամյակներ առաջ։ Դարեր շարունակ հայրենասիրական գաղափարները հուզել են մարդկանց, նրանց մղել սխրանքների, պայքարի հանել հանուն հայրենիքի ազատության ու բարգավաճման։

Մարդկային միտքը շարունակ փորձել է պատասխանել այն հարցին, թե ի՞նչ է հայրենասիրությունը։ Սակայն մինչմարքսյան նույնիսկ ամենաառաջադեմ մտածողները չկարողացան մինչև վերջ գիտականորեն բացահայտել ու հիմնավորել հայրենասիրության սոցիալ-պատմական ակունքներն ու դասակարգային էությունը։ Կ. Մարքսի ու Ֆ. Էնգելսի կողմից պատմության մատերիալիստական ըմբռնման օրենքները բացահայտելուց հետո միայն հնարավոր դարձավ գիտական սպառիչ պատասխան տալ այդ հարցին։ Հետագայում հայ-

րենասիրության մարքսիստական դրույթները համակողմանի զարգացրեց
Վ. Ի. Լենինը:
Հայտնի է, որ մինչև սոցիալիստական հեղափոխության հաղթանակը
հայրենասիրությունը, Վ. Ի. Լենինի բնութագրմամբ, եղել է՝ «...առանձնաց-
ված հայրենիքների՝ դարերով ու հազարավոր տարիներով ամրակայված
ամենախոր զգացմունքներից մեկը» (հատ. 28, էջ 227—228): Հայրենասիրու-
թյունը սնող ու կենսահաստատ դարձնող օբյեկտիվ միջավայրը հայրենիքն է,
որը ոչ միայն հայրենի երկիրն է, ոչ միայն ազգն է՝ տնտեսական ու կուլտու-
րական կյանքի ընդհանրությամբ, այն, միաժամանակ, բազմաբովանդակ հա-
սարակական ամբողջություն է: Հայրենիքը, գրել է Վ. Ի. Լենինը, դա տվյալ
քաղաքական, կուլտուրական, սոցիալական միջավայրն է (տե՛ս հ. 15, էջ 232):
Հայրենիքի այս երեք հիմնական հատկանիշների վրա խարսխվող հայրենասի-
րական զգացմունքն է օժտվում սոցիալական լայն բովանդակությամբ, դառ-
նում հիրավի իրական, կոնկրետ: Այսպիսի հայրենասիրությունը ենթադրում
է առաջադեմ գաղափարներով և բարոյական վեհ սկզբունքներով տոգորված
հայրենասիրական զգացմունքների և հայրենիքը փառաբանող, հզորացնող
ու զարգացնող կոնկրետ գործերի ներդաշնակ միասնություն:

Բուրժուական գաղափարախոսները հայրենիք հասկացողությունը սովո-
րաբար շաղկապում են ազգային հարցի իրենց թյուր, ռասայական, հոգեբա-
նական, շովինիստական, նացիոնալիստական ըմբռնումների հետ, ըմբռնում-
ներ, որոնց միտումն ու ելակետը կեղեքող դասակարգերի նյութական բիրտ
շահերի ջատագովությունն է: Նրանք հաճախ (երբ այդ պահանջում է սեփա-
կան դասակարգի շահերը) անտեսում են հայրենիք հասկացողության փոխկա-
պակցված բոլոր տարրերի կարևորությունը: Այդպես են վարվում նաև պարո-
նայք դաշնակցականները, որոնք շարունակում են բարբաջել, թե «Մեր հայրե-
նասիրությունը չի բխիր սոցիալ-տնտեսական և քաղաքական կարգերեն, այլ
կբխի հայ մարդու մեր ոգեկան ակունքեն» («Հայրենիք», 19 հոկտեմբերի,
1969 թ.): Դաշնակցականները քարոզում են, այսպես կոչված, վերացական,
«հոգեկան» հայրենիքի նացիոնալիստական գաղափարը, որպեսզի այդ փաստե
րով պայքարեն հայ ժողովրդի իսկական, սովետական հայրենիքի ու նրա
մարքս-լենինյան գաղափարախոսության դեմ: Սակայն մենք լավ գիտենք, որ
արշինի այս երկրպագուները երեկ էր ինչ բնաջնջում էին այն բոլոր հայերին,
ովքեր հայրենիքի իրական ազատագրման համար ոտքի ելան 1920 թ. մայիս-
յան օրերին, ովքեր կյանքի գնով կռվում էին Ղամարլուի շրջանում վայ-
րագ ավանտյուրիստների դեմ, ովքեր իրենց արյամբ ներկեցին Տաթևի անդըն-
դախոր ձորը՝ հանուն իրական հայրենիքի հավերժության: Մենք չենք մոռա-
ցել, որ դաշնակ «ոգեկանները» իրենց հոգեվարքի պահին նենգամտաբար
գրում էին, թե «Մեր թշնամին տաճիկը չէ, այլ ռուսը» և նրանից հետո քեմա-
լականների գիրկը նետվեցին ուժասպառ մարմինները փրկելու հույսով:

Հասարակության զարգացման տարբեր ժամանակաշրջաններում փոխվում
է հայրենիքի ու հայրենասիրության սոցիալական բովանդակությունը և հեղա-
փոխական վերափոխումների հետևանքով հասարակական մեկ ֆորմացիայից
մյուսին անցնելիս ստանում նոր որակ: Ավելին, դա փոփոխվում է նաև նույն
հասարակարգի զարգացման որոշակի փուլերում: Ինչպես նշել է Վ. Ի. Լենինը
«Հայրենիք հասկացողությունը պատմական է: Այլ բան է հայրենիքը ազգային
ճնշումը տապալելու համար մղվող պայքարի դարաշրջանում կամ ավելի



տույց՝ մոմենտում: Այլ բան է այն մոմենտին, երբ ազգային շարժումները
վաղուց դադարել են» (հատ. 35, էջ 255—266):
Այսպիսով, հայրենիքի ու հայրենասիրության էությունը տարբեր հասա-
րակարգերում (ստրկատիրական, ֆեոդալական, բուրժուական) նույնը չէ: Իսկ
պրոլետարական հեղափոխության հաղթանակով առաջանում ու զարգանում է
նոր, սոցիալիստական հայրենիքն իրեն հատուկ հայրենասիրությամբ:

Անտագոնիստական հասարակարգերում հայրենասիրության բովանդակու-
թյունը շեշտված դասակարգային է, որովհետև յուրաքանչյուր դասակարգ հայ-
րենիքի նկատմամբ իր վերաբերմունքն արտահայտում է սեփական շահերից
ելնելով: Ուրեմն հայրենասիրությունն ունի դասակարգային բնույթ. չկա ինչ-որ
չեզոք, վերացական կամ արտադասակարգային հայրենասիրություն: Ուստի,
առանց դասակարգերի ու դասակարգային պայքարի մարքս-լենինյան տեսու-
թյան խոր ըմբռնման անհնար է գիտականորեն բացատրել ու հասկանալ հայ-
րենիք և հայրենասիրություն հասկացողությունները:

Միաժամանակ, պետք է ընդգծել, որ հայրենասիրությունն այնպիսի գա-
ղափար ու զգացում է, որտեղ առավել նկատելի են տարբեր դասակարգերի ու
հասարակական խմբերի միջև առկա շփման կետերը: Եվ դա հասկանալի է,
քանի որ հայրենասիրությունը տոգորված է այնպիսի զգացմունքներով (սերը
հայրենի բնության, ծննդավայրի, մայրենի լեզվի, մշակութային արժեքների,
էթնիկական կապերի նկատմամբ), որոնք թեև տարբեր հասարակարգերում
որոշակի փոփոխություններ են կրում, սակայն որոնք մեկ հասարակարգի կամ
մեկ դասակարգի գործունեության արգասիք չեն: Այնուհետև, նույն ժողովրդի,
ազգի շրջանակներում գործող հակամարտ դասակարգերը բաղկացած են տվյալ
ազգի անդամներից, որոնք ունեն ազգային յուրահատուկ և ընդհանուր գծեր:
Թեև անտագոնիստական հասարակարգերում դասակարգային պայքարը ազ-
գային զարգացման հիմնական շարժիչ ուժն է, բայց և այնպես չի կարելի
ազգն ու դասակարգը հակադրել միմյանց, կամ ազգայինը հանգեցնել դասա-
կարգայինին:

Ուշագրավ է, որ սկզբնական շրջանում մարդու գիտակցության մեջ հայ-
րենիքը պատկերվում է ոչ թե իբրև ամբողջ երկիր, նրա հասարակական ու քա-
ղաքական կարգ, ամբողջ ժողովուրդ, այլ, հիմնականում՝ հարազատ ծննդա-
վայր, մանուկ հասակից ծանոթ շրջապատ՝ հայրենի լեռներն ու դաշտերը,
լճերն ու գետակները և այլն: Իբրև կանոն հայրենասիրական զգացմունքները
նախապես ձևավորվում են այդ միջավայրում: Սկզբում ձևավորվում է հայ-
րենասիրության էմոցիոնալ-հոգեբանական կողմը: Սակայն հայրենասիրու-
թյունը չի կարող սահմանափակվել միայն դրանով, միայն նախնական բըն-
օրրանի, արենակցական ու հոգեկան կապերով: Մինչդեռ, սոցիալական կոնկ-
րետ բովանդակությունից, գաղափարական կայուն համոզմունքներից, ինտեր-
նացիոնալ ու համամարդկային զգացմունքներից զուրկ հայրենասիրությունը
հեռու է լիարյուն լինելուց: Սոսկ զգացմունքներով տոգորված գաղափարա-
զուրկ հայրենասերն իրականում տառապում է ազգային սահմանափակությամբ
ու սնապարծությամբ և դյուրությամբ գլորվում նացիոնալիզմի ճահիճը: Եվ
պատահական չէ, որ շահագործող դասակարգերի ջատագովները և, հատկապես
բուրժուա-նացիոնալիստական գաղափարախոսները, խաղալով մարդկանց ազ-
գային զգացմունքների հետ, ճարպկորեն չարաշահում են հայրենասիրության
էմոցիոնալ-հոգեբանական հակումը, մարդկանց ներարկելով ազգային ատե-

լուծյուն։

Անտագոնիստական հասարակարգերում հայրենասիրության դասակարգային բնույթը ցայտուն դրսևորվում է տիրող վերնախավի և աշխատավորական լայն զանգվածների հակասական, ներհակ շահերի բախմամբ։

Քանի որ բանվոր դասակարգն է այն միակ սոցիալական հսկան, որը կարող է բուրժուազիային տապալելու միջոցով ազգի ղեկավարը դառնալ, ապա և բնական է, որ միայն նա կարող է ազատագրել թե՛ իրեն և թե՛ կեղեքվող ազգերին, որոնց հոծ մեծամասնությունը աշխատավորությունն է։ Սա է պատմության օրինաչափությունը, որը բացահայտված է մարքսիզմի կողմից և աքանչելիորեն կենսագործված մեծ Հոկտեմբերի հաղթությամբ։

Բուրժուական սեփականության ջատագովները շարունակ ճգնում են ապացուցել, թե աշխատավորների պայքարն ընդդեմ շահագործողական կարգերի, հակահայրենասիրական է։ Հայրենիքը շենացնող, առաջադիմական կուլտուրայի ու արվեստի մնայուն արժեքներ ստեղծող, հարկ եղած դեպքում նրա ազատության ու անկախության համար մարտնչող աշխատավոր մարդուն շահագործողները նշավակում են հայրենադավ, երբ սա փորձում է ստեղծել ամեն կեղեքումից զերծ կարգեր։ Աշխատավորները՝ երկրի նյութական ու հոգևոր բոլոր հարստությունների ստեղծողները, բոլորից խոր ու անկեղծ են սիրում իրենց հայրենիքը, որի ազատ և բուռն զարգացման ու ծաղկման համար իրենց կյանքն են զոհում։

Հայրենասիրության դասակարգային բնույթն առավել ակնբախ դրսևորվեց կապիտալիզմի օրոք, երբ հասարակությունը բաժանվեց երկու հիմնական դասակարգերի՝ բուրժուազիայի և պրոլետարիատի, որոնց գաղափարներն արմատապես ներհակ են նաև հայրենասիրության ոլորտներում։

Բուրժուական հեղափոխությունների դարաշրջանում, երբ խորտակվում էին ֆեոդալական կարգերը՝ իրենց տեղը զիջելով ավելի պրոգրեսիվ հասարակարգին, բուրժուազիան հեղափոխության ղեկավար ուժն էր։ Ազգի հայրենասիրական ուժերի միավորողն ու ղեկավարը նա էր։ Սակայն, երբ աստիճանաբար ուժեղացավ բուրժուական հասարակության հիմնական դասակարգերի հակամարտությունը, ողջ մերկությամբ երևան եկան բուրժուական հայրենասիրության կեղծությունը, շահագործողների «հայրենասիրական» լոզունգների անամեչությունը։ Հիրավի, այն բուրժուազիան, որը 1789 թվականին (ֆրանսիական հեղափոխության ժամանակ) արտաքին ռեակցիայի դեմ համախմբեց երկրի հայրենասիրական բոլոր ուժերին, ապա նույն այդ բուրժուազիան, նույն պրուսական ռեակցիոն ուժերի օգնությամբ արյան մեջ խեղդեց Փարիզի կոմունայի հերոսներին՝ հայրենիքի լավագույն ապագայի համար մաքառող անձնուրաց հայրենասերներին։ Ինչո՞ւ։ Որովհետև արդեն խորապես հակամարտ էին բուրժուազիայի ու պրոլետարիատի շահերը։ Ֆրանսիայի բանվորը ձեռք էր բարձրացրել շահագործման հիմքի՝ մասնավոր սեփականության դեմ։ «Կոմունան, ասել է Վ. Ի. Լենինը,— ցրեց հայրենասիրական պատրանքները և խորտակեց միամիտ հավատը բուրժուազիայի համազգային ձգտումների նկատմամբ» (հատ. 13, էջ 614—615)։

Պրոլետարական հեղափոխության այդ առաջին ելույթը ցույց տվեց, որ ազգի կենսական շահերի միակ պաշտպանը, իրոք հայրենասիրական միակ ուժը պրոլետարիատն է։ Կապիտալիստը, Լենինի արտահայտությամբ, շահույթը և աշխատավորների դեմ կապիտալիստների դաշինքի պահպանումը վեր



է դասում հայրենիքի, ժողովրդի շահերից (տե՛ս հատ. 27, էջ 248)։ Եվ դա բնական է. դառնալով տիրապետող դասակարգ, բուրժուազիան դադարում է մտահոգվել համազգային շահերով, նրան հետաքրքրում են արդեն հարստահարման շահերը, և նա ապավինում է նացիոնալիզմին ու շովինիզմին։ Ահա թե ինչու շահագործողների «հայրենասիրությունը» էգոիստական է, որի պատճառով նրանք հաճախ դավաճանում են հայրենիքին, ոտնահարում աշխատավորների ամենակենսական շահերը։ Ժողովրդի, հայրենիքի սիրո մասին նրանց սին խոսքերը հօդս են ցնդում, երբ վտանգ է սպառնում մասնավոր սեփականությանը։ Այդ պահին նրանք մտահոգվում են միայն իրենց հարստության պահպանմամբ։ Մարքս-լենինյան այս թեզի ճշտությունն ապացուցված է բոլոր ժողովուրդների, ինչպես և հայ ժողովրդի պատմության բազմաթիվ իրողություններով։

Հայտնի է, որ 1871—1914 թթ. ժամանակաշրջանում (իմպերիալիզմի փուլը թևակոխած երկրներում) բուրժուազիան դարձավ ռեակցիոն, իսպառ վերացան հայրենասիրական տարրերը մոնոպոլիստական բուրժուազիայի ոլորտներից։ Այդ են վկայում վերջին հարյուրամյակում բուրժուազիայի հակաժողովրդական, հակահայրենասիրական քաղաքականության հոռի արդյունքները, մարդկության հանդեպ իմպերիալիզմի արյունոտ ոճրագործությունների բազում փաստերը։

Իսկական հայրենասեր կարող է լինել միայն այն դասակարգը, որն ունի ապագա, զինված է առաջավոր գաղափարներով, օժտված է հասարակության զարգացման պրոգրեսիվ նկրտումներով։ Հիրավի, բուրժուական հասարակարգում գոյավորված այդ հզոր ուժը՝ բանվոր դասակարգը, կոչված է իրականացնելու համաշխարհային պատմական մեծ միսիա՝ մարդկությանը ձերբազատելու շահագործումից, կառուցելու ամենաարդար հասարակարգը՝ կոմունիզմը։

Հայրենասիրության մարքս-լենինյան դրույթները տասնամյակներ շարունակ կատաղի «հերքել» են բուրժուազիայի գաղափարախոսները։ Բանվոր դասակարգի «հակահայրենասիրությունն» ապացուցելու համար նրանք վկայակոչում են Կոմունիստական կուսակցության մանիֆեստի հայտնի ֆրազը՝ բանվորները հայրենիք չունեն։ Այս թեզը հատկապես հաճույքով են օգտագործում կապիտալիզմի արդի պաշտպանները։ Աշխատավոր զանգվածներին բուրժուական նացիոնալիզմի թույնով վարակելու միտումով նրանք խեղաթյուրում են Մարքսի և Էնգելսի այդ միտքը, որպեսզի «ապացուցեն», թե իբր կոմունիստական կուսակցություններն ու կոմունիստները հակահայրենասիրական ուժեր են, հայրենիքի թշնամիներ։ Բուրժուական գաղափարախոսների այս «հայտնագործման» էությունը ժամանակին մերկացրել է Վ. Ի. Լենինը։

Ինչպես հայտնի է, առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին II ինտերնացիոնալի պարագլուխների մեծամասնությունը կապիտալիզմի պայմաններում բանվոր դասակարգի հայրենասիրության, հայրենիքի պաշտպանության հարցերի վերաբերյալ ուներ հակամարքսիստական տեսակետ։ Հանդես գալով միջազգային սոցիալիստական շարժման մեջ այդ ժամանակ առկա հակամարքսիստական երկու հոսանքների դեմ, Վ. Ի. Լենինը պաշտպանեց ու զարգացրեց մարքսիզմը, բանվոր դասակարգին ու նրա հեղափոխական ավանգարդին զինեց ճիշտ կողմնորոշմամբ՝ վիճելի ու հրատապ հարցերի բնագավառում։ Շտուտգարդի միջազգային սոցիալիստական կոնգրեսը, Մարտընչող միլիտարիզմը և սոցիալ-դեմոկրատիայի հակամիլիտարիստական

տակտիկան հոդվածներում, Վ. Ի. Լենինը սուր քննադատեց գերմանական սոցիալ-դեմոկրատ Ֆոլմարին և նրա համախոհներին, որոնք պնդում էին, թե քանի պատերազմները կապիտալիզմի անհրաժեշտ ընթացակիցներն են, ապա հակամիլիտարիստական գործունեություն չպետք է ծավալել, իսկ պատերազմի դեպքում սոցիալ-դեմոկրատները պետք է պաշտպանեն իրենց հայրենիքը (տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 15, էջ 231)։ Հայրենիքի պաշտպանությունը, ասում էին նրանք, անհրաժեշտ է, որովհետև Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի այն դրույթը, թե բանվորները կապիտալիզմի ժամանակ չունեն հայրենիք (անշուշտ մինչև վերջ չհասկանալով այդ թեզի իմաստը), դարի վերջում կորցրել է իր նշանակությունը, քանի որ պրոլետարիատը, իբր, արդեն ձեռք է բերել քաղաքական իրավունքներ, որպիսիք նա չուներ առաջներում։

Քննադատելով մյուս հոսանքի ներկայացուցիչներին՝ անարխո-սինդիկալիստներին (Էրվեին ու նրա կողմնակիցների փոքրաթիվ խմբին), Վ. Ի. Լենինը գրել է, քանի որ, նրանց կարծիքով, պրոլետարները հայրենիք չունեն, ուրեմն բոլոր և ամեն տեսակի պատերազմները կապիտալիստների շահերի համար են, նշանակում է՝ պրոլետարիատը պետք է կռվի ամեն մի պատերազմի դեմ, դրանց պատասխանի ռազմական գործադուլով և ապստամբությամբ (տե՛ս նույն տեղը, էջ 231)։ Էրվեիստների տեսակետով, կապիտալիզմի օրոք բացարձակապես միևնույն է, թե պրոլետարիատը որ երկրում է ապրում՝ հանրապետությո՞ւնում, թե՞ միապետությունում, որովհետև նա, իբր, ոչ մի տեղ և ոչ մի դեպքում հայրենիք չունի։

Վ. Ի. Լենինն այս երկու հոսանքները բնութագրեց որպես «երկու հիվանդություններ, որոնք դեռ շարունակում են վնասել Արևմուտքի սոցիալիստական պրոլետարիատի գործունեությանը— մի կողմից՝ օպորտունիստական տենդենցները, և մյուս կողմից՝ անարխիստական ֆրազաբանությունը» (Նույն տեղը, էջ 232)։

Այնուհետև Վ. Ի. Լենինը խորությամբ պարզաբանեց, թե ինչպես պետք է հասկանալ «Մանիֆեստի» վերոհիշյալ թեզը։ ««Որ պրոլետարները հայրենիք չունեն», այդ իսկապես ասված է «Կոմունիստական մանիֆեստում»... Սակայն,— գրում է Լենինը,— այստեղից դեռևս չի հետևում, որ ճիշտ է Էրվեի և էրվեիստների այն պնդումը, թե պրոլետարիատի համար միևնույն է՝ որ հայրենիքում է նա ապրում,— միապետական Գերմանիայո՞ւմ է ապրում նա, թե՞ հանրապետական Ֆրանսիայում, կամ բռնապետական Թուրքիայում։ Հայրենիքը... ամենահզոր գործոնն է պրոլետարիատի դասակարգային կռվում... Պրոլետարիատը չի կարող անտարբեր ու սառնասիրտ կերպով վերաբերվել իր պայքարի քաղաքական, սոցիալական ու կուլտուրական պայմաններին, հետևապես, նա չի կարող անտարբեր վերաբերվել նաև դեպի իր ճակատագիրը» (հատ. 15, էջ 232)։

Այստեղ հստակ բացահայտված է «Մանիֆեստի» դրույթի էությունը։ Պարզ է, որ գիտական կոմունիզմի հիմնադիրները նկատի ունեին լոկ այն հայրենիքը, որը կամենում է հավերժացնել բուրժուազիան։ Նրանք արտացոլել են բանվորների վերաբերմունքը բուրժուական այն հայրենիքի նկատմամբ, որը աշխատավորների տնտեսական, քաղաքական և հոգևոր ճնշման աղբյուրն է։ Անշուշտ, բանվոր դասակարգը չի կարող հաշտվել հայրենիքի նման վիճակի հետ։ Ահա թե ինչու Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսն ասում էին, որ պրոլետարիատը պետք է ամենից առաջ նվաճի քաղաքական իշխանությունը, բարձրանա-



հասնի ազգի առաջատար դասակարգի դրությանը։ Այսպիսով, այդ դրույթը բնավ չի նշանակում, թե բանվորները կապիտալիստական հասարակարգում ընդհանրապես հայրենիք չունեն, որ նրանց չի մտահոգում ազգի ու երկրի ճակատագիրը, որ նրանք հրաժարվում են այն ամեն լավագույնից, ինչ հայրենիքում ստեղծվել է դարերի ընթացքում։ Պրոլետարիատը չի կարող լինել ապազգային ուժ, նա ձևավորվում ու զարգանում է ազգային հողի վրա, սոցիալական միջավայրի որոշակի պայմաններում։ Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը, առաջադրելով այդ թեզը, կամենում էին ընդգծել, որ բուրժուազիայի և պրոլետարիատի շահերը տրամագծորեն հակառակ են, և հայրենիքի, ժողովրդի, ազգի շահերից ելնելով պետք է հեղափոխական ճանապարհով հայրենիքը նվաճել բուրժուազիայից։ Իսկ դրա համար անհրաժեշտ է տապալել շահագործողների տիրապետությունը, որոնք դավաճանում են ազգի ու հայրենիքի կենսական շահերին, հաստատել պրոլետարիատի դիկտատուրա, կառուցել սոցիալիզմ։ Աշխատավորների ազատ հայրենիքը դրանով իսկ լայն ճանապարհ կհարթի իրական հայրենասիրության համակողմանի ծաղկման համար։

Մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրների հեղափոխական մեծ ծառայությունն այն է, որ նրանք բանվոր դասակարգի սոցիալիստական ինտերնացիոնալիզմով տոգորեցին աշխատավոր լայն զանգվածների հայրենասիրությունը։ Ինեսա Արմանդին գրած նամակներից մեկում Վ. Ի. Լենինը գրել է. «Բանվորը հայրենիք չունի»— նշանակում է, որ նրա տնտեսական դրությունը (վարձու աշխատանքի սիստեմը) ազգային չէ, այլ ինտերնացիոնալ է. նրա դասակարգային թշնամին ինտերնացիոնալ է. նրա ազատագրության պայմանները նույնպես. բանվորների ինտերնացիոնալ միասնությունն ավելի կարևոր է, քան ազգայինը (տե՛ս հ. 35, էջ 261)։

Ընդգծելով բանվոր դասակարգի հեղափոխական պայքարի պրոցեսում ինտերնացիոնալ միասնության կարևորությունը, Վ. Ի. Լենինն այն երբեք չէր հակադրում ազգայինին, քանի որ հասարակական կյանքում դրանք փոխկապակցված են և լրացնում են միմյանց։ Դասակարգային ընդհանուր թշնամու դեմ հաղթանակի հասնելու համար, սովորեցնում էր Լենինը, անհրաժեշտ է ինտերնացիոնալ կուռ միասնություն ստեղծել բանվոր դասակարգի ազգային բոլոր ջոկատների միջև։

Հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի միասնության պրոբլեմն առաջինը քննարկեցին Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը Կոմունիստական կուսակցության մանիֆեստում։ Հետագայում նրանք բազմիցս անդրադարձել են այդ հարցին։

Պատմական նոր ժամանակաշրջանում պրոլետարական ինտերնացիոնալիզմի և հայրենասիրության միասնության մարքսիստական գաղափարները հարստացրեց ու զարգացրեց Վ. Ի. Լենինը։

Վելիկոռուսների ազգային հպարտության մասին հոդվածում Վ. Ի. Լենինն ավելի խորացրեց ու կոնկրետացրեց հայրենասիրության ու ինտերնացիոնալիզմի միասնության դրույթները, բացահայտեց պրոլետարական հայրենասիրության ակունքները։ Հայրենասիրությունը գնահատելիս մեծ առաջնորդը ելնում էր պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներից։ Պատշաճը մատուցելով հայրենիքի ազատության և առաջընթացի համար մարտնչած առաջադեմ գործիչներին, նա, միաժամանակ ատում էր իր ժողովրդի ստրկական անցյալը, դեմոկրատական շարժումները ճնշող կալվածատերերին ու ազնվա-

կաններին, նշավակում ցարիզմի թալանչիական պատերազմները, որոնք նսեմացնում էին ռուս մարդու ազգային արժանապատվությունը։

Մեծ հայրենասեր ու ինտերնացիոնալիստ Լենինը հպարտանում էր, որ իր ազգը ևս ստեղծել է հեղափոխական դասակարգ, որն ունակ է խորտակելու հայրենիքը շղթայող ցարական ինքնակալությունը։ Նա հպարտանում էր, որ ռուս ժողովուրդը նույնպես ապացուցել է, որ ունակ է մարդկությանը ցույց տալու ազատության ու սոցիալիզմի համար մղվող պայքարի մեծ օրինակներ։ Նա հպարտությամբ էր կանխատեսում, որ համաշխարհային կապիտալի դեմ մղվող առաջիկա մարտերում կմեծանա վելիկոռուսական պրոլետարիատի սոցիալիստական դերը, այն կդառնա կոմունիստական հեղափոխության գլխավոր շարժիչ ուժը, որը համայն մարդկության համար առաջինը ուղի կհարթի դեպի սոցիալիզմ, կստեղծի աշխատավոր մարդու իսկական հայրենիքը։ Լենինյան այս կանխատեսումն իրականացավ մեծ Հոկտեմբերի հաղթանակով։

Այսպիսով, իսկական հայրենասերը ոչ միայն նա է, ով լոկ հպարտանում է անցյալի առաջադիմական մշակույթով, ազատագրական մարտերում նախնիների հերոսագործություններով, այլև նա, ով մտքով ու գործով սատար է լինում իր երկրի այսօրվա վերընթացի մեծ ու փոքր գործերին, ով ջանք չի խնայում ծաղկեցնելու ու գեղեցկացնելու, ամրապնդելու ու հզորացնելու իր հայրենիքը, բոլոր միջոցներով պայքարում է նրա առաջընթացի ու պայծառ գալիքի համար։

Այդպիսի վեհ հատկանիշներով է օժտված սովետական հայրենասիրությունը, որին հատուկ են՝ հայրենիքի նկատմամբ քաղաքացու դրսևորած իրական նվիրվածությունը, գաղափարական հավատարմությունը, հարգանքն ու բուռն համակրանքը եղբայրական սոցիալիստական ազգերի ու ժողովուրդների հանդեպ, կոմունիստական հումանիզմը, հպարտությունը ազգային պրոգրեսիվ ավանդույթների և այն տևական արժեքների համար, որոնք երբևէ հարստացրել են համամարդկային կուլտուրայի գանձարանը, հպարտություն կոմունիստական շինարարության մեր վիթխարի հասումների և պատմական այն անձնավորությունների անվեհեր մաքառումների համար, ովքեր, տարբեր ազգերի ազատագրության ճիգերը հաջողությամբ ձուլեցին ազգերի լենինյան եղբայրության հաղթանակած պատմական երթին։

Սոցիալիստական աշխարհի հոյակապ վերընթաց, կապիտալիստական սիստեմի խորացող փլուզում, դասակարգային մարտերի ծավալում և սաստկացում կապիտալի երկրներում, ազգային-ազատագրական կռիվների տևականություն. պատմական այս իրադարձություններից խելահեղ, բուրժուազիայի գաղափարական սպասավորները ջանք չեն խնայում կասեցնելու պատմության անիվը, մարքսիզմ-լենինիզմը վարկաբեկելու, ՍՍՀՄ նվաճումներն անտեսելու նպատակով։ Այդ միտումով էլ նրանք մեծ հույսեր են կապում նացիոնալիզմի հետ, որն իբր կարող է դիմակայել կոմունիզմին և կասեցնել կապիտալիզմի գահավիժումը։ «Տեսականորեն» հիմնավորելով ազգերի ի սկզբանե թշնամության խղճուկ քարոզը, նրանք պրոպագանդիստական վիթխարի ճիգեր են գործադրում ատելության թույնով վարակելու ազգերին ու ժողովուրդներին, որպեսզի խափանեն կոմունիզմի հմայքը։ Բուրժուական նացիոնալիզմն աղավաղված է արտացոլում հասարակական կյանքի զարգացման բոլոր երևույթները, վերջիններս մեկնաբանելով ազգային, ցեղային առանձնահատկություններով։ Դաշնակցության գրչակները ևս իրենց տերերի ծամոնը ծամելով



ճամարտակում են, թե Սովետական Հայաստանի հաջողությունները միայն հայ ցեղի հանճարի պտուղն են, թե «...հայն իր հրաշքով այսօր կապրի ու կուռճանա Հայաստանի մեջ» և ոչ թե սոցիալիզմի ընձեռած հնարավորությունների շնորհիվ («Ազդակ շաբաթօրյակ», 1970, № 5)։ Իսկ ինչպե՞ս կբացատրեն «Ազդակ շաբաթօրյակի» գրբացները սովետական բոլոր ազգերի վիթխարի նվաճումները։ Այս հարցին նրանք չեն պատասխանում։ Իսկ պատասխանը պարզ է ու գիտական։ ՍՍՀՄ բոլոր ազգերն ու ազգությունները, ինչպես և հայ ժողովուրդը, պատմական, հիրավի հոյակապ հրաշագործությունները ձեռք են բերել միայն սոցիալիզմի, մարքս-լենինյան կենսահաստատ տեսության, ինտերնացիոնալիզմի վեհ գաղափարների անշեղ կենսագործման, սովետական բոլոր ժողովուրդների և, առաջին հերթին ռուս ժողովրդի եղբայրական փոխադարձ օգնության, նրանց անխախտ բարեկամության շնորհիվ։

Բուրժուական նացիոնալիզմը լինելով շահագործողների դասակարգային զենքը, հարուցում է այնպիսի պատրանք, թե ազգի ներսում չկան դասակարգային բախումներ, թե այնտեղ տիրում է «դասակարգային հաշտության» մըթնոլորտ։ Բուրժուական նացիոնալիստները, դրանով իսկ, ցանկանում են ազգը ներկայացնել որպես մի ամբողջական սոցիալական միասնություն։ Ահա գաղափարական այս խարխուլ սկզբունքների վրա բուրժուազիան կամենում է ազգի ներսում հավերժացնել իր գերիշխանությունը, կատաղի պայքարում է պրոլետարական հայրենասիրության ու ինտերնացիոնալիզմի մարքս-լենինյան գաղափարների դեմ։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի հակառակորդները, չարաշահելով, իսկ հաճախ նաև խաթարելով աշխատավոր մասսաների ազգային զգացմունքները, նացիոնալիզմը պատում են հայրենասիրության քողով, իրենց դասակարգային-շահամոլական, հակաժողովրդական գործունեությունը հրամցնում որպես հայրենասիրական։ Սակայն բուրժուական նացիոնալիզմը պրոլետարական հայրենասիրության թշնամին է, որովհետև ինտերնացիոնալիստական վեհ գաղափարներով տոգորված հայրենասիրությունը բացառում է ազգային թշնամանքը։ Արդարացի էր Ա. Ֆրանսը, երբ շեշտում էր, թե ով իսկապես չի սիրում մարդկությանը, նա բնավ չի սիրում իր հայրենիքը։ Իսկական հայրենասերը չի կարող ատել մյուս ժողովուրդներին, տառապել ազգային էգոիզմով, սնապարծությամբ ու մեծամտությամբ։ ՍՍՀՄ ժողովուրդների ավելի քան կեսդարյա փորձն ապացուցեց, որ այդպիսի հայրենասիրությամբ կարող են օժտված լինել այն աշխատավորները, ովքեր տոգորված են մարքսիզմ-լենինիզմի ինտերնացիոնալիստական վեհ իդեալներով։ Ժամանակին Ֆ. Էնգելսն է ասել, թե պրոլետարների մեծ մասն իր բնույթով ազատ է ազգային նախապաշարմունքներից, և նրա հոգևոր ողջ զարգացումն ըստ էության հումանիստական է և հականացիոնալիստական։ Միայն պրոլետարներն են ունակ ոչնչացնելու ազգային անջատվածությունը, միայն նրանք կարող են եղբայրություն հաստատել տարբեր ազգերի միջև (տե՛ս «Марксизм-ленинизм о пролетарском интернационализме» (Сборник), М., 1969, стр. 100)։

Հիրավի, ՍՍՀՄ և սոցիալիստական մյուս երկրների ժողովուրդների օրինակը, նրանց միջև հաստատված ինտերնացիոնալիստական սերտ կապերը, կայուն բարեկամությունն ու եղբայրությունը՝ այդ մարգարեական խոսքերի կենդանի մարմնավորումն ու ապացույցն են պրոլետարական ինտերնացիո-

նալիզմի ու հայրենասիրության մարքս-լենինյան գաղափարների փայլուն հաղթանակը։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությամբ գոյավորվեց համաժողովրդական, համասովետական հայրենասիրությունը, որն ինտերնացիոնալիստական է։ Փոխվեց հայրենիքի սոցիալական էությունը։ Վերածնվեց դարերով կեղեքված աշխատավոր մարդը։ Ստեղծվեց քաղաքական, կուլտուրական և սոցիալական այնպիսի միջավայր, որը համապատասխանում է բանվոր դասակարգի, աշխատավոր լայն զանգվածների բուն ակնկալություններին ու շահերին։ Սոցիալիզմի հաղթանակով վերացավ հին, նացիոնալիզմով պատված հայրենասիրության գաղափարական ու քաղաքական հիմքը, հաղթանակեց պրոլետարիատի գաղափարախոսությունը։ Սովետական հայրենասիրության հիմքը դարձավ սոցիալիստական իրականությունը, գաղափարայինը՝ մարքսիզմ-լենինիզմը, քաղաքականը՝ սովետական համաժողովրդական պետական կարգը։

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, երբ առաջացավ սոցիալիզմի լագերը, ընդլայնվեց այդ սիստեմի մեջ մտնող աշխատավորների հայրենիքը, իր բովանդակությամբ ավելի քան հարստացավ սովետական հայրենասիրությունը, որն արտահայտվում է ոչ միայն մեր հայրենիքի, այլև սոցիալիզմի բոլոր երկրների նկատմամբ տածած սիրով ու հավատարմությամբ։

Հայրենասիրության ու ինտերնացիոնալիզմի մարքս-լենինյան գաղափարների հետագա զարգացումն արտացոլվեց ՍՄԿԿ տեսական ու պրակտիկ վիթխարի գործունեության մեջ, կուսակցության համագումարների, ՍՄԿԿ Կենտկոմի որոշումներում, կոմունիստական ու բանվորական կուսակցությունների համատեղ մշակած փաստաթղթերում։ Այս հարցերը խորությամբ լուսաբանվեցին ՍՄԿԿ XXIV համագումարի պատմական նյութերում, ՍՍՀՄ 50-ամյակի առթիվ Լ. Ի. Բրեժնևի հիմնարար ու բովանդակալից զեկուցման մեջ։

Խոսելով սովետական հայրենասիրության մասին՝ Լ. Ի. Բրեժնևն ասել է. «Հայրենասիրությունը սքանչելի հատկություն է, որն ամենախորին հարգանք է ներշնչում...

Իրենց հանրապետության նկատմամբ հայրենասիրական բարձր ոգին հայերի, ինչպես որ սովետական մյուս բոլոր ժողովուրդների մեջ, զուգորդվում է առավել լայն առումով հայրենասիրական ոգու հետ՝ նվիրվածությամբ ու սիրով դեպի մեր ընդհանուր մեծ սոցիալիստական հայրենիքը՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը...

Լինելով հայրենասեր և միևնույն ժամանակ տոկուն, համոզված ինտերնացիոնալիստ՝ նշանակում է խորապես ըմբռնել սոցիալիստական աշխարհայացքը, սոցիալիստական կուլտուրան, նշանակում է հավատարիմ լինել լենինյան մեծ ուսմունքին» («Լենինյան կուրսով», հատ. 3, էջ 251)։

Այսօր, սովետական մարդիկ, կատարելով իրենց հայրենասիրական ու ինտերնացիոնալ պարտքը, հաջողությամբ կենսագործում են ՍՄԿԿ XXIV համագումարի ծրագիրը, որպեսզի մեր մեծ հայրենիքը դառնա ավելի բարգավաճ ու հզոր։ Սովետական ժողովուրդն իրավամբ հպարտանում է իր հոյակապ հայրենիքով, իր մարտական ղեկավարի՝ կոմունիստական կուսակցության մեծագործություններով, որը, լինելով հայրենասիրական ամենամեծ ուժը, գլխավորում է մեր բազմազգ երկրի բոլոր աշխատավորների հայրենասիրական սխրանքները։

# ՍՄԿԿ ՊԱՅՔԱՐՆ ԸՆԴԴԵՄ ՉԻՆԱԿԱՆ ՂԵԿԱՎԱՐՆԵՐԻ ՀԱԿԱՍՈՎԵՏԱԿԱՆ ԿՈՒՐՍԻ

Գ. Վ. ՄԱՄԻԿՈՆՅԱՆ

Լիովին գիտակցելով Չինաստանում կատարվող իրադարձությունների ողջ լրջությունը և հաշվի առնելով այն վնասը, որ համաշխարհային հեղափոխական շարժման միասնությանը հասցնում է ՉԿԿ այժմյան ղեկավարության գործունեությունը, ՍՄԿԿ-ն մարքսիստական-լենինյան մյուս կուսակցությունները վճռականորեն պայքարել և պայքարում են Մաո Ցզե-դունի ու նրա համախոհների պառակտիչ, մեծապետական քաղաքականության դեմ։

Այդ պայքարը մղվում է միջազգային կոմունիստական և բանվորական շարժման հետագա զարգացման ու ամրապնդման, ինչպես և այժմեականության հեղափոխական ողջ ուժերի համախմբման նպատակով։ Այն լիովին համապատասխանում է չինական կոմունիստների և չին ժողովրդի արմատական շահերին, որոնք ի դեմս ՍՍՀՄ և սոցիալիստական մյուս երկրների ժողովուրդների ունեցել են և ունեն իսկական բարեկամներ։

Չինաստանում ծավալված վերջին տարիների իրադարձությունները վկայում են, որ միջազգային հարաբերությունների ոլորտում մաոականների վարած քաղաքական կուրսը հիմնվում է մանրբուրժուական ավանտյուրիզմի և մեծապետական շովինիզմի վրա։ Ինչպես հայտնի է, 50-ական թվականների վերջերին, Մաո Ցզե-դունին ու նրա կողմնակիցներին հաջողվեց տնտեսական քաղաքականության ոլորտում ևս ՉԿԿ վզին փաթաթել իրենց արատավոր սկզբունքները։

Չինաստանի տնտեսական զարգացման խիստ բարդ պրոբլեմները ՉԿԿ լիդերները փորձում էին լուծել «հեծելակային ոստյունների» մեթոդներով, ընդ որում, ցույց տալով իրենց ողջ քամահրանքը տնտեսական օբյեկտիվ օրենքների հանդեպ։ 1958 թ. ազդարարվեց «մեծ թռիչքի» և «ժողովրդական կոմունաների» կուրս, որի նպատակն էր՝ «ցատկել» սոցիալիզմի զարգացման էտապի վրայով և անմիջաբար թևակոխել կոմունիզմի փուլը։ Մաոականների տնտեսական ու քաղաքական կործանաբեր կուրսի հետևանքով, որոշ հաշվումների համաձայն, Չինաստանի տնտեսական զարգացումը կասեցվեց մոտ ութ-տասը տարով։ «Մեծ թռիչքը» իրականում տարերային աղետ էր, միայն այն տարբերությամբ, որ այն մարդն էր ստեղծել։

«Մեծ թռիչքի» փլուզումից շատ չանցած Չինաստանի քաղաքներում ու գյուղերում, ֆաբրիկաներում ու գործարաններում, հիմնարկություններում և ուսումնական հաստատություններում մոլեգնեց ոչ-պակաս դաժան մի աղետ՝ «կուլտուրական հեղափոխությունը»։

Այդ հեղափոխության ընթացքում Մաոյի խումբը ջանում էր վերականգնել իր կատարյալ տիրապետությունը երկրի պետական ու հասարակական կյանքի բոլոր բնագավառներում, ընդ որում, հիմնական հարվածը հասցնելով կոմունիստական կուսակցությանը։

Իրադարձությունների նման զարգացումը ուրախացրեց կոմունիզմի հակառակորդներին։ «Նյու-Յորք թայմս» ամերիկյան ազդեցիկ թերթը գոհունակությամբ նկատեց. «Յուրաքանչյուր ամիս... պարզ է դառնում, որ Մաո Ցզե-դունը փորձում է ոչնչացնել կոմունիստական Չինաստանի գոյության առաջին 15 տարիների իշխանության ողջ նախկին կառուցվածքը՝ կոմունիստական կուսակցությունը, կոմերիտմիությունը և... արհմիությունները»։

Հանրահայտ են «կուլտուրական հեղափոխության բացասական հետևանքները։ «Կուլտուրական հեղափոխության» ժամանակ քայքայվեց ՉԺՀ՝ որպես բանվոր դասակարգի կողմից ղեկավարվող պետության, քաղաքական սիստեմը։ Դադարեցին գործել ժողովրդական իշխանության օրգանները։ Չինաստանի կոմունիստական կուսակցությունը, իբրև մարքսիստական-լենինյան տիպի կուսակցություն, անդամալուծվեց՝ վերից վար։ Արհմիությունները, երիտասարդական կոմունիստական միությունը, հասարակական մյուս բոլոր կազմակերպությունները, ընդհուպ մինչև պիոներականը, ցրվեցին։ Երկրի հասարակական-քաղաքական, տնտեսական և կուլտուրական կյանքի բոլոր բնագավառները ընկան բանակի վերահսկողության տակ։ Ի վերջո, տեղի ունեցավ այն, ինչը Լենինն անվանում էր՝ իշխանության տեղաշարժ, բանվոր դասակարգը հեռացվեց իշխանության իրական լծակներից և վերացավ նրա կուսակցության ղեկավարող դերը։ Չինաստանում ստեղծվեց ռազմա-բյուրոկրատական դիկտատուրա։ Պրոլետարիատի գաղափարախոսության՝ մարքսիզմ-լենինիզմի դերը հասարակության մեջ, ըստ էության, նըսեմացվեց, իսկ դրա փոխարեն տեղ գտան «Մաո Ցզե-դունի գաղափարները»։

Մաոական ղեկավարության քաղաքական կուրսը ներառնում է «մանրբուրժուական հեղափոխականության», ռազմատենչ նացիոնալիզմի և մեծապետական շովինիզմի, հակասովետիզմի և քաղաքական ավանտյուրիզմի ամենավատ հատկությունները։ Ուստի, զարմանալի չէ, որ Մաոյի խմբի տեսական ծրագիրը և պրակտիկ գործունեությունը ծայրահեղ անսկզբունքային են։

Լենինը նկատել է, որ քաղաքականության մեջ ավանտյուրիզմը սկզբունքների բացակայության հետևանք է։ Մերկացնելով էսեռներին, Լենինը գրում էր, որ նրանց ավանտյուրիզմը բխում է անսկզբունքայնությունից։ Լենինյան այս գնահատականը վերաբերում է նաև այսօրվա չինական ղեկավարներին։ Մաո Ցզե-դունի և նրա խմբի քաղաքական ուղու էվոլյուցիան ակնառու ցույց է տալիս, թե ինչի է հանգեցնում հրաժարումը մարքսիզմ-լենինիզմի, գիտական սոցիալիզմի սկզբունքներից։

ՍՄԿԿ և եղբայրական մյուս կուսակցությունները վճռաբար հանդես եկան մարքսիզմ-լենինիզմի ուսմունքի խեղաթյուրման, սոցիալիստական համագործակցության, միջազգային կոմունիստական շարժման և հակաիմպերիալիստական ճակատում պառակտում մտցնելու մաոականների փորձերի դեմ։ Միաժամանակ, պահպանելով զսպվածությունը և տեղի չտալով պրովոկացիաներին, ՍՄԿԿ Կենտկոմը և սովետական կառավարությունն ամեն բան արին հարաբերությունները Չինաստանի հետ լավացնելու համար։ ՍՍՀՄ նախաձեռնության շնորհիվ, վերջին երկու և կես տարում Սովետական Միության և ՉԺՀ հարաբերություններում նկատվում են նորմալացման որոշ նշաններ։ Բայց, այնուհանդերձ, պրոպագանդայի և քաղաքականության ոլորտում չինական ղեկավարները շարունակում են իրենց հակասովետական ուղին։ Ընդսմին, ՉԿԿ IX համագումարն իր որոշումներում ամրապնդեց Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների հանդեպ թշնամական, հակամարքսիստական կուրսը։ Միջազգային ասպարեզում Պեկինի պրակտիկ գործունեությունը ակնբախ վկայում է, որ ՉԺՀ արտաքին քաղաքականությունը, փաստորեն, կտրվել է պրոլետարական ինտերնացիոնալիզմից, կորցրել իր դասակարգային սոցիալիստական էությունը։



Չինաստանում դեռ չէին դադարել «կուլտուրական հեղափոխության» ցընցումները, երբ մաոականների իշխող վերնախավում բռնկեց քաղաքական նոր ճգնաժամ։ Բավական է ասել, որ 1969 թ. IX համագումարում ընտրված ՉԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի 25 անդամների և անդամության թեկնածուների կեսից ավելին անհետացան քաղաքական ասպարեզից, քաղբյուրոյի մշտական կոմիտեի հինգ անդամներից (այսպես կոչված՝ «հնգյակից»), միայն երկուսն են մասնակցում քաղաքական կյանքին։

Մարքս-լենինյան կուսակցությունները, ըմբռնելով մաոական կուրսի վըտանգավոր հետևանքները, լուրջ ուշադրություն են նվիրում չինական պրոբլեմին։ Իրենց սկզբունքային տեսակետը նրանք արտահայտեցին 1969 թ. հունիսին Մոսկվայում կայացած կոմունիստական և բանվորական կուսակցությունների միջազգային խորհրդակցությունում։ Այդ առումով խորհրդակցությունը մարքսիստ-լենինյանների պայքարի կարևոր փուլ էր՝ հանուն հեղափոխական շարքերի միասնության, մարքսիստական-լենինյան ուսմունքի անաղարտության, ընդդեմ մաոականների հակալենինյան պառակտիչ գործունեության։

ՍՄԿԿ XXIV համագումարը, սովետա-չինական հարաբերությունների ոլորտում լիովին հավանություն տալով ՍՄԿԿ Կենտկոմի և սովետական կառավարության լենինյան սկզբունքային կուրսին և կոնկրետ քայլերին, ընդգծեց. «Այն պայմաններում, երբ չինական ղեկավարները հանդես են գալիս իրենց առանձնահատուկ, լենինիզմի հետ անհամատեղելի գաղափարա-քաղաքական պլատֆորմով, որի նպատակն է պայքարել սոցիալիստական երկրների դեմ, պառակտել միջազգային կոմունիստական և ամբողջ հակաիմպերիալիստական շարժումը, ՍՄԿԿ Կենտկոմը գրավեց միակ ճիշտ դիրքը՝ մարքսիզմ-լենինիզմի սկզբունքները հետևողականորեն պաշտպանելու, համաշխարհային կոմունիստական շարժման միասնությունը ըստ ամենայնի ամրապնդելու, սոցիալիստական հայրենիքի շահերը պաշտպանելու դիրքը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 252)։

Ահա արդեն տասնչորս տարի է, ինչ մաոականների մեղքով չեն նորմալացվում սովետա-չինական հարաբերությունները։ Խորացնելով և ուժգնացնելով հակասովետական կուրսը, Մաո Ձզե-դունը և նրա խումբը, միաժամանակ ցանկանում են մեղքն ուրիշի վրա գցել, որևէ «արդարացում» որոնել իրենց պառակտողական գործողությունների համար, խուսափել քայքայիչ գործողությունների հետևանքների պատասխանատվությունից։ Պեկինյան պրոպագանդան կանգ չի առնում ոչ մի բանի առաջ, ջանում է վարկաբեկել սովետական արտաքին քաղաքականությունը և ՍՄԿԿ կուրսը նաև այլ երկրների ժողովուրդների աչքում։ Ձգտելով արատավորել և մեկուսացնել Սովետական Միությանը, նրա քաղաքականության հանդեպ անվստահություն սերմանել, չինական ղեկավարները առասպելներ են մոգոնել «երկու գերհզոր տերությունների՝ ՍՍՀՄ և ԱՄՆ-ի հեգեմոնիայի մասին»։ Այդ «գերհզոր տերություններն», իբր, շահագործում են մյուս երկրներին, ձգտում բաժանել աշխարհը։ Ընդ որում, Պեկինին չի հետաքրքրում, որ այդ «երկու» տերություններից մեկը իմպերիալիստական է, մյուսը՝ սոցիալիստական։

Որքան էլ այժմ բարդ իրադրություն լինի Չինաստանում, ՉԿԿ վերածնունդը՝ որպես մարքս-լենինյան տիպի կուսակցություն, նրա միասնության վերականգնումը համաշխարհային կոմունիստական շարժման հետ, ՉԺՀ վերադարձը գիտական սոցիալիզմի ուղուն և ՍՍՀՄ բարեկամության վերահաստատումը, սոցիալիստական համագործակցության համախմբումը— չինական հասարակության օբյեկտիվ պահանջն է, մանավանդ որ Չինաստանում շարունակում են գոյատևել սոցիալիստական բազիսի տարրերը։ Ու թեև տնտեսության մեջ և սոցիալական կառուցվածքում պահպանվող սոցիալիստական տարրերը չեզոքացվում են ռազմա-բյուրոկրատական իշխանության կողմից, դեֆորմացվում հակասովետական քաղաքականության ներգործությամբ, հասարակության տնտեսական բազիսը դեռևս քանակական, արմատական լիովին փոփոխման չի ենթարկվել և կարող է Չինաստանի պոզիտիվ զարգացման նյութական բա-

դա ծառայել։

Կոմունիստական և բանվորական կուսակցությունների 1969 թ. միջազգային խորհրդակցությունում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Մենք չինական այժմյան ղեկավարության ելույթներն ու գործողությունները չենք նույնացնում Չինաստանի կոմունիստական կուսակցության, ամբողջ չին ժողովրդի ո՛չ իղձերի ու ձգտումների, ո՛չ էլ նրանց իսկական շահերի հետ։ Մենք խորապես համոզված ենք, որ Չինաստանի իսկական ազգային վերածնունդը կարող է ձեռք բերվել, նրա սոցիալիստական զարգացումը կարող է ապահովվել ոչ թե ՍՍՀՄ-ի և սոցիալիզմի այլ երկրների դեմ, ամբողջ կոմունիստական շարժման դեմ պայքարելու միջոցով, այլ նրանց հետ դաշինքի և եղբայրական համագործակցության միջոցով» (Լենինյան կուրսով, հ. 2, էջ 538)։

Յուրաքանչյուր սոցիալիստական երկրի կոմունիստական կուսակցության միջազգային գործունեության կարևոր հարցը հարաբերություններն են սոցիալիստական պետությունների հետ։ Սոցիալիստական համագործակցության տարբեր մասնակիցների միջև, հարաբերությունների ողջ բարդ կոմպլեքսում, յուրահատուկ տեղ են գրավում հարաբերությունները՝ ղեկավարող եղբայրական կոմունիստական և բանվորական կուսակցությունների միջև։ Լինելով միջազգային կոմունիստական շարժման մարտական ջոկատներից մեկը, ՍՄԿԿ մեծ նշանակություն է տվել ու տալիս է աշխարհի բոլոր երկրների կոմունիստական կուսակցությունների բարեկամական կապերին։ XXIV համագումարը կրկին ընդգծեց սոցիալիստական լագերի, կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միասնության կարևորությունը։

Չինական ղեկավարները գործում են ընդդեմ այդ միասնության։ Դա, իհարկե, չի խանգարում նրանց ժամանակ առ ժամանակ ազդարարելու, թե իրենք նվիրված են ինտերնացիոնալիզմին։ Իրականում, նրանք շարունակում են հետամուտ լինել սոցիալիստական լագերի թուլացմանը, Սովետական Միության հետ եղբայրական երկրների բարեկամության խզմանը և նրանց Պեկինի քաղաքականության շրջանակը ներգրավելուն։ Հարձակման յուրօրինակ թիրախ են Վարշավայի համաձայնագիրը և Տնտեսական փոխօգնության խորհուրդը, որոնք ներկայացվում են իբրև դաշնակիցների «քամահրանք ու ճնշում», «աշխատավոր ժողովրդի ըստեղծած վիթխարի նյութական հարստությունների կողոպուտ»։

Սովետական Միությունը շարունակ ջանացել է կասեցնել Չինաստանի հետ հարաբերությունների վատթարացման պրոցեսը, նորմալացնել դրանք, թեկուզ և միջպետական ոլորտի սահմաններում։ Դեռևս 1969 թ. նոյեմբերի 11-ին, Պեկինում հանդիպեցին Սովետական Միության Մինիստրների սովետի նախագահ Ա. Ն. Կոսիգինը և ՉԺՀ պետխորհրդի պրեմիեր Չժոու Էն-լայը։ Հանդիպման նախաձեռնողը սովետական կառավարությունն էր։ 1969 թ. հոկտեմբերի 20-ին Պեկինում սկսվեցին բանակցությունները՝ սահմանային հարցերի շուրջը, որ շարունակվում են մինչև օրս։ Հաստատվել են առևտրական կապեր, թեև ոչ-մեծ, սակայն ՍՍՀՄ և ՉԺՀ միջև ապրանքափոխանակության այդ փաստն իսկ, ինքնըստինքյան, առաջընթաց քայլ է։

1970 թ. հոկտեմբերին Պեկին մեկնեց ՍՍՀՄ նոր դեսպանը, նույն թվականի նոյեմբերին Մոսկվա ժամանեց չինական դեսպանը։ Ինչ վերաբերում է բանավեճին, ապա չինական ղեկավարները մերժեցին դրա դադարեցման վերաբերյալ սովետական առաջարկությունը։

Սովետական Միության վրա հարձակումներ գործելու համար օգտագործվեցին Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակը, Լեհաստանում 1970 թ. դեկտեմբերին առաջացած դժվարությունները։ Սուտ լուրեր տարածվեցին այնտեղ սովետական զինված ուժերի օգտագործման «հնարավորության» մասին։ Հակասովետական պրոպագանդայի հաջորդ բռնկումը եղավ 1971 թ. գարնանը, Փարիզի կոմունայի 100—ամյա տարելիցի և ՍՄԿԿ XXIV համագումարի նախօրյակին։

Սովետական կոմունիստները, մեր ժողովուրդը ՍՍՀՄ դեմ մաոականների վարած թշնամության ու ատելության քաղաքականությունն ամենևին չեն նույնացնում չին ժողովրդի, Չինաստանի աշխատավորների հետ։ ՍՄԿԿ XXIV համագումարում Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Մենք վճռականորեն դեն ենք նետում մեր կուսակցության և պետության քաղաքականության առթիվ Պեկինից տարածվող և չին ժողովրդին ներշնչվող զրպարտչական հերյուրանքները։ Չինաստանի և ՍՍՀՄ-ի միջև երկպառակություն սերմանելը անհեթեթ ու վնասակար է, մանավանդ որ դա տեղի է ունենում այնպիսի իրադրության մեջ, երբ իմպերիալիստներն ակտիվացնում են իրենց ագրեսիվ գործողությունները ազատասեր ժողովուրդների դեմ։ Իրադրությունը, ավելի քան երբևէ, պահանջում է բոլոր հակաիմպերիալիստական, հեղափոխական ուժերի համախմբում, համատեղ գործողություններ, այլ ոչ թե թշնամանքի բորբոքում այնպիսի պետությունների միջև, ինչպիսիք են ՍՍՀՄ-ը և Չինաստանը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 14)։

Հանրահայտ է, որ Սովետական Միությունը, սոցիալիստական մյուս երկրների հետ, միջազգային ասպարեզում համառորեն պաշտպանել է Չինաստանի՝ որպես սոցիալիստական երկրի շահերը։ Մենք մշտապես մերկացնում էինք ՉԺՀ մեկուսացման և շրջափակման իմպերիալիստական քաղաքականությունը, պաշտպանում ՉԺՀ իրավացի պահանջները ՄԱԿ-ում իր իրավունքները վերականգնելու վերաբերյալ, հանդես գալիս ընդդեմ «երկու Չինաստանի» քաղաքականության։

Ցավոք, չինական պատվիրակության առաջին քայլերը ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեայում ցույց տվին, որ չինական ղեկավարները մտադիր են այնտեղ շարունակելու իրենց հակասովետական կուրսը և պառակտումը պրոգրեսիվ ուժերի հետ։

Այն փաստը, որ ՍՄԿԿ Չինաստանի հետ իրոք նորմալ հարաբերությունների վերահաստատման հետևողական քաղաքականություն է վարում, դժվարին կացության մեջ է դնում մաոականներին ու նրանց հակասովետական պրոպագանդան ինչպես երկրի ներսում, այնպես և միջազգային ասպարեզում։

ՍՄԿԿ և սովետական պետության քաղաքականությունը Չինաստանի հանդեպ անքակտելիորեն կապված է մեր կուսակցության XXIV համագումարի առաջադրած խաղաղության ծրագրի հետ։ ՍՄԿԿ դիրքորոշումը համապատասխանում է սովետական ժողովրդի արմատական շահերին, մարքս-լենինյան սկզբունքներին, խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի կենսական խնդիրներին։ ՍՄԿԿ չի նահանջի իր սկզբունքներից, նա չի հրաժարվի Սովետական Միության պետական շահերի, սոցիալիստական մյուս երկրների, համաշխարհային կոմունիստական շարժման, հակաիմպերիալիստական պայքարի շահերի պաշտպանությունից։

Հետևողականորեն պայքարելով ընդդեմ մաոականների շովինիստական կուրսի, ՍՄԿԿ սովետական մարդկանց մշտապես դաստիարակում է պրոլետարական ինտերնացիոնալիզմի և սովետական հայրենասիրության ոգով։ Չնայած մաոականների հակասովետական քաղաքականությանը, ՍՍՀՄ-ում առաջվա նման ակտիվ գործում է սովետա-չինական բարեկամության ընկերությունը։ Ոչ թե ՉԺՀ-ում, այլ ՍՍՀՄ-ում են ուսումնասիրում չինական արձակ և չափածո դասական ստեղծագործությունները, մասսայական տպաքանակով տպագրվում են Լու Սինի, Լաո Շեի, Մաո Դունի, Թյան Հանի և չինական ուրիշ նշանավոր գրողների, դրամատուրգների ու պոետների գործերը։ Ոչ թե այսօրվա Չինաստանում, այլ Մոսկվայում հանդիսավոր նշվեց Սուն Յաթ-սենի հոբելյանը, այդ Մոսկվայում է կազմակերպվում չին գեղանկարիչներ Սյույ Բեյ-հունի, Ցի Բայշիի և այլոց նկարների ցուցահանդեսները։ Այս բոլոր փաստերը վճռականորեն մերկացնում են մաոականների այն զրպարտանքը, թե, իբր, Սովետական Միությունը, «հակաչինական պրոպագանդա է մղում»։

ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1971 թ.) պլենումը՝ (ՍՄԿԿ XXIV համագումարից հետո կուսակցության Կենտկոմի միջազգային գործունեության վերաբերյալ) իր որոշման մեջ նշեց, որ ՉԺՀ-ի հետ հարաբերությունների հարցում քաղբյուրոն հետևողականորեն ընթանում է XXIV համագումարի նախանշած ուղիով։

ՍՄԿԿ շարունակում է վճռականորեն մերկացնել մաոականների հակասովետական քաղաքականությունը, նրանց հակալենինյան, նացիոնալիստական գաղափարախոսությունը, նա վարում է ՍՍՀՄ և ՉԺՀ միջև միջպետական հարաբերությունների նորմալացման ան-

չեղ կուրս։ Այժմ շատ բան է կախված նրանից, թե ինչպես կվերաբերվի չինական ղեկավարությունն աշխարհի նոր իրողություններին։

Իրականում, ինչպես սովետա-չինական հարաբերությունների պատմությունն է վկայում, չկա և չեն կարող լինել օբյեկտիվ պատճառներ մեր երկու ժողովուրդների հակամարտության համար։ Ընդհակառակը, երկու երկրների բարեկամության և համագործակցության համար կան բոլոր անհրաժեշտ նախապայմանները, որ բխում են ինչպես ՍՍՀՄ և ՉԺՀ, այնպես և համաշխարհային կոմունիստական շարժման հաջող զարգացման պահանջներից։

ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀ Միության Գերագույն սովետի և ՌՍՖՍՀ Գերագույն սովետի միացյալ հանդիսավոր նիստում՝ նվիրված Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 50-ամյակին, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը, անդրադառնալով սովետա-չինական հարաբերություններին, ընդգծեց.

«Չինաստանի նկատմամբ մեր քաղաքականությունը լավ հայտնի է։ Այն պարզորոշ արտահայտված է կուսակցության XXIV համագումարի որոշումներում։ Մենք այն հետևողականորեն իրականացնում ենք և կիրականացնենք, որովհետև վստահ ենք այդ կուրսի ճշտությանը, որը հիմնված է ներկա և ապագա իրողությունների զգաստ հաշվառման վրա։

Սովետական Միությունը Չինաստանի նկատմամբ չունի ո՛չ տերիտորիալ, ո՛չ էլ տնտեսական հավակնություններ։ Սովետական մարդիկ հիշում են, որ ՍՍՀՄ-ի ու Չինաստանի հարաբերությունները բնավ միշտ չէ, որ եղել են այնպես, ինչպես հիմա։ Հայտնի է այն մեծ օգնությունը, որ մեր երկիրը չինական կոմունիստներին ցույց է տվել ճապոնական ագրեսորների ու չինական բուրժուազիայի դեմ նրանց մղած պայքարում։ Հայտնի է նաև այն դերը, որ Չինաստանում ժողովրդա-դեմոկրատական հեղափոխության հաղթանակի համար խաղաց Չինաստանն օկուպացրած ճապոնական զորքերի ջախջախումը սովետական բանակի կողմից։ Չինաստանում երևի հիշում են, որ երիտասարդ Չինական Ժողովրդական Հանրապետության կնքած առաջին միջազգային պայմանագիրը բարեկամության, դաշինքի ու փոխադարձ օգնության պայմանագիրն էր Սովետական Միության հետ։ Այնտեղ հավանաբար դեռ հիշում են նաև այն, թե Սովետական Միությունը ժողովրդական Չինաստանին ինչպիսի հսկայական օգնություն ցույց տվեց ծանր ինդուստրիայի ստեղծման, պաշտպանության ամրապնդման, ազգային կադրերի պատրաստման գործում։

Դրանք լավ ժամանակներ էին սովետա-չինական հարաբերություններում։ Դրանք սոցիալիստական պետությունների համար բնական հարաբերություններ էին։ Եվ մենք հավատում ենք, որ մեր երկու երկրների օբյեկտիվ շահերը, պատմության օրենքներն ի վերջո կհաղթեն սուբյեկտիվ քաղաքական խեղաթյուրումներին, և սովետա-չինական բարեկամությունը կվերականգնվի» (Լենինյան ուղիով, № 1, 1973, էջ 29)։

Սովետա-չինական բարեկամության և համագործակցության վերստեղծման խնդիրը մեր կուսակցությունը մշտապես դիտել է ո՛չ միայն ՍՍՀՄ և ՉԺՀ, ՍՄԿԿ և ՉԿԿ հարաբերությունների տեսանկյունով, այլև որպես համաշխարհային կոմունիստական շարժման միասնության ամրապնդման ընդհանուր պրոբլեմի մի մասը՝ իմպերիալիզմի, խաղաղության և սոցիալիզմի համար մղվող պայքարում։

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԱՐԴՅՈՒՆԱՀԱՆՈՂ ԵՎ ՎԵՐԱՄՇԱԿՈՂ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՀԱՐԱԲԵՐԱԿՑՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԻ ՇՈՒՐՋ

Սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման ներկա էտապում «Առավել սահմանափակ են դառնում նաև ժողովրդական տնտեսության աճի, այսպես կոչված, էքստենսիվ գործոնները» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 72)։ Ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման և հանրային արտադրության զարգացման համար վճռական նշանակություն ունի հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումը, որը տնտեսության ինտենսիվ զարգացման գլխավոր նախապայմանն է։

Հարցն այն է, որ «...աշխատանքային, նյութական և ֆինանսական ծախսումների յուրաքանչյուր միավորի հաշվով էապես մեծացվի արտադրության և ազգային եկամտի ծավալը» (Նույն տեղը, էջ 72—73)։

Հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումը, իր հերթին, ենթադրում է ժողովրդական տնտեսության համամասնությունների հետագա կատարելագործում և արտադրության կառուցվածքի բարելավում։ Զարգացած սոցիալիստական էկոնոմիկայի պայմաններում հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման գործոնների շարքում առաջնակարգ նշանակություն է ձեռք բերում արտադրության կառուցվածքի կատարելագործումը։ «Կառուցվածքային պրոբլեմների ճիշտ լուծումից են մեծապես կախված տնտեսական աճի տեմպերը, տնտեսության զարգացման և ժողովրդի բարեկեցության բարձրացման համար անհրաժեշտ կուտակումների հնարավորությունները» (Նույն տեղը, էջ 76)։

Այս առումով արտադրության կառուցվածքային տեղաշարժերի ուսումնասիրումը և դրանց հետագա կատարելագործման ուղիների բացահայտումն ունի ինչպես տեսական, այնպես էլ գործնական կարևոր նշանակություն։

Հասարակական, մասնավորապես արդյունաբերական արտադրության մեջ կառուցվածքային պրոբլեմների շարքում հիմնական հարցերից մեկը վերամշակող և արդյունահանող արդյունաբերության զարգացման տեմպերի միջև ճիշտ հարաբերակցության սահմանումն է։ Իսկ դրանց միջև սահմանը որոշ-

վում է աշխատանքի առարկայի վրա ներգործության բնույթով։ Արդյունահանող արդյունաբերության մեջ աշխատանքի առարկան տրված է բնության մեջ, որով և պայմանավորված է արդյունահանող արդյունաբերության զարգացման այն առանձնահատկությունը, ըստ որի, դրա զարգացման ուղղության և տեղաբաշխման վրա բնական պրոցեսները մեծ ազդեցություն են գործում։ Այս առումով Կ. Մարքսը նշում է, որ լեռնարդյունաբերության և հողագործության մեջ «...գործ ունենք աշխատանքի ո՛չ միայն հասարակական, այլև բնական արտադրողականության հետ, որը կախված է աշխատանքի բնական պայմաններից» (Կապիտալ, հ. III, 1949, էջ 304)։

Սակայն անկախ այն բանից, թե բնակլիմայական ինչպիսի պայմաններում է ձևավորվել արդյունահանող արտադրական կոմպլեքսը, այն բնական հիմք և անհրաժեշտ նախապայման է վերամշակող արդյունաբերության ձևավորման ու զարգացման համար։ Իր հերթին վերամշակող արդյունաբերությունը տեխնիկա-տնտեսական հիմք է ստեղծում արդյունահանող արդյունաբերության զարգացման համար։ Դրա մակարդակով է մեծապես պայմանավորված այդ արդյունաբերության աշխատանքի արդյունքի օգտագործման աստիճանը, հետևաբար և՝ վերջինիս նկատմամբ եղած պահանջը։

Արդյունահանող արդյունաբերությունը վերամշակողին տրամադրելով աշխատանքի առարկաներ, ստանում է աշխատանքի միջոցներ և այս առումով դրանց միջև եղած հարաբերակցությունն արտահայտում է տվյալ տնտեսական շրջանի ներսում և դրանից դուրս աշխատանքի առարկաների և գործիքների արտադրության միջև եղած կապը։ Սակայն վերամշակող արդյունաբերությունը թողարկում է ո՛չ միայն աշխատանքի գործիքներ՝ սարքավորումներ, մեքենաներ, այլև առարկաներ ու անձնական սպառման միջոցներ։ Հետևաբար, վերջին հաշվով, արդյունահանող և վերամշակող արդյունաբերության միջև համամասնությունն արտադրության մեջ ներգրավված հումքային ռեսուրսների և դրանցից ստացված վերջնական արտադրանքի հարաբերակցությունն է։ Բնականաբար, վերջինս պայմանավորված է վերջնական արտադրանքի միավորի նկատմամբ ծախսված աշխատանքի առարկաների քանակությամբ, այսինքն՝ արտադրանքի նյութատարությամբ, որն, իր հերթին, պայմանավորված է արտադրության մեջ գիտության և տեխնիկայի նվաճումների կիրառման աստիճանով, հումքի մշակման խորությամբ ու տեխնոլոգիական պրոցեսների մակարդակով։

Տեխնիկական առաջընթացը հանգեցնում է միավոր արտադրանքի վրա ծախսվող հումքի ու նյութերի կրճատմանը՝ նոր, առավել առաջադիմական և տնտեսապես արդյունավետ հումքատեսակների օգտագործման, արտադրության տեխնոլոգիայի հետագա կատարելագործման, հումքի կոմպլեքսային վերամշակման հիման վրա։ Հետևաբար, մի կողմից հումքի և նյութերի օգտագործման բարելավումն ու մշակման խորացումը, մյուս կողմից՝ աշխատամիջոցների կատարելագործումը վերամշակող և արդյունահանող արդյունաբերության հարաբերակցության փոփոխության հիմքն են՝ վերջնական արտադրանքի նյութատարության կրճատման միջոցով։ Պետք է նշել, որ երկրում թողարկվող արտադրանքի նյութատարության միայն մեկ տոկոսի իջեցումը հավասարազոր է ազգային եկամտի 3—4 մլրդ ռուբլի լրացուցիչ աճին (տե՛ս ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 77)։

Վերամշակող և արդյունահանող արդյունաբերության հարաբերակցության վրա որոշակի ազդեցություն ունի նաև այն, որ արդյունահանող արդյունաբե-



րության մեջ արտադրության պրոցեսը, վերամշակողի համեմատությամբ, ավելի աշխատատար, ֆոնդատար և կապիտալատար է։ Օրինակ, մեր հանրապետությունում վերջին տարիներին վերամշակող և արդյունահանող արդյունաբերության մեջ աշխատատարության և ֆոնդատարության համադրումն ունի այսպիսի պատկեր (արտադրանքի աշխատատարությունը և ֆոնդատարությունը արդյունահանող արդյունաբերության մեջ՝ վերամշակողի համեմատությամբ, անգամ).

| | 1966 թ. | 1968 թ. | 1970 թ. | 1971 թ. |
|---|---|---|---|---|
| Արտադրանքի աշխատատարությունը | 2,48 | 2,79 | 2,76 | 2,69 |
| Արտադրանքի ֆոնդատարությունը | 11,40 | 11,87 | 11,04 | 10,58 |

Ահա թե ինչու «...ժողովրդական տնտեսության շահերի տեսակետից, վերամշակվող արդյունաբերության մեջ արտադրության կատարելագործման հաշվին հումքի խնայողության հասնելն անհամեմատ ավելի ձեռնտու է, քան նույն քանակությամբ հումքի լրացուցիչ արտադրությունը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 77)։

Արդյունահանող արդյունաբերության համեմատաբար բարձր ֆոնդատարության, կապիտալատարության և աշխատատարության պատճառով արդյունաբերական զարգացած որոշ կապիտալիստական երկրներ ընդլայնում են հումքի և վառելիքի ներմուծումը, սահմանափակելով արդյունահանող արդյունաբերության զարգացումը։ Մեր երկրում հանքային հումքի և վառելիքի նկատմամբ պահանջը բավարարվում է հիմնականում սեփական ռեսուրսներով։ Աշխարհում տարեկան արդյունահանվում է 5 մլրդ տոննա օգտակար հանածոներ, որից 1,5 մլրդ կամ 30 տոկոսը բաժին է ընկնում ՍՍՀՄ-ին (տե՛ս Интенсификация и резервы экономики, М., 1970, стр. 30)։

Արդյունահանող և վերամշակող արդյունաբերության հարաբերակցության փոփոխության մեջ զարգացած երկրների համար ընդհանուրն այն է, որ վերամշակող արդյունաբերությունն, արդյունահանողի համեմատությամբ, ավելի արագ է աճում՝ կապված միավոր արտադրանքի վրա հումքի և նյութերի ծախսման աստիճանական կրճատման հետ։

Մեր հանրապետությունում 1966—1971 թթ. վերամշակող արդյունաբերությունը 1,1 անգամ ավելի արագ է աճել, քան արդյունահանողը։ Նույն համամասնությամբ են փոփոխվել նաև այդ ճյուղերում զբաղված աշխատողների թիվը և հիմնական ֆոնդերը։ Այսպես, արդյունաբերա-արտադրական աշխատողները վերամշակող արդյունաբերության մեջ 1966—1971 թթ. աճել են 28,5, արդյունահանողում՝ 8,2, իսկ հիմնական ֆոնդերը, համապատասխանաբար՝ 80 և 52 տոկոսով։

Ընդ որում, ՀՍՍՀ արդյունաբերության մեջ վերամշակող ճյուղերի տեսակարար կշիռն ըստ համախառն արտադրանքի 1971 թ. կազմել է 93,63, իսկ արդյունահանող ճյուղերինը՝ 2,37 տոկոս։ ՍՍՀՄ արդյունաբերության մեջ այդ ճյուղերի հարաբերակցությունը 1967 թ. տվյալներով, համապատասխանաբար կազմել է 93 և 7 տոկոս։

Հանրապետության արդյունահանող արդյունաբերության հիմնական ճյուղերն են՝ էլեկտրաէներգետիկան, գունավոր մետաղաձուլությունը, անտառա-

յին ու փայտամշակման, շինանյութերի և սննդի արդյունաբերությունը։ 1967 թ. Հայաստանում արդյունահանող արդյունաբերության տեսակարար կշիռը արդյունաբերության համախառն արտադրանքի մեջ եղել է 4,9, վերամշակողինը՝ 95,1 տոկոս։

1971 թ. տվյալներով, արդյունահանող արդյունաբերության համախառն արտադրանքի մեջ էլեկտրաէներգետիկայի տեսակարար կշիռը 22,4 տոկոս է, իսկ հիմնական ֆոնդերի ճյուղային կառուցվածքում՝ 79,2։ Բարձր տեսակարար կշիռ ունի նաև շինանյութերի արդյունաբերությունը։ Ըստ համախառն արտադրանքի այն կազմում է 59, իսկ հիմնական ֆոնդերի՝ 8,9 տոկոս։ Եթե 1966—1971 թթ. արդյունահանող արդյունաբերության կազմում նվազել է էլեկտրաէներգետիկայի, անտառային ու փայտամշակման արդյունաբերության տեսակարար կշիռը (համախառն արտադրանքի և հիմնական ֆոնդերի գծով), ապա շինանյութերի արդյունաբերության, գունավոր մետաղաձուլության և սննդարդյունաբերության ճյուղերն աճի տենդենց ունեն։

Ընդհանուր առմամբ հանրապետության վերամշակող և արդյունահանող արդյունաբերության հարաբերակցության փոփոխությունը պայմանավորված է առանձին ճյուղերում (որոնք ունեն և արդյունահանող և վերամշակող ենթաճյուղեր) դրա փոփոխությամբ, ինչպես նաև միայն վերամշակող արդյունաբերության մեջ մտնող ճյուղերի (մեքենաշինության և մետաղամշակման, քիմիական, թեթև արդյունաբերության և այլն) զարգացման տեմպերով։

Եթե ամբողջ արդյունաբերության առումով 1966—1971 թթ. հատկանշական է վերամշակող արդյունաբերության համախառն արտադրանքի, աշխատողների թվի և հիմնական ֆոնդերի առաջանցիկ աճ արդյունահանողի նկատմամբ, ապա առանձին ճյուղերում այդ հարաբերակցությունը նույն ձևով չի պահպանվում։

Հայաստանում արդյունահանող և վերամշակող արդյունաբերության հարաբերակցության փոփոխության վրա վճռական ազդեցություն է ունեցել աշխատանքի առարկաների օգտագործման արդյունավետության հետագա բարձրացումը։

Ինչպես արդեն նշել ենք, արդյունահանող արդյունաբերության մեջ արտադրությունը, վերամշակողի համեմատությամբ, անհամեմատ ֆոնդատար և աշխատատար է։ Ուստի, ընդհանուր արդյունաբերության կազմում արդյունահանող արդյունաբերության տեսակարար կշռի աճը կհանգեցնի արդյունաբերական արտադրության ֆոնդատարության ու աշխատատարության աճին և ընդհակառակը։ Չնայած արդյունահանող և վերմշակող արդյունաբերության միջև տեղաշարժերի թափը մեր հանրապետությունում այնքան էլ բարձր չէ (ըստ համախառն արտադրանքի 1966—1971 թթ. այն հավասար էր 0,23 տոկոսի), այնուամենայնիվ, այն որոշ չափով ազդել է ընդհանուր արդյունաբերության նշված ցուցանիշների փոփոխության վրա։ Այս տեղաշարժերի հետեվանքով միայն նշված ժամանակաշրջանում արդյունաբերության արտադրանքի ֆոնդատարությունը կրճատվել է 1,88, իսկ աշխատատարությունը՝ 0,33 տոկոսով։ Չնայած դրան, ամբողջ արդյունաբերության մեջ ֆոնդատարությունն այդ նույն ժամանակաշրջանում աճել է 2,94 տոկոսով, որը մասամբ պայմանավորված է արդյունաբերության մեջ ճյուղային (որին բաժին է ընկնում ընդհանուր աճի 76,4 տոկոսը), ինչպես և առանձին ճյուղերի ներսում հիմնական ֆոնդերի օգտագործման վիճակով ու ներճյուղային կառուցվածքային տեղաշարժերով։



Ի դեպ, անհրաժեշտ է նկատել, որ արդյունահանող արդյունաբերության մեջ, վերամշակողի համեմատությամբ, ո՛չ միայն ցածր են աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը, այլև դրա մակարդակը։ Դա պայմանավորված է արդյունահանող ճյուղերի արտադրության և աշխատանքի տեխնիկական զինվածության ու տեխնոլոգիական պրոցեսների համեմատաբար ցածրր մակարդակով։ Դրա հետ մեկտեղ անհամեմատ ցածր է արդյունահանող արդյունաբերության ֆոնդազինվածության աճի տեմպերը։

Աշխատանքի ֆոնդազինվածության արագ աճի շնորհիվ վերամշակող արդյունաբերության ճյուղերում աշխատանքի արտադրողականությունն աճել է, իսկ էլեկտրաէներգետիկայի և սննդարդյունաբերության արդյունահանող ենթաճյուղերում հակառակը։ Առաջինում աշխատատարությունն աճել է 31,27, իսկ երկրորդում՝ 2,35 տոկոսով։

Վերամշակող և արդյունահանող արդյունաբերության զարգացման հարաբերակցության փոփոխությունը որոշակիորեն ներգործում է արտադրության արդյունավետության վրա։ Վերամշակող արդյունաբերության տեսակարար կշռի աճը հանգեցնում է աշխատանքի արտադրողականության բարձրացմանը և արտադրանքի ֆոնդատարության կրճատմանը։ Սակայն արտադրության արդյունավետության արագ բարձրացման համար անհրաժեշտ է կազմակերպական-տեխնիկական միջոցառումներ ձեռնարկել արդյունահանող արդյունաբերության մեջ աշխատանքի տեխնիկական զինվածության աճի և դրա հիման վրա արտադրանքի աշխատատարության կրճատման ու հիմնական արտադրաֆոնդերի օգտագործման բարելավման նպատակով։ Դրանով հիմնականում կհամահարթվի արդյունաբերության այդ երկու խոշոր ճյուղերի արտադրության արդյունավետության մակարդակների միջև եղած տարբերությունը։

Առանձնապես անհրաժեշտ է միջոցառումներ մշակել գունավոր մետաղաձուլության մեջ արտադրության արդյունավետության բարձրացման համար, նկատի ունենալով, որ մեր հանրապետությունում մետաղի բաղադրությունը լեռնահանքային արդյունաբերությունում գնալով պակասում է։

Ընթացիկ հնգամյակում զգալի տեղաշարժեր կկատարվեն արդյունահանող և վերամշակող արդյունաբերության ճյուղերի միջև։ 1971—1975 թթ. ՍՍՀՄ վերամշակող արդյունաբերության ճյուղերի միջին տարեկան աճը կկազմի 8,3, իսկ արդյունահանող ճյուղերինը՝ 4,4 տոկոս։ Նախատեսվում է վառելիքի, էլեկտրաէներգիայի, քիմիական, անտառային և հումքային ու նյութական մյուս ռեսուրսների ծախսման նորմաները նվազեցնել 7—10 տոկոսով (տե՛ս ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 328)։ Մեր հանրապետությունում նույնպես ավելի արագ տեմպերով կաճեն վերամշակող ճյուղերը։

Միաժամանակ կառուցվածքային լուրջ տեղաշարժեր են կատարվելու առանձին ճյուղերի արդյունահանող և վերամշակող ենթաճյուղերի միջև։ Դա վերաբերում է հատկապես էլեկտրաէներգետիկային. ատոմային էլեկտրակայանի և Կիրովականի, Հրազդանի ջերմաէլեկտրակայանների շահագործման շնորհիվ կմեծանա վերամշակող ենթաճյուղերի բաժինը, որը մեծապես կնպաստի արդյունաբերության մեջ վերամշակող ճյուղերի տեսակարար կշռի աճին։ Նշված կառուցվածքային տեղաշարժերն ընթացիկ հնգամյակում կնպաստեն արդյունաբերական արտադրության արդյունավետության առավել բարձրացմանը։

ՅՈՒ. Մ. ՍՈՒՎԱՐՅԱՆ
Տնտեսական գիտությունների թեկնածու
Գ. Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

## ՄԵՔԵՆԱՇԻՆՈՒԹՅԱՆ ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԶԻՆՎԱԾՈՒԹՅՈՒՆՆ ԱՌԱՋՆԱՀԵՐԹ ԽՆԴԻՐ Է

Սոցիալիստական տնտեսության զարգացման բոլոր փուլերում արտադրական ձեռնարկությունների տեխնիկական վերազինումը հասարակական աշխատանքի արդյունավետության բարձրացման կարևորագույն պայմաններից մեկն է։ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման իններորդ հնգամյակում հանրային արտադրության նախատեսված աճն ապահովելու գործում առաջնակարգ նշանակություն ունի ինչպես ձեռնարկության ներտնտեսական ռեզերվների հայտաբերումն ու օգտագործումը, այնպես և դրա աշխատանքի տեխնիկական վերազինումը։ Վերջինս, որպես տեխնիկական առաջընթացի ձև, աշխատանքի արտադրողականության աճի տեմպերի բարձրացման կարևոր պայմաններից է։

Արտադրաձեռնարկությունների տեխնիկական վերազինման նյութական հիմքը մեքենաշինությունն է, որի գլխավոր խնդիրը ժողովրդական տնտեսության և արդյունաբերության առանձին ճյուղերի տեխնիկական առաջընթացի ապահովումն է։ Այդ պրոբլեմների լուծումը պահանջում է արագացնել նաև բուն մեքենաշինության տեխնիկական վերազինումը։

Մեքենաշինական ձեռնարկությունների տեխնիկական վերազինման նյութական բազայի ստեղծումը կապված է ո՛չ միայն մետաղահատ հաստոցների, դարբնոցա-մամլիչային և զոդման սարքավորումների ավելացման, այլև դրանց որակի կատարելագործման հետ։

Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ մեր հանրապետության էլեկտրատեխնիկական արդյունաբերության որոշ ձեռնարկություններում նշված սարքավորումների տեխնիկական մակարդակը դեռևս լրիվ չի համապատասխանում ինչպես առաջավոր տեխնիկայի, այնպես և թողարկվող արտադրանքի որակի բարձրացմանը ներկայացվող պահանջներին։ Էլեկտրատեխնիկական արդյունաբերության արտադրանքի աճը, նրա կառուցվածքի արագ տեղաշարժերը պահանջում են, որպեսզի մետաղահատ հաստոցների կազմում 2—3 անգամ ավելացվի ավտոմատ և կիսաավտոմատ հաստոցների քանակը։ Հաշվարկները ցույց են տալիս, որ մետաղահատ հաստոցները յուրաքանչյուր 5—7 տարին մեկ նոր մոդելային հաստոցներով փոխարինելու դեպքում, ամբողջ սարքավորումների միջին արտադրողականությունը ավելանում է 25—30, իսկ



յուրաքանչյուր դետալի մշակման ժամանակը միջին հաշվով կրճատվում է 15—25 տոկոսով։ Եթե այդպիսի փոխարինում ուղեկցվում է արտադրանքի թողարկման տեխնոլոգիայի բարելավմամբ, ապա սարքավորումների արտադրողականությունն աճում է 1,5—2 անգամ, ընդ որում, հղկվող սարքավորումների արտադրողականությունը բարձրանում է 1,6, ռանդող հաստոցներինը 1,7, ներտաշ հաստոցներինը՝ 2,4 և ձգող հաստոցներինը՝ 2,5 անգամ։

Միայն տեխնիկական վերազինվածության շնորհիվ արտադրանքի ծավալը, միջին հաշվով, ավելանում է 30—35, իսկ սարքավորումների միջին արտադրողականությունը՝ 40—45 տոկոսով։

Միայն 1971 թ. ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության մեջ նոր տեխնիկայի ներդրումը հնարավորություն ընձեռեց տնտեսել 1,4 մլրդ ռուբլի։ Տեխնիկական վերակառուցումը հնարավորություններ է տալիս նոր հաստոցների ու սարքավորումների ներդրման հետ միաժամանակ կատարելագործել թողարկվող արտադրանքի աշխատատարության կառուցվածքը, հետևապես բարձրացնել ձեռնարկության տնտեսական գործունեության արդյունավետությունը։ Դրա համար անհրաժեշտ է ցույց տալ վերազինվածության նպատակասլացությունը, օպտիմալ չափերը և տնտեսական գնահատականը։ Ձեռնարկության տեխնիկական առաջընթացն ունի ո՛չ միայն տնտեսական, այլև սոցիալական հետևանքներ, որոնք իրենց բազմաձևությամբ աշխատանքի բովանդակության լուրջ փոփոխություններ և նոր պահանջներ են հարուցում աշխատանքի որակի բարձրացման նկատմամբ։ Դա նշանակում է գնալով արտադրապրոցեսում կաճի մտավոր գործունեության տեսակարար կշիռը։ Ակադեմիկ Ս. Գ. Ստրումիլինի հաշվարկներով, սովետական հասարակությունն ամեն տարի ազգային եկամտի աճի 23 տոկոսը ստանում է որակյալ աշխատանքի և արտադրության կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման հաշվին։ Արտադրության տեխնիկական և կազմակերպական մակարդակի վերընթացը որակյալ աշխատանքի նոր պահանջներ է հարուցում։ Հետևաբար, միջնակարգ և տեխնիկական կրթություն ստանալը բարդ մասնագիտություն ունենալու նվազագույն նախապայմանն է։ Ձեռնարկության տեխնիկական վերազինումը կխթանի ֆիզիկական և մտավոր աշխատանքների միջև եղած էական տարբերությունների վերացմանը։

Նյութական արտադրության ոլորտում մարդու ինտելեկտուալ գործունեությունը միշտ եղել է աշխատանքի պրոցեսի բաղադրամասը։ Մեր երկրում սիստեմատիկաբար աճում է մտավոր աշխատանքի տեսակարար կշիռը։ Եթե 1926 թ. մտավոր աշխատանքով զբաղվողների թիվը հասնում էր 2,9 մլն-ի, ապա 1967-ին այն կազմեց 27,0 մլն։ Ժողովրդական տնտեսությունում զբաղված աշխատողների թվում ֆիզիկական աշխատանք կատարող բանվորների տեսակարար կշիռը 1939—1959 թթ. 82,5-ից դարձել է 79,3 տոկոս, իսկ մտավոր աշխատանքինը՝ 17-ից մինչև 20,7 տոկոսի։

Տեխնիկական վերազինման սոցիալական հետևանքն արտահայտվում է հատկապես աշխատանքի պայմանների բարելավմամբ։ Այսպես, մեր հանրապետության մեքենաշինական կիսաավտոմատացված ու ավտոմատացված գործարանների բանվորների միայն 40 տոկոսն է կատարում բարձր որակավորված աշխատանք։ Այդ պրոցեսն ավարտելու համար անհրաժեշտ է վերացնել արտադրապրոցեսների կոմպլեքս ավտոմատացումը, որը, անկասկած, կնպաստի բանվորների բազմակողմանի զարգացմանը։

Տեխնիկական առաջընթացի շնորհիվ ավելի են կատարելագործվում սոցիալական հարաբերությունները, բարձրանում է կոլեկտիվի դերը՝ նոր տեխնիկայի արդյունավետ օգտագործման բնագավառում։

Ահա թե ինչու կենսական նշանակություն ունի ձեռնարկության տեխնիկական վերազինման սոցիալական և տնտեսական օպտիմալ զարգացումը։

Քանի որ տեխնիկական առաջընթացն ինքնանպատակ չէ, այլ հասարակության հարստությունը բազմապատկելու միջոց, ապա այն իրականացնելիս պետք է հաշվի առնել, թե նոր մեքենաների արտադրության հետ կապված ծախսերի և դրանց շահագործումից ստացած եկամուտների տարբերությունը համապատասխանո՞ւմ է արդյոք հասարակության պահանջներին, թե՝ ոչ։ Դա նշանակում է, որ տեխնիկական վերազինվածության ժամանակ, երբ ավելանում է հաստոցային պարկում սարքավորումների ակտիվ մասի տեսակարար կշիռը և բարձրանում աշխատանքի ֆոնդազինվածությունը, ապա մյուս հավասար պայմաններում այն պետք է նպաստի արտադրանքի ֆոնդատարության ու աշխատատարության կրճատմանը և աշխատանքի արտադրողականության աճի ավելացմանը։ Այսպես, Հայկական ՍՍՀ էլեկտրատեխնիկական արդյունաբերության հիմնական ֆոնդերի ակտիվ մասի տեսակարար կշիռը 1969—1970 թթ. ավելացել է 6,1 տոկոսով։ Այդ նույն ժամանակաշրջանում հիմնական ֆոնդերն աճել են 5, դրանց ակտիվ մասը՝ 11,4, իսկ համախառն արտադրանքը՝ 3,6 տոկոսով։ Այստեղից, հիմնական ֆոնդերի յուրաքանչյուր մեկ տոկոս աճին բաժին է ընկել 0,72 տոկոս համախառն արտադրանքի աճ, ընդ որում, հիմնական ֆոնդերի ակտիվ մասին՝ 0,32։

Կատարած հետազոտություններից պարզվել է, որ ճյուղի տեխնիկական վերազինվածության պայմաններում հիմնական ֆոնդերի ակտիվ մասի ոչ ռացիոնալ օգտագործման հետևանքով բարձրանում է թողարկվող արտադրանքի ֆոնդատարությունը։ Օրինակ, 1969—1971 թվականների ընթացքում այդ ճյուղի աշխատանքի ֆոնդազինվածության բարձրացման և թողարկվող արտադրանքի աշխատատարության անփոփոխ պայմաններում արտադրության ֆոնդատարությունը ավելացել է 25 տոկոսով։

Էլեկտրատեխնիկական արդյունաբերության առանձնահատկությունն այն է, որ այստեղ թողարկվող արտադրանքի ընթացքում զգալի տեսակարար կշիռ ունեն փաթաթման, մեկուսացման, հավաքման և այլ բնույթի աշխատանքները։ Ճիշտ է, տեխնիկական վերազինմամբ ձեռնարկությունը լայն հնարավորություն է ստանում նվազեցնել թողարկվող արտադրանքի աշխատատարությունը, սակայն իրականում միշտ ռեալ պայմաններ չկան իսկապես նվազեցնելու փաթաթման, մեկուսացման և մեքենաների հավաքման նպատակով ծախսվող աշխատանքները։ Այսպես, եթե մինչև 100 կվտ հզորություն ունեցող գեներատորների ընդհանուր աշխատատարությունը բացարձակորեն հնարավոր է կրճատել 2 անգամ, ընդ որում, փաթաթմանը և մեկուսացմանը՝ 1,4, հավաքմանը՝ 1,7, ապա այդ դեպքում վերջիններիս աշխատատարության տեսակարար կշիռները հարաբերականորեն ավելանում են 13,7 (48,4—34,7) և 3,8 (21,7—17,9) միավորներով։

Տնտեսության զարգացման ժամանակակից փուլում մեծ նշանակություն ունի արտադրության տեխնիկական վերազինման ուղղությունների և դրանց տնտեսական արդյունավետության ճիշտ որոշումը։

Ընթացիկ հնգամյակում պահանջվում է հանրապետության էլեկտրատեխնիկական արդյունաբերության մեջ մեքենայացնել նախապատրաստվածքային



տեղամասերի ցածր արտադրողական և, միաժամանակ, հոլովակային գիլյոտինաձև մկրատների տակ պողպատյա բարակ և հաստ մետաղաթերթերի կլոր և ձևավոր պրոֆիլ ունեցող գլանվածքների կտրատման ծանր աշխատանքները։ Դրա հետ մեկտեղ, ծրագրված ղեկավարման գիլյոտինային մկրատների կիրառումով հնարավորություն կստեղծվի ավտոմատացնելու բարակաթերթ թիթեղի մատուցման և նախօրոք ծրագրված ձևման աշխատանքները։

Հայտնի է, որ էլեկտրատեխնիկական արդյունաբերության մեջ տրանսֆորմատորների պատրաստման ժամանակ ամենաաշխատատար պրոցեսներից մեկը՝ մագնիսական պողպատյա միջուկների պատրաստումն է։ Այդ նպատակով անհրաժեշտ է ներդնել «ԿՈՄԵԿ» տիպի հոլովակային ավտոմատ սարքավորումը, որը հնարավորություն կընձեռի կտրատելու ավելի նեղ շերտերի ժապավենավոր պողպատը՝ մագնիսական միջուկի փաթաթման համար։ Մագնիսական պողպատյա միջուկի առանձին թերթիկներ ստանալու համար, ներկայումս գիլյոտինաձև մկրատների փոխարեն Հայէլեկտրամեքենաշինական գործարանում նախատեսվում է ներդնել համատեղված կտրատման հատուկ ավտոմատներ, որոնց միջոցով, առանց բանվորի անմիջական մասնակցության, կստանանք մեզ անհրաժեշտ չափերի մետաղաթերթիկներ։ Նախատեսվում է գեներատորային արտադրամասում ներդնել հատուկ հոլովակային մկրատներ, էլեկտրատեխնիկական թերթավոր պողպատն առանձին շերտերով կտրելու համար։ Արտադրության նախապատրաստվածքային աշխատանքների մեքենայացումը և ավտոմատացումը հնարավորություն կընձեռի վերոհիշյալ ձեռնարկությանը տարեկան տնտեսելու 956000 մարդ/ժամ։

Էլեկտրատեխնիկական արդյունաբերության մեջ զոդման աշխատանքներ կատարելու համար անհրաժեշտ է լայնորեն կիրառել ուժային գլխոցիկներով հոսքային վերակարգավորվող գծեր։ Դրանց արդյունավետությունն ակնհայտ է, որովհետև մեծ ծավալներ ունեցող նախապատրաստվածքների վրա տարբեր ձևի և չափի անցքեր դրոշմելու համար, անհրաժեշտ չի լինում օգտագործել կամ խոշոր մամլիչներ, որոնք միշտ չեն օգտագործվում ըստ իրենց կարողության, կամ՝ տարբեր մամլիչներ, դետալի մի շարք օպերացիաների կատարման համար։ Ուստի, հիդրավլիկ կոմպլեկտավորված գծերի ստեղծումը սարքավորումների և արտադրության տեխնոլոգիայի կառուցվածքի կատարելագործման նյութական նախադրյալներից մեկն է։

Այդպիսի հոսքային գծի վրա հնարավոր է կատարել պանելների կափարիչների դրոշման և զոդման աշխատանքները, տրանսֆորմատորների շրջապատյանների կափարիչների և էլեկտրական ագրեգատների ու շարժական էլեկտրակայանների հենարանային շրջանակների վրա տարբեր տեսակի և չափսերի անցքերի դրոշմումը։

Բացի դրանից, նպատակահարմար է ներդնել նոր տրանսֆորմատորների հովացուցիչների պատրաստման հոսքային ավտոմատ գիծը, որի ներդրմամբ տարեկան կտնտեսվի մոտ 1 մլն ռուբլի։ Հայէլեկտրագործարանում նախատեսվում է ստեղծել հոսքային մեքենայացված գծեր՝ տրանսֆորմատորների շրջապատյանների ընդարձակիչների ջերմասիֆոնային բաքերի հավաքման և զոդման համար, իսկ ձեռնարկության էլեկտրական խոշոր մեքենաների արտադրամասում՝ ներդնել գազակտրիչ կիսաավտոմատներ՝ ծրագրային ուղղությամբ։ Դրոշման և զոդման աշխատանքների մեքենայացումը և ավտոմատացումը հնարավորություն կընձեռի տարեկան տնտեսելու 3353000 մարդ/ժամ։

Անհրաժեշտ է նշել, որ էլեկտրատեխնիկական արտադրության մեջ ամենաաշխատատարը՝ փաթաթման, մեկուսացման և մաքրման պրոցեսներն են։ Դրա համար պետք է ներդնել հատուկ հաստոցներ, որոնք հնարավորություն կընձեռեն ավտոմատ կերպով կատարել հաղորդալարերի կտրատման, մաքրման, նրանց վրա տառերի ու թվերի դրոշման աշխատանքները։ Տեխնիկական վերազինումն իր արտահայտությունը պետք է գտնի նաև հավաքման, փորձարկման և ներկման աշխատանքների ավտոմատացման մեջ։ Դրա հետ մեկտեղ, չենք անտեսում, որ էլեկտրատեխնիկական արդյունաբերությունում դժվար են մեքենայացվում հավաքման տեխնոլոգիական պրոցեսները։

Ձեռնարկության տեխնիկական վերազինման դեպքում անհրաժեշտ է բարձրացնել բեռնաթափման, բարձման, տեղափոխման և պահեստավորման աշխատանքների մեքենայացման տեսակարար կշիռը։ Արտադրության տեխնիկական վերազինման վերլուծությունը ցույց է տալիս, որ ճյուղի ձեռնարկությունների տարբեր արտադրամասերում այդ աշխատանքները կազմում են արտադրանքի պատրաստման ընդհանուր աշխատաժամանակի 25—30 տոկոսը։ Այդ պատճառով ձեռնարկության արտադրամասերում անհրաժեշտ է կառուցել մեքենայացված պահեստներ, որտեղից կիսաֆաբրիկատների, նախապատրաստվածքների և պատրաստի մասերի տեղափոխումը կմեքենայացվի։

Ձեռնարկության տեխնիկական վերազինումը թողարկվող արտադրանքի նորացման և որակի բարձրացման կարևոր պայմաններից մեկն է։ Դրան պետք է հատուկ ուշադրություն նվիրել, որովհետև հանրապետության էլեկտրատեխնիկական որոշ ձեռնարկություններում թողարկվող ոչ բոլոր արտադրատեսակներն են, որ իրենց տեխնիկա-տնտեսական ցուցանիշներով համապատասխանում են համաշխարհային ստանդարտների լավագույն նմուշներին։ Առանձին ձեռնարկություններում, ինչպես, օրինակ, Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանում, արդեն նախատեսվում է տեխնիկական վերազինման միջոցով «ԵՍ» և «ԵՍՍ» տիպի գեներատորները փոխարինել նոր՝ «ՕՍ» սերիայի գեներատորներով, որոնք կունենան տեխնիկական բարձր ցուցանիշներ և համեմատաբար պակաս նյութատար են, քան իրենց նախորդները։ Դրանց յուրացումը հնարավորություն կընձեռի միավոր արտադրանքի հաշվով կրճատելու օգտագործվող պղնձալարերի, գունավոր և սև մետաղների ծավալը։

Այս բոլորի հետ մեկտեղ, ընթացիկ հնգամյակում յուրացվելու է «ՕՍ» տիպի գեներատորների լարումը կարգավորող ցածրավոլտ ապարատուրա։ Նորացվելու են նաև գործարանում թողարկվող էլեկտրական ագրեգատների և շարժական էլեկտրակայանների կոնստրուկցիաները։ Նախատեսվում է այդ արտադրատեսակները կոմպլեկտավորել նոր տիպի «ՕՍ» սերիայի գեներատորներով և վերջիններիս կարգավորումը ապահովելու ցածրավոլտ ապարատուրայով։

Նշանակալից չափով կփոփոխվեն նաև էլեկտրական փոխակերպիչների և 100 կվտ-ից բարձր հզորություն ունեցող էլեկտրական մեքենաները։ Ընդ որում, առաջինների կոնստրուկցիաներում կենտրոնացված օդասառեցուցիչները փոխարինվելու են բաշխված օդասառեցուցիչներով, որոնք, նախկինների համեմատությամբ, կունենան ավելի բարձր օգտակար գործողության գործակից։

Այսպիսով, նոր արտադրանքի տեսակների յուրացման և թողարկվող արտադրանքի որակի բարձրացման, հուսալիության ու երկարակեցության նյու-



թական նախադրյալներից մեկը ձեռնարկության տեխնիկական վերազինումն է։ Այն բնորոշվում է արտադրության տեխնիկական մակարդակի, աշխատամիջոցների կատարելագործման աստիճանի և տեխնոլոգիական կոմպլեքս մեթոդների կիրառմամբ։ Արտադրաուժերի զարգացման ժամանակակից փուլում արտադրության վերազինում ասելով հասկանում ենք ո՛չ թե մեքենաների պարզ կիրառումը, այլ ձեռքի աշխատանքի փոխարինումը այնպիսի աշխատանքով, որը բարդ մեքենայի կիրառմամբ հնարավորություն է ընձեռում բնական ռեսուրսները լիակատար օգտագործելու։

Ստեղծելով նոր մեքենաներ, նոր նյութեր, տեխնոլոգիական նոր պրոցեսներ, արտադրության ղեկավարման և կազմակերպման նոր մեթոդներ, տեխնիկական առաջընթացը խոշոր փոփոխություններ է մտցնում արտադրության կառուցվածքում և նպաստում է կենդանի ու առարկայացած աշխատանքային ծախսումների տնտեսմանը։

Մեծ է դրա ներգործությունը նաև ժողովրդի կենսամակարդակի բարձրացման վրա. այն արտացոլվում է ո՛չ միայն արտադրական ծախսումների տնտեսման և լրացուցիչ զուտ եկամտի ստացման, այլև կյանքի նոր պահանջների առաջացման, աշխատողների ազատ ժամանակի ավելացման, աշխատանքի պայմանների բարելավման և նոր գիտելիքների ձեռքբերման մեջ։ Գիտատեխնիկական առաջընթացը կարևոր նշանակություն ունի նաև սոցիալիստական արտադրահարաբերություններում նյութական պայմանների բարելավման բնագավառում։

Գիտա-տեխնիկական պրոգրեսը սոցիալիզմի պայմաններում ոչ այլ ինչ է, քան սոցիալական հարաբերությունների կատարելագործում և արտադրության արդյունավետության բարձրացում։ Դրանում արտացոլվում են տնտեսության զարգացման, արտադրամիջոցների և աշխատուժի ընդլայնված վերարտադրության առաջավոր տենդենցները։

Թեև գիտա-տեխնիկական պրոգրեսը մեր հանրապետության մեքենաշինական ձեռնարկություններում իրականացվում է բարձր տեմպերով և իր մեծ ներդրումն ունի արտադրության արդյունավետության բարձրացման մեջ, այնուհանդերձ, չի կարելի ասել, որ դրա պոտենցիալ հնարավորություններն օգտագործվում են լրիվ։ Նշենք, որ այժմ գործող տնտեսական լծակներն ու խթանման միջոցները դեռ բավարար չափով չեն նպաստում նոր տեխնիկայի ներդրման մասշտաբների ընդլայնմանը, քանի որ դրանց իրացման ժամանակ լինում են լրացուցիչ ծախսեր, որոնք ժամանակավորապես իջեցնում են ձեռնարկության տնտեսական գործունեության գնահատող ցուցանիշների մակարդակը։

Տնտեսագիտությունը կոչված է հետազոտելու տնտեսության զարգացման օրինաչափություններն ու առաջադրելու առավելագույն ռացիոնալ մեթոդներ, գիտատեխնիկական պրոգրեսը բարձր արդյունավետությամբ վարելու համար։

Ա. Խ. ՆԱԶԱՐՅԱՆ
Ս. Մ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐ

# ՀԿԿ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆԸ ԿՈԼԵԿՏԻՎ ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅԱՆ ԱՍՊԱՐԵԶՈՒՄ

Ա. Ա. ՍԱԴԱՂՅԱՆ
Պատմական գիտությունների թեկնածու

Կոլեկտիվիզմի, դեմոկրատիզմի, կուսակցության անդամների հավասարության ցայտուն օրինակներ տվել են Մարքսն ու Էնգելսն իրենց ողջ գործունեության ընթացքում, մասնավորապես I Ինտերնացիոնալի ժամանակաշրջանում։

Վ. Ի. Լենինը պատմական նոր պայմաններում զարգացրեց կուսակցության կոլեկտիվ ղեկավարման մասին Մարքսի և Էնգելսի ուսմունքը։ Իր բազմաթիվ աշխատություններում նա համոզիչ կերպով հիմնավորեց, որ կուսակցության ղեկավարման կոլեկտիվ սկզբունքը նրա գործունեության հաջողության վճռական պայմանն է։ Վ. Ի. Լենինը սովորեցնում էր, որ կուսակցական ղեկավարությունը պետք է հենվի մարքսիզմի գրանիտե հիմքի, լայն մասսաների փորձի, գիտելիքների, նախաձեռնության վրա, որ կուսակցության որոշումները պետք է լինեն կոլեկտիվի ստեղծագործական արդյունքը։

Կուսակցական կոլեկտիվ ղեկավարության հիմքում ընկած է կոմունիստական կուսակցության կազմակերպական կառուցվածքի գլխավոր սկզբունքը՝ դեմոկրատական ցենտրալիզմը, որն ունի երկու կողմ՝ ցենտրալիզմ և լայն ներկուսակցական դեմոկրատիա։ Ցենտրալիզմը բխում է բանվոր դասակարգի և նրա առաջավոր ջոկատի համախմբվածության օբյեկտիվ անհրաժեշտությունից, դասակարգային պայքարի բնույթից և օրինաչափությունից, պրոլետարիատի հեղափոխական կուսակցության բարձրագույն նպատակից։

Այն հանգամանքը, որ կուսակցության ղեկավարությունն իրականացվում է միասնական կենտրոնից, հնարավորություն է ընձեռում կուսակցության ամբողջ աշխատանքը ենթարկել միասնական կամքի, նրա քաղաքականությանը և պրակտիկ գործունեությանը տալ միասնական ուղղություն և, ելնելով կոնկրետ խնդիրներից, ավելի նպատակահարմար օգտագործել կուսակցական ուժերը։ Ահա թե ինչու, շնորհիվ ցենտրալիզմի, կուսակցությունն ի վիճակի է իր միլիոնավոր անդամների ուժերը կենտրոնացնել ցանկացած և ավելի կարևոր բնագավառում։

Հենվելով Վլադիմիր Իլյիչ Լենինի ամենահաղթ ուսմունքի վրա և իրագործելով ՍՄԿԿ ցուցումները՝ Հայաստանի կոմունիստական կուսակցությունը, նրա շրջկոմները, քաղկոմները և սկզբնական կազմակերպությունները մեր ուսումնասիրած ժամանակաշրջանում (1959—1971 թթ.) զգալի աշխատանք են կատարել ներկուսակցական դեմոկրատիայի հետագա զարգացման և կոլեկտիվ ղեկավարության լենինյան սկզբունքների իրագործման ասպարեզում։

Կոմունիզմի կառուցման խնդիրները, դրանց լուծման գործում աշխատավորների նախաձեռնության ու ակտիվության զարգացումը հրամայաբար պահանջում էին կատարելագործել ժողովրդական տնտեսության կուսակցական ղեկավարության մեթոդներն ու ձևերը, բարձրացնել կուսակցական-կազմակերպական ու գաղափարական աշխատանքի մակարդակը։ Հայաստանի կոմկուսակցության Կենտկոմը, քաղկոմները, շրջկոմները և սկզբնական կազմակերպությունները իրենց կազմակերպական ու քաղաքական աշխատանքով գլխավորեցին յոթնամյակի պլանների կատարման համար ծավալված համաժողովրդական շարժումը, համախմբեցին աշխատավորության ուժերը կոմունիզմի կառուցման խնդիրներն իրականացնելու համար։

Ամենից առաջ մեծ ուշադրություն նվիրվեց ներկուսակցական դեմոկրատիայի ու կոլեկտիվ ղեկավարության սկզբունքները կյանքում իրագործելու վրա։ ՀԿԿ Կենտկոմի, քաղկոմ-շրջկոմների պլենումներում, բյուրոների նիստերում, կուսակցական ու սովետական ակտիվի ժողովներում սիստեմատիկաբար քննարկվում էին արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի, գյուղատնտեսության, կուլտուրական շինարարության և այլ բնագավառների կենսական հարցեր, կոլեկտիվ քննարկման միջոցով բացահայտվում աշխատանքում եղած թերություններն ու բացերը և կոնկրետ միջոցներ ձեռնարկվում դրանք վերացնելու համար։ Կուսակցական ղեկավարության կոլեկտիվությունն ապահովելու և ներկուսակցական դեմոկրատիան զարգացնելու նպատակով, իբրև կանոն, հարցերի նախապատրաստման, միջոցառումների մշակման, որոշումների ընդունման և դրանց իրականացման գործում լայնորեն ներգրավվում էին ՀԿԿ Կենտկոմի, քաղկոմների և շրջկոմների անդամներն ու թեկնածուները, վերստուգիչ հանձնաժողովի անդամները, կուսակցական և սովետական ակտիվը։

Ներկուսակցական դեմոկրատիայի և կոլեկտիվ ղեկավարության զարգացման ու արմատավորման կարևոր պայմաններից է կուսակցական ժողովների, քաղկոմ-շրջկոմների բյուրոների, պլենումների և կուսակցական ակտիվների ժամանակին հրավիրումը և համապատասխան հարցերի գործարար քննարկումը։ Կուսակցության XXII համագումարից հետո ՀԿԿ բազմաթիվ քաղկոմ-շրջկոմներ և սկզբնական կուսկազմակերպություններ այս ասպարեզում նշանակալից քայլեր կատարեցին։ Նրանք քննարկում էին այնպիսի հարցեր, ինչպիսիք են արտադրության մեջ կոմունիստների ավանգարդային դերի ապահովումը, կոմունիստների կողմից ՍՄԿԿ կանոնադրության պահանջների կատա-

րումը, երիտասարդ կոմունիստների հետ տարվող աշխատանքը, կադրերի տեղաբաշխումը և դաստիարակումը, կուսակցական խմբերի գործունեությունը և այլն։

Կոլեկտիվ ղեկավարության, ներկուսակցական դեմոկրատիայի հետագա զարգացման գործում հսկայական նշանակություն ունեցավ ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1964) պլենումը, որը դատապարտեց լենինիզմին խորթ՝ հասարակության կառավարման գիտական մոտեցումը սուբյեկտիվիստական և քմահաճ որոշումներով, վարչարարությամբ ու տնտեսական օրգանների մտացածին «վերակառուցումներով» նենգափոխելու փորձերը։ Պլենումը քննարկեց արդյունաբերական ու գյուղատնտեսական մարզային, երկրամասային կուսակցական կազմակերպությունների և սովետական օրգանների միավորման հարցը և, հաշվի առնելով տեղական կուսակցական ու սովետական օրգանների, կոմունիստների և աշխատավորների կարծիքը, որոշեց միավորել դրանք։

Կուսակցական օրգանների վերակառուցումը մեծապես նպաստեց հանրապետության կուսկազմակերպությունների կազմակերպական-քաղաքական աշխատանքի բարելավմանը, բարձրացրեց նրանց մարտունակությունը և, որ կարևոր է, լայն հնարավորություններ ընձեռեց է՛լ ավելի զարգացնելու կոլեկտիվ ղեկավարության և ներկուսակցական դեմոկրատիայի լենինյան սկզբունքները ինչպես կուսակցական ղեկավար օրգաններում, այնպես էլ տեղական կազմակերպություններում։

ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան և նոյեմբերյան պլենումների որոշումները դարձան կուսկազմակերպությունների աշխատանքի ծրագիր, ուժեղացրին նրանց գործունեությունը տնտեսական և կուլտուրական շինարարության ղեկավարման ասպարեզում։

Կուսկազմակերպությունների, ինչպես նաև սովետական ժողովրդի կյանքում կարևոր նշանակություն ունեցավ ՍՄԿԿ XXIII համագումարը, որը հանդիսացավ կոլեկտիվ ղեկավարության և ներկուսակցական դեմոկրատիայի ցայտուն դրսևորում։ Համագումարի նյութերը և որոշումները, այդ թվում նաև ՍՄԿԿ կանոնադրության մեջ կատարված փոփոխություններն ուղղված էին կոլեկտիվ ղեկավարության սկզբունքների և կուսակցական կյանքի նորմերի հետագա զարգացմանը։ Դրանք հիմնականում հանգում են այն բանին, որ ավելի բարձրացվի կուսակցության անդամի կոչումը, նրա պատասխանատվությունը իր կազմակերպության և ամբողջ կուսակցության գործերի վիճակի համար, կուսակցության ղեկավար օրգանների, ինչպես նաև սկզբնական կուսկազմակերպությունների դերը, զարգացվի ներկուսակցական դեմոկրատիան, կուսկազմակերպությունների և կոմունիստների ստեղծագործական նախաձեռնությունն ու ակտիվությունը։

ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան և սեպտեմբերյան (1965) պլենումների որոշումները նոր խնդիրներ առաջադրեցին կուսակցական ղեկավարությունը կատարելագործելու համար։ ՀԿԿ Գորիսի շրջանային կոմիտեն և սկզբնական կուսկազմակերպություններն իրենց գործունեությունը վերակառուցեցին նոր խնդիրներին ու պահանջներին համապատասխան։ Ի տարբերություն անցյալի, երբ կուսակցական ապարատի աշխատողները, շրջկոմի անդամները, կուսակցական ակտիվը մեծ մասամբ զբաղվում էին բյուրոյի նիստերում, պլենումներում քննարկվելիք բազմաթիվ հարցերի նախապատրաստման համար որոշումներ ու գրագրություններ կազմելով, շրջկոմի բյուրոյի նիստերում, պլե-



նումներում սկսեցին քննարկվել անհամեմատ քիչ, բայց կենսական հարցեր։

Հաշվի առնելով աշխատանքային թեքումը, գործարարությունը, մասնագիտական և քաղաքական պատրաստականությունը, շրջկոմի անդամները բաժանված են մի քանի խմբերի, որոնցից յուրաքանչյուրը, համաձայն շրջկոմի աշխատանքային պլանի, հանգամանորեն ուսումնասիրում է այս կամ այն հարցը, մշակում արժեքավոր առաջարկություններ և ներկայացնում բյուրոյի քննարկմանը։ Օրինակ, 1966 թ. շրջկոմին հայտնի դարձավ, որ շինարարության տարեկան պլանների կատարումը վտանգի տակ է։ Կուսշրջկոմի մի խումբ անդամներ մանրամասն ուսումնասիրեցին շինարարության ընթացքը։ շինարարների հետ ստուգեցին տեխնիկայի օգտագործման, շինանյութերի մատակարարման վիճակը և կազմեցին մասնագիտորեն հիմնավորված, գործարար որոշման նախագիծ։ Այդ նախագծին, մինչև շրջկոմի բյուրոյում քննարկելը, ծանոթացան նաև շինարարները։ Հարցի քննարկմանը մասնակցեցին նաև շրջանի շինարարական կազմակերպության, ջրային տնտեսության և գյուղական շինարարության մինիստրությունների և Հայկոոպի ներկայացուցիչները։

Շրջկոմի բյուրոյում կոլեկտիվ քննարկման շնորհիվ ընդունվեց կոնկրետ որոշում, որի կենսագործմանը ուշի-ուշով հետևեց շրջկոմը։ Արդյունքը եղավ այն, որ շինարարական աշխատանքների տարեկան պլանը կատարվեց 10 օր շուտ։

ՀԿԿ Ախուրյանի շրջկոմը, ղեկավարվելով ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1965) պլենումի որոշումներով, ներկուսակցական աշխատանքի բարելավման նպատակով մշակեց կոնկրետ միջոցառումներ։ Պլենումի որոշումներն արժանացան շրջանի աշխատավորության հավանությանը և նպաստեցին նրանց քաղաքական ու աշխատանքային ակտիվության բարձրացմանը։ Շրջանային կուսակցական ակտիվի ժողովից հետո կուսշրջկոմը կազմակերպական և քաղաքական ակտիվ գործունեություն ծավալեց։ Բոլոր կուսկազմակերպությունները քննարկեցին մարտյան պլենումի որոշումները և ընդունեցին արտադրության հետագա կատարելագործմանն ուղղված համապատասխան որոշումներ։

Շրջկոմը շրջսովետի գործկոմի և արտադրական վարչության օգնությամբ ճշգրտեց յուրաքանչյուր տնտեսության մոտակա տարիների ռեալ հնարավորությունները և միջոցառումներ մշակեց դրանց իրականացման համար։ Կոլտնտեսությունների և սովխոզների 684 կոմունիստներից միայն 131-ը կամ 14,6 տոկոսն էր աշխատում անասնապահության բնագավառում։ Շրջկոմը վերանայեց կոմունիստների ուժերի տեղաբաշխումը և անասնապահական ֆերմաներն ամրապնդեց կուսակցական կադրերով։

Հարցերի քննարկման, որոշումների ընդունման կոլեկտիվությունն անխզելիորեն կապված է հանձնարարված գործի համար անձնական պատասխանատվության հետ։ «Համենայն դեպս և առանց բացառության բոլոր հանգամանքներում,— գրել է Վ. Ի. Լենինը,— կոլեկտիվությանը պետք է զուգակցված լինի յուրաքանչյուր անձի անձնական պատասխանատվության ամենաճշգրիտ սահմանմանը՝ ճշտիվ որոշված գործի համար» (Երկեր, հ. 99, էջ 537)։

Վ. Ի. Լենինը բազմիցս նախազգուշացրել է, որ կոլեկտիվության ամեն մի չափազանցում ու խեղաթյուրում հանգում է քաշքշուկի, անպատասխանատվության։ Իսկ կոլեկտիվության վկայակոչումով քողարկված անպատասխանատվությունը նա համարում էր ամենավտանգավոր չարիքը, որը սովորաբար հանգեցնում է ոչ միայն լուրջ սխալների, այլև արգելակում է կադրերի աճը։

Հետևաբար, ղեկավարման կոլեկտիվությունը և ներկուսակցական դեմոկրատիան անբաժան են միմյանցից:

Կուսկազմակերպությունների և նրանց ղեկավար օրգանների կոլեկտիվ ղեկավարությունը բնութագրող հիմնական հատկանիշներն են՝ պլենումների, կոնֆերանսների, բյուրոների նիստերի, ժողովների սիստեմատիկ հրավիրումը, Կենտկոմի բյուրոյի, նրա քարտուղարության, շրջկոմների, քաղկոմների, կուսկոմիտեների, սկզբնական կուսկազմակերպությունների բյուրոների համերաշխ աշխատանքը, այդ օրգաններում անմիջապես արտադրության մեջ աշխատող բանվորների ու կոլտնտեսականների ընդգրկումը, հարցերի կոլեկտիվ նախապատրաստումն ու քննարկվող հարցերի վերաբերյալ նյութերի նախօրոք ծանոթացումը, կոլեկտիվ օրգանի անդամների պարտականությունների ճշգրտումը և կոնկրետացումը, հարցերի գործարար քննարկումը և այլն:

Ուսումնասիրված ժամանակաշրջանում զգալի չափով բարելավվել է Հայաստանի կոմկուսի շրջկոմների ու քաղկոմների պլենումների, բյուրոների նիստերի, սկզբնական կազմակերպությունների ժողովների ու բյուրոների նիստերի ժամանակին հրավիրման և հարցերի քննարկման գործը:

Սակայն որոշ կուսկոմիտեներ և սկզբնական կազմակերպություններ, դեռևս չեն բարձրացրել կոլեկտիվ օրգանների՝ պլենումների, ժողովների, բյուրոների նիստերի դերը կոմունիստական շինարարության ներկա պահանջներին համապատասխան: 1966 թ. ընթացքում Արտաշատի շրջանի Այգեստանի կուսկազմակերպության 12 ժողովներում և բյուրոյի 9 նիստերում կուսկազմակերպության 41 անդամներից 13-ը ելույթ է ունեցել միայն մեկ, իսկ 14-ը՝ ոչ մի անգամ: Ժողովներում հիմնականում հանդես են եկել կոլտնտեսության նախագահը, իսկ առանձին դեպքերում՝ գյուղատնտեսության մասնագետները: Մուղանի կոլտնտեսության կուսկազմակերպության անդամների 50 տոկոսը ելույթ չի ունեցել ժողովներում: Այստեղ 320 կոլտնտեսականներից միայն 196-ն էր կատարել աշխօրերի պարտադիր մինիմումը: Խիստ իջել էր բոստանա-բանջարանոցային կուլտուրաների բերքատվությունը: Այսպես, եթե 1965 թ. միջին բերքատվությունը կազմել էր հեկտարից 200 ցենտներ, ապա 1966 թ.՝ 76 ցենտներ[1]:

Որոշ կուսկազմակերպություններ, ժողովներում քննարկելով այս կամ այն հարցը, կոլեկտիվ կերպով չեն մշակում խելացի, գործին օգնող որոշումներ: Այսպես, 1968 թ. Արտաշատի շրջանի Թազագյուղի սովխոզի կուսկազմակերպությունը, ժողովում քննարկելով գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման հարցը, որոշել է. «Հանձնարարել ինժեներ-մեխանիկ Գ. Գալստյանին տրակտորային բրիգադայի տրակտորները և մեքենաները կանգնեցնել ըստ հերթականության և համարակալված»: Կամ, հունվարի 12-ին անասնապահական ֆերմայի աշխատանքի վերաբերյալ ընդունել է հետևյալ որոշումը. «Պարտավորեցնել ֆերմայի բրիգադիր Գ. Գրիգորյանին այսուհետև անասունները կապել գոմում և կերը տալ մսուրի մեջ»[2]: Հասկանալի է, որ կուսակցական ժողովներում նման ձևով հարցերի քննարկումը ոչ միայն չի օգնում գործին, այլև նսեմացնում է կոլեկտիվ օրգանի դերը:

---

1 Տե՛ս ՀԿԿ Արտաշատի շրջկոմի 1967 թ. հունվարի 20-ի բյուրոյի նիստի արձանագրությունը:

2 Տե՛ս ՀԿԿ Արտաշատի շրջկոմի պլենումի 1968 թ. օգոստոսի 9-ի նիստի աղագրական հաշվետվությունը:



Որոշ քաղկոմներ ու շրջկոմներ սկսել են սիստեմատիկաբար ինֆորմացիա տալ պլենումի անդամներին իրենց գործունեության և պլենումների ու կոնֆերանսների որոշումների կատարման մասին: Սակայն, ինչպես ցույց են տալիս հետազոտությունները, մի շարք շրջկոմներ ու քաղկոմներ չեն կատարում կանոնադրական այդ պահանջները: Այսպես, 1966—1967 հաշվետու տարում հանրապետության 43 շրջկոմներից ու քաղկոմներից միայն 10-ն են ինֆորմացիա տվել իրենց անդամներին ընդունած որոշումների կատարման մասին:

Կոլեկտիվ ղեկավարության և ներկուսակցական դեմոկրատիայի ծավալման նշանաբանով անցավ Հայաստանի կոմկուսի XXV համագումարը, որը տեղի ունեցավ 1971 թ. փետրվարի 25—27-ը: Համագումարը բազմակողմանիորեն վերլուծեց անցած հինգ տարում կուսկազմակերպությունների և հանրապետության աշխատավորների ծավալած գործունեությունը կոմունիստական շինարարության, ժողովրդական տնտեսության, գիտության ու մշակույթի զարգացման ասպարեզներում:

Կոլեկտիվ ղեկավարության լենինյան սկզբունքների իրականացման գործում կարևոր նշանակություն ունի կուսակցական, սովետական և տնտեսական օրգանների ղեկավարների սերտ կապը աշխատավորական կոլեկտիվների հետ, նրանց սիստեմատիկ ելույթները բանվորական և կոլտնտեսային ժողովներում, տարբեր խորհրդակցություններում և կոնֆերանսներում: Ընդգծելով աշխատավորների հետ կապի հետագա է՛լ ավելի ամրապնդման, յուրաքանչյուր կոլեկտիվում քաղաքական-մասսայական աշխատանքի բարելավման անհրաժեշտությունը, ՍՄԿԿ XXIII համագումարը խնդիր դրեց՝ ապահովել կուսակցական, պետական, տնտեսական և հասարակական ղեկավար գործիչների պարբերաբար ելույթները աշխատավորների առջև՝ մեր երկրի ներքին և արտաքին քաղաքականության, կուսակցական, սովետական օրգանների, հասարակական կազմակերպությունների աշխատանքի և այլ հարցերի մասին: Այդպիսի պահանջ է առաջադրվում նաև տեղական սովետների, ժողովրդական կրթության, առողջապահության, առևտրական, կոմունալ տնտեսության ու կենցաղսպասարկման ձեռնարկությունների ղեկավարներին:

Ղեկավարման կոլեկտիվությունը կարևոր նշանակություն ունի նաև կադրերի ընտրության ու տեղաբաշխման լենինյան սկզբունքների իրականացման գործում:

Վերջին տարիներին կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմն ընդունել է բազմաթիվ որոշումներ, որտեղ կուսկազմակերպությունների ուշադրությունը հրավիրվել է կուսակցական, սովետական, տնտեսական ղեկավար կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակման գործում եղած թերություններն ու սխալները խպառ վերացնելու վրա: Դրանց թվին են պատկանում, օրինակ, «Շինարարությունում ղեկավար և ինժեներա-տեխնիկական կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության ասպարեզում Կիրգիզական ՍՍՀ կուսկազմակերպությունների աշխատանքի մասին» (1965 թ.) որոշումը: Այդ որոշման մեջ նշված է, որ «Անհրաժեշտ է խստորեն ղեկավարվել լենինյան այն դրույթներով, ուր ղեկավար աշխատանքում կադրերի առաջ քաշման ժամանակ կուսակցական օրգանները պետք է հաշվի առնեն նրանց բարեխղճությունը, քա-

ղաքական հասունությունը, գործիմացությունը, կազմակերպական ընդունակությունները։ Ըստ որում, գլխավոր ուշադրությունը դարձնել կենդանի աշխատանքում նրանց ստուգմանը, գիտենալ կադրերի մասին կոմունիստների և աշխատանքի ընկերների կարծիքը» («Справочник партийного работника», вып. 4, 1966, стр. 390)։

Ուսումնասիրված ժամանակաշրջանում կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության վերաբերյալ բազմաթիվ հարցեր են քննարկել նաև ՀԿԿ Կենտկոմը, քաղկոմ-շրջկոմները։ Դրական աշխատանքի հետ միասին զգալի թերություններ ու սխալներ կան կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության լենինյան սկզբունքների իրականացման գործում։ Շատ քաղկոմներ ու շրջկոմներ, ինչպես նշեց ՀԿԿ XXIV համագումարը, խախտում են կադրերին ըստ նրանց քաղաքական ու գործնական հատկանիշների ընտրելու և տեղաբաշխելու կուսակցական սկզբունքը։ Հաճախ ղեկավար պոստերի են առաջ քաշվում այնպիսի մարդիկ, որոնք չունեն անհրաժեշտ փորձ ու գիտելիքներ։ Այդ էր պատճառը, որ 1966 թ. տվյալներով, չնայած մասնագետների մեծ քանակին, այնուամենայնիվ, հանրապետության շատ կոլտնտեսություններում նախագահների համարյա 40 և սովխոզների դիրեկտորների 12 տոկոսը ոչ միայն մասնագիտական, այլև միջնակարգ կրթություն չուներ։ Վիճակը բարվոք չէր նաև արդյունաբերությունում և շինարարությունում։ Այսպես, Երևանի արդյունաբերական ձեռնարկությունների գլխավոր տեխնոլոգների, կոնստրուկտորական բյուրոների պետերի 15,4 տոկոսը տեխնիկներ էին, 18,2-ը՝ առանց տեխնիկական կրթության պրակտիկներ, ինժեներական կազմի 30,3 տոկոսը միջնակարգ-մասնագիտական կրթություն ուներ, իսկ 24 տոկոսը պրակտիկներ էին։ Կամ 1966—1968 թթ. փոխվել են գյուղատնտեսական շինարարության մինիստրության տրեստների պետերը, 39 շինվարչությունների և շարժական մեքենայացված շարասյուների պետերն ու գլխավոր ինժեներները, որոնցից 23-ը՝ աշխատանքները չգլխավորելու համար։

Ավելին, մինիստրության՝ արտադրության 1300 կազմակերպիչներից, ավագ աշխղեկներից և այլ ինժեներա-տեխնիկական աշխատողներից միայն 450-ը կամ 35 տոկոսը ուներ բարձրագույն կրթություն, իսկ 90 գլխավոր և ավագ հաշվապահներից՝ 5-ը։ Այդ այն ժամանակ, երբ ինժեներների թիվը հանրապետությունում 1959 թ. համեմատությամբ 1965 թ. ավելացել էր 2 անգամ և 6900-ից հասել 13.700-ի։

Կադրերի ընտրության և տեղաբաշխման գործում մյուս գլխավոր թերությունն այն էր, որ մի շարք օրգաններում անտեսվել է երիտասարդ կադրերին ղեկավար աշխատանքում լայնորեն ներգրավելու լենինյան սկզբունքը, որի պատճառով որոշ աշխատողներ, չնայած իրենց պատկառելի տարիքին, միշտ մնացել են նոմենկլատուրային պոստերում։

1968 թ. տվյալներով կենցաղսպասարկման մինիստրության 388 ղեկավար աշխատողներից միայն 89-ը ուներ բարձրագույն և 35-ը՝ միջնակարգ մասնագիտական կրթություն։ Կամ կենցաղսպասարկման շրջանային 36 կոմբինատների գլխավոր ինժեներներից ոչ մեկը ինժեներական բարձրագույն կրթություն չուներ։ Մինիստրության սիստեմի ղեկավար և նյութական պատասխանատու պաշտոններում կային մեծ թվով իրավաբաններ, զոոտեխնիկներ, գյուղատնտեսներ, մանկավարժներ, անասնաբույժներ։



Նկատի ունենալով այդ հանգամանքը՝ ՀԿԿ XXIV համագումարը միանգամայն ճիշտ բնութագրեց, որ մեզ մոտ, ցավոք սրտի, մի շարք կուսակցական, սովետական ու տնտեսական օրգաններում կադրերն ընտրելիս և առաջ քաշելիս ներփակվում են աշխատողների նեղ, վաղուց ի վեր ստեղծված շրջանակում, հաճախ մի պաշտոնից մյուսն են փոխադրում այնպիսի մարդկանց, որոնք ետ են մնացել կյանքից, չեն կատարում իրենց վրա դրված պարտականությունները (տե՛ս Ա. Ե. Քոչինյան, ՀԿԿ Կենտկոմի հաշվետվությունը ՀԿԿ XXIV համագումարում, էջ 81)։

Ինչպես Սովետական Միության կոմունիստական կուսակցության, սովետական ողջ ժողովրդի, այնպես էլ Հայաստանի կոմունիստական կուսակցության և հայ ժողովրդի կյանքում կարևոր իրադարձություն էր ՍՄԿԿ XXIV համագումարը, որն ամբողջ աշխարհի առաջ ցուցադրեց 14 միլիոնանոց լենինյան կուսակցության կոլեկտիվ իմաստությունը և կամքի միասնությունը, սովետական ժողովրդի ստեղծագործական հզոր ուժը, կոմունիստական հասարակության կառուցման գործում նոր հաղթանակներ ձեռք բերելու կուսակցության և ժողովրդի ամուր վճռականությունը։ Համագումարը նշեց, որ անցած հնգամյակը ՍՄԿԿ հետագա աճի, մասսաների հետ նրա կապի ամրապնդման, սովետական հասարակության կյանքում նրա ղեկավար դերի է՛լ ավելի բարձրացման ժամանակաշրջան էր։ Կուսակցության XXIV համագումարի որոշումներն ու փաստաթղթերը՝ Կենտկոմի գործունեության մասին Լ. Ի. Բրեժնևի, ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման նոր հնգամյակի դիրեկտիվների վերաբերյալ Ա. Ն. Կոսիգինի զեկուցումները, ինչպես նաև Կենտկոմի վերստուգիչ, համագումարի մանդատային հանձնաժողովների զեկուցումները, պատգամավորների ելույթներն ամբողջովին տոգորված են կոլեկտիվ ղեկավարության և ներկուսակցական դեմոկրատիայի զարգացման ոգով։

Այսպիսով, կուսակցական կյանքի նորմերի անշեղ պահպանումը, կոլեկտիվ ղեկավարության և ներկուսակցական դեմոկրատիայի սկզբունքների իրականացումը, կուսակցական օրգանների և նրանց աշխատողների պատասխանատվության բարձրացումը, առողջ, սկզբունքային քննադատության և ինքնաքննադատության զարգացումը կուսակցության գաղափարական, կազմակերպական ամրապնդման անհրաժեշտ պայմանն են։ Լենինն ուսուցանում է՝ ընտրովի օրգանի անդամները «...պետք է կազմեն միաձուլված մի խումբ», որը «նկատի չառնելով անձնավորությունները» պետք է հետևի, որպեսզի ոչ-ոքի հեղինակությունը չկարողանա խանգարել նրանց հարցապնդում անելու, ստուգելու փաստաթղթերը և առհասարակ հասնելու անպայման իրազեկության և գործերի խորագույն կանոնավորության» (Երկեր, հ. 33, էջ 577)։

Կոլեկտիվ ղեկավարության և ներկուսակցական դեմոկրատիայի զարգացման լենինյան սկզբունքների անշեղ իրագործումը կուսակցության դերի աճի գլխավոր պայմանն է, կոմունիստական հասարակության կառուցման խնդիրների հաջող կատարման երաշխիքը։

## Նշանավոր ՏԱՐԵԹՎԵՐ

Լ. Ա. ՍԱՐԴԱՐՅԱՆ

# ՄԵՐ ԲԱՐԲՅՈՒՍԸ
(1873—1973)

Փարիզի Պեր-Լաշեզ գերեզմանատանը, կոմունարների պատի տակ, իր վերջին հանգրվանն է գտել XX դարի ֆրանսիական գրականության ամենապայծառ դեմքերից մեկը՝ Հանրի Բարբյուսը: Գերեզմանին բարձրանում է վարդագույն գրանիտից մի համեստ հուշարձան, որի քարը 1935 թ. ուղարկել են Սվերդլովի բանվորները: Հուշարձանի վրա փորագրված է.

Ֆրանսիայի բանվոր դասակարգի բարեկամին, ֆրանսիական ժողովրդի պանծալի զավակին, բոլոր երկրների աշխատավորների բարեկամին, ֆաշիզմի և իմպերիալիստական պատերազմի դեմ աշխատավորների միասնական ճակատի ստեղծման նախաձեռնողին— ընկեր Հանրի Բարբյուսին:

**ՈՒՐԱԼԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐ**

Սովետական Միության բոլոր ժողովուրդների, հատկապես բանվոր դասակարգի սիրո ու հարգանքի վկայությունն է այդ կոմունիստ գրողի, մեծ ինտերնացիոնալիստի ու մարտընչող հրապարակախոսի նկատմամբ, որի անունը դարձել էր ֆաշիզմի ու իմպերիալիստական պատերազմի դեմ մղվող համաժողովրդական պայքարի խորհրդանիշ:

Պատահական չէ, որ իշխանության գլուխ անցնելուց ընդամենը մի քանի ամիս անց, 1933 թվականի մայիսի 10-ին, հիտլերականները Բեռլինի համալսարանի հրապարակում այրում էին Բարբյուսի գրքերը, իսկ II համաշխարհային պատերազմի ժամանակ, երբ Ֆրանսիան օկուպացված էր, արգելում էին ծաղիկներ դնել գրողի շիրմին:



Հանրի Բարբյուսի աշխարհայացքը ձևավորվեց առաջին համաշխարհային պատերազմի դժոխային սարսափների մեջ, նոր դարաշրջանի գալուստն ավետող Հոկտեմբերյան հեղափոխության նախօրյակին, մարդկության պատմության ամենաառաջ, նգնաժամային ժամանակահատվածում: Պատերազմի տարիներին Բարբյուսը վճռականորեն հրաժարվեց պացիֆիզմից և հանգեց պատերազմը ժողովուրդների կյանքից իսպառ վերացնելու հեղափոխական տեսակետին: 1914 թվականին, և դեռ շատ ավելի վաղ, Բարբյուսն իբրև բանաստեղծ և արձակագիր, լայնորեն հայտնի էր Ֆրանսիայի գրական շրջաններում: Սակայն, որքան էլ հետաքրքիր էին նրա վաղ շրջանի ստեղծագործությունները (**Մուրացիկները** (1903 թ.), **Դժոխք** (1908 թ.) վեպերը, **Մենք** (1914 թ.) պատմվածքների ժողովածուն), դրանք մնացին լոկ որպես նախերգանք պատերազմին ու հեղափոխությանը նվիրված՝ գրողի լավագույն վեպերի:

Զինվորական ծառայությունից ազատված Բարբյուսն իր ընկերների հետ կամավոր մեկնում է ռազմաճակատ և տարի ու կեսից ավելի տեսնում այն ոճիրն ու տառապանքը, որի մեջ մարդկությանը նետել էր իմպերիալիզմը: Տենդագին արագությամբ, ընդամենը մի քանի ամսում, Բարբյուսը գրում է համաշխարհային ճանաչում ստացած նշանավոր **Կրակ** վեպը: 1916 թվականի օգոստոսի 3-ին վեպն սկսեց տպագրվել «Էվր» թերթում, իր վրա գրավելով հազարավոր ընթերցողների ուշադրությունը, իսկ դեկտեմբերին գիրքը լույս ընծայեց «Ֆլամարիոն» հրատարակչությունը: Հասարակական կարծիքի ճնշման տակ վեպն արժանացավ Գոնկուրյան մրցանակի: Սովետական Ռուսաստանում **Կրակը** լույս տեսավ 1919 թ., Մ. Գորկու հայտնի առաջաբանով: Գորկին ընդգծում էր, որ **Կրակը** այն գրքերից է, որոնք ամենայն պարզությամբ և անողոքաբար պատմում են այն մասին, թե ինչպե՛ս են կոտորում իրար տարբեր ազգերի մարդիկ, ինչպե՛ս են կործանվում պալատները, տաճարներն ու շենքերը, հիմնահատակ այրվում քաղաքներն ու գյուղերը: Պատերազմը նկարագրվում է որպես ծանր ու կեղտոտ գործ, որպես կատարյալ մղձավանջ: Գիրքը հագեցած է ճշմարտության դաժան պոեզիայով: Գլխավոր հերոսն անհատը չէ, այլ կոլեկտիվը— ժողովուրդը, որն անխուսափելիորեն հանգում է իմպերիալիստական պատերազմը բացառելու գաղափարին և ալիքները շուռ տալիս համաշխարհային այդ սպանդն սկսած տիրող դասակարգերի դեմ: Վեպի հենց առաջին էջերն ընթերցողին վարակում են հակապատերազմական ու հեղափոխական տրամադրությամբ:

Այս մեծ ողբերգության հերոսները— Պարադին, Վոլպատը, Տիրետը, Բլերը, Բերտրանը, Բարկը և մյուսները, այդ ազնիվ ու քաջ մարդիկ, ընկնում են անհավասար կռվում: Բարբյուսն իրավամբ գտնում է, որ գալիք սերունդների աչքում այդ փոթորկոտ տարին պիտի երևա որպես մթին մի առեղծված, որպես զարհուրելի մղձավանջ:

Ըստ էության Բարբյուսի հերոսների տրամադրությունները համահունչ էին ռուս բոլշևիկների՝ իմպերիալիստական պատերազմը քաղաքացիականի վերածելու մարտական լոզունգին:

Վ. Ի. Լենինը, որ **Կրակը** կարդացել էր դեռ Շվեյցարիայում, արտակարգ բարձր գնահատեց Բարբյուսի ստեղծագործությունը: «Երրորդ ինտերնացիոնալի խնդիրների մասին» նշանավոր հոդվածում նա գրում է. «Ամենուրեք մասսաների մեջ նկատելի հեղափոխական գիտակցության անմահ մասսայական երևույթի առանձնապես ցայտուն ապացույցներից մեկը կարելի է ընդունել Հանրի Բարբյուսի վեպերը „Le Feu“ (Կրակը) և „Clarté“ (Պարզություն): Առաջինը թարգմանված է արդեն բոլոր լեզուներով և Ֆրանսիայում տարածված է 230.000 օրինակ: Կատարելապես տգետ, քաղքենու և մասսովիկի գաղափարներով ու նախապաշարմունքներով ամբողջապես ճնշված մարդու հեղափոխական դառնալը, հատկապես պատերազմի ազդեցությամբ՝ ցույց է տրված արտասովոր ուժով, տաղանդով, ճշմարտությամբ» (հ. 29, էջ 631):

Վերադառնալով ռազմաճակատից, Բարբյուսն իր ընկերների՝ Պոլ Վայան-Կուտյուրիեի (հետագայում «Յումանիտեի» խմբագիր), Ռայմոն Լեֆևրի (հեղափոխական, կոմունիստ գրող, հրապարակախոս), Ժորժ Բրյուերի (ֆրանսիական բանվորական շարժման նշանավոր գործիչ) հետ, Ռոմեն Ռոլանի և Անատոլ Ֆրանսի հավանությամբ, 1917 թվականի նոյեմբերի 2-ին հիմնադրում են **Պատերազմի նախկին մասնակիցների հանրապետական ասոցիացիան**, որի գլխավոր նպատակը պատերազմի դեմ մղվող պայքարի հետագա ծավալումն էր՝ «Պատերազմ-պատերազմին» նշանաբանով: 1918 թ. սեպտեմբերի 6—8-ը Լիոնում տեղի ունեցավ ասոցիացիայի առաջին կոնգրեսը, որը որոշեց միավորել բոլոր երկրների նախկին հակառակորդներին ու պատերազմի հաշմանդամներին, ստեղծել պատերազմի նախկին մասնակիցների ինտերնացիոնալ կազմակերպություն. այն ստեղծվեց 1920 թ. մայիսին Ժնե-

վում: Այդ կազմակերպությունը վիթխարի դեր խաղաց միլիտարիզմի դեմ մղվող պայքարի կազմակերպման գործում, կարողացավ միավորել եղբայրասպան պատերազմի մասնակից տարբեր ազգերի զինվորներին ու սպաներին, մեծ չափով նպաստեց պրոլետարիատի միասնության ամրապնդմանը, մանրբուրժուական կեղծ պատրանքներից ու լոզունգներից նրա ձերբազատմանը: 1922 թ. նոյեմբերի 15-ին Լենինը նամակով դիմեց Clarté խմբին:

**«Թանկագի՛ն բարեկամներ.**

**Օգտվում եմ առիթից, որպեսզի հղեմ ձեզ լավագույն ողջույնս: Ես ծանր հիվանդ էի և մի տարուց ավելի է, ինչ չէի կարող տեսնել ձեր խմբի ոչ մի աշխատությունը: Հուսով եմ, որ ձեր** Les anciens combattants **կազմակերպությունը պահպանում է իր գոյությունը և աճում ու ամրանում է ո՛չ միայն թվով, այլև հոգեպես, իմպերիալիստական պատերազմի դեմ մղած պայքարի խորացման և լայնացման իմաստով: Այդ պատերազմի դեմ մղվող պայքարին արժե, որ մարդ նվիրի իր կյանքը, այդ պայքարում պետք է լինել անխնա, նրա պաշտպանության օգտին եղած բոլոր սոփեստությունները պետք է հալածել մինչև ամենավերջին անկյունները:**

**Լավագույն ողջույններ:**

**Ձեր՝ Լենին»:**

1919 թվականին լույս է տեսնում Բարբյուսի **Պայծառություն** „Clarté" վեպը: Նոր ստեղծագործությունն ընդգրկում է ինչպես պատերազմական գործողությունները, նույնպես և թիկունքում տեղի ունեցող իրադարձությունները: Վեպի հիմքում դրված է գեղարվեստական նույն խնդիրը, ինչ **Կրակում**— ժողովրդի հեղափոխական գիտակցության ձևավորումը պատերազմի ազդեցության տակ: Այստեղ, սակայն, դա ցույց է տրված ոչ թե կոլեկտիվի, այլ անհատի էվոլյուցիայի օրինակով:

Վեպը գրված է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության անմիջական ազդեցությամբ: Եվրոպայում փոթորկում էր բանվոր դասակարգի հեղափոխական շարժումը: Միապետական կարգերը խորտակվեցին Գերմանիայում և Ավստրո-Հունգարիայում, 1918 թվականին իշխանությունը սովետների ձեռքն անցավ Հունգարիայում, Բավարիայում, Սլովակիայում: Ծնվում, ձևավորվում և ամրապնդվում էին կոմունիստական ու բանվորական կուսակցությունները:

Գրքի գլխավոր հերոս Սիմոն Պոլենը տառապալի զարգացում է ապրում խավարից դեպի լույսը, իմպերիալիստական պատերազմի և հեղափոխական շարժման ազդեցությամբ նա իրոք պայծառանում է, գտնում իր իսկական տեղը աշխատավոր ժողովրդի ազատագրության համար մղվող պայքարում: Նկատի ունենալով այս վեպը, Վ. Ի. Լենինը գրում էր, որ մասսաների հեղափոխական գիտակցությունն ամենուրեք աճում է, և դրա ակներև նշաններից մեկը „Clarté"-ի հերոսն է, որը պատերազմ գնաց, «լինելով ամենից խաղաղ, համեստ, օրենքին հնազանդ մանր բուրժուա, ֆիլիստեր, քաղքենի» (Երկեր, հ. 29, էջ 643):

Ծանր վիրավոր Պոլենը համոզվում է, որ ՃՇՄԱՐՏՈՒԹՅՈՒՆԸ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ Է, որ պատերազմը հրահրել են ֆինանսական արքաները. պատերազմների վերացման միակ ուղին կապիտալիզմի ոչնչացումն է: Գրքի հերոսները հեղափոխական Տերմիտի ազդեցությամբ հասկանում են, որ պատերազմը ոչ թե պատահական երևույթ է, այլ իմպերիալիստական աշխարհի անխուսափելի հետևանքը: Բարբյուսը կանխատեսում է. քանի դեռ գոյություն ունի իմպերիալիզմը, կպահպանվի և նոր պատերազմի վտանգը, կշարունակվի սպառազինությունների խելագար մրցավազքը, որը կարող է մարդկությանը կործանել: Հումանիստ գրողը միաժամանակ մեծ լավատեսությամբ է նայում ապագային և հավատում, որ թոթափելով մոլորությունների ու նախապաշարմունքների բեռը, մարդկությունը կազատագրվի սոցիալական շահագործումից, և երկրի վրա կհաստատվի խաղաղություն: Վեպի վերջում Սիմոն Պոլենն արդեն ձևավորված սոցիալիստ-ինտերնացիոնալիստ է, որն անհողդողդ հավատում է ճշմարտության հաղթանակին և զինվորագրվում աշխատավորների համաշխարհային արդար հանրապետության ստեղծման համար պայքարող բանակին:

Քսանական թվականները Բարբյուսի ստեղծագործական կյանքի նոր, բարդ ու բեղմնավոր տարիներն էին: Եվրոպայում, մասնավորապես Ֆրանսիայում, հեղափոխական շարժումը վայրէջք էր ապրում, մոլեգնում էր ռեակցիան: Ժողովրդական մասսաների թշվառությունն ու տառապանքը նկարագրող **Օղակները** (1925 թ.) վեպից հետո Բարբյուսը հանդես եկավ ֆաշիզմի ու սպիտակ-գվարդիական էմիգրանտ-տեռորիստների գործունեությունը մերկացնող՝ **Դահիճներ** (1926 թ.) և **Ճշմարտացի վիպակներ** (1928 թ.) գրքերով, որոնք սպանիչ մեղադրանք էին ժամանակի սևհարյուրակային ուժերին:



Այս տարիներին գրողը մեծ ուշադրություն է նվիրում գեղարվեստական նոր ձևերի որոնման հարցերին: Փայլուն նովելիստը հրաշալի տիրապետում էր կարճ, սուր-դրամատիկ պատմվածքի ոճին, միաժամանակ հանդես գալիս հրապարակախոսական հոդվածներով ու խոր հոգեբանական ակնարկներով: Այս տարիներին լույս տեսած «Մենք», «Պատրանք», «Սրտի անկյունը» ժողովածուները կարճ պատմվածքի ու նովելների լավագույն նմուշներ են:

1932 թվականին լույս է տեսնում Բարբյուսի ամենահետաքրքրական գրքերից մեկը՝ նվիրված Էմիլ Զոլային, որը, ժամանակակիցների կարծիքով, միաժամանակ և՛ վիպականացված կենսագրություն էր, և՛ պատմական հետազոտություն, և՛ գրական մանիֆեստ: Գիրքը ձևավորել էր Բարբյուսը: Ա. Լունաչարսկին իր հուշերում նշում է, որ ինքը չի հանդիպել այնպիսի անկեղծ, իրական դիմանկարների, ինչպիսիք են Բարբյուսի պատկերած Ֆլոբերը, Սեզանը, Հյուսմանսը:

Բարբյուսի վերջին ստեղծագործությունը նվիրված էր Վ. Ի. Լենինին:

Կոմունիստ գրողն անսահման սիրում էր պրոլետարիատի մեծ առաջնորդին, հավատում նրա խոսքի ու գործի հաղթանակին: Դեռ 1920 թ. իր «Լույսը անդունդից» գիրքը նա նվիրել էր Վ. Ի. Լենինին, հետևյալ մակագրությամբ. «Լենինին. նրան, ով առաջինը գրեց չգրված մեծ օրենքները: Ջերմ հարգանքի զգացումով՝ Հանրի Բարբյուս»:

Ալֆրեդ Կուրելայի (գերմանացի կոմունիստ, նշանավոր գրող, հրապարակախոս) հետ Բարբյուսը գրեց «Լենինի նամակները հարազատներին» գրքի առաջաբանը, որը հրապարակախոսական ուրվագծի փայլուն օրինակ է:

Բարբյուսը Լենինին ներկայացնում է որպես պրոլետարիատի մեծ առաջնորդ, տեսաբան ու փիլիսոփա, որպես նոր տիպի քաղաքական գործիչ:

**«Տեսության և պրակտիկայի, մտքի և գործողության միասնությունը,**— գրում է Հ. Բարբյուսը,— **այն սկզբունքն է, որը Լենինը դարձրեց իմացության թեորիայի օրենք, կոլեկտիվ ու պատմական պրակտիկան համարելով ճշմարտության չափանիշ: Հնարավոր է, որ հենց դա է բոլշևիկների առաջնորդի մտածողության ամենաբնորոշ գիծը: Հենց այստեղ է, որ, ինչպես փոկուսում, կենտրոնացել են գործողության մարդու, քաղաքական գործչի ու փիլիսոփա մտածողի բացառիկ ունակությունները»** (տե՛ս А. Видаль, «Анри Барбюс—солдат мира», изд. Иностранная литература, М., 1962 г., стр. 312):

Բարբյուսի կյանքն ու ստեղծագործությունն անխզելիորեն կապված են նրա հասարակական-քաղաքական գործունեության հետ: Արվեստագետն իր ողջ կյանքում հավատարիմ մնաց «Խոսքն ինձ համար նաև գործողություն է» սկզբունքին: Գործելու անհագ ծարավը, հետևողական պայքարը միլիտարիզմի ու շահագործման բոլոր ձևերի դեմ, հասարակական կյանքի խոր վերլուծությունը գրողին հանգեցրին կոմունիստական աշխարհայացքին: 1923 թ. փետրվարի 18-ին Բարբյուսն ընդունվեց Ֆրանսիայի կոմունիստական կուսակցության շարքերը: Փետրվարի 20-ին «Յումանիտեում» լույս տեսավ նրա «Ճիշտ գիծ» հոդվածը, որտեղ գրողը հայտարարում էր.

**«Ես կոմունիստական ինտերնացիոնալ եմ մտել համոզված, որ, չնայած անհամար պիտակներին, մարդիկ բաժանվում են երկու խմբի. մի մասն այսպես թե այնպես ձգտում է պահպանել ապօրինի, չարագործ ռեժիմը, փոխելով լոկ անուններն ու դետալները, մյուսներն ամբողջ սրտով, տրամաբանության ու բարոյական բոլոր հասկացությունների համաձայն, ձգտում են արմատապես հեղաշրջել այն: Վերջինները համախմբված են լայն, իրոք մասսայական կազմակերպության մեջ, որի սոսկ անունը՝ Կոմունիստական ինտերնացիոնալ— իմ կարծիքով արդեն կանխագծում է նոր կարգի պատկերը»** (Նույն տեղը, էջ 118):

Սրևմուտքի առաջին արվեստագետներից էր Բարբյուսը, որը խորապես ըմբռնեց Հոկտեմբերյան մեծ հեղափոխության դերը համաշխարհային պատմության մեջ:

**«Ռուսական հեղափոխությունը,**— գրում էր նա,— **համաշխարհային պատմության մեծագույն երևույթն է... այն նոր դարաշրջան է բացում մարդկության պատմության մեջ»:**

Դեռ 1919 թ. Ռուսաստանում քաղաքացիական պատերազմի և օտարերկրյա ինտերվենցիայի ծանր օրերին ի լուր աշխարհի հնչեց Բարբյուսի մարտական կոչը.

**«Փրկեցե՛ք մարդկային ճշմարտությունը, փրկելով ռուսական ճշմարտությունը, իմացե՛ք, հաջորդ սերունդները մեր ժամանակի մարդկանց ազնվության մասին դա-**

**տելու են՝ ելնելով այն բանից, թե նրանք անգործության են մատնվել, թե՛ պայքարել են հաստատակամ ու որոշակի ասելով— ոչ»** (նույն տեղը, էջ 170):

Քսանական թվականներին Բարբյուսն ակտիվ մասնակցում է Սակկոյի և Վանցետիի արդարացման համար Ֆրանսիայի կոմունիստական կուսակցության ծավալած կամպանիային, «Յումանիտեում» մերկացնում սովետական դիվանագետ Վորովսկուն սպանող սպիտակգվարդիական Կոնրադիի պաշտպաններին, հասարակական լայն շարժում սկսում ի պաշտպանություն ամերիկյան արհմիութենական գործիչ Թոմաս Մունիի: 1925 թ. Բարբյուսը սպիտակ տեռորի փաստերը հետաքննող միջազգային հանձնաժողովի կազմում մեկնում է Բալկաններ: **Դահիճները** գրքում գրողն անարգանքի սյունին է գամում Հարավսլավիայում, Ռումինիայում, Բուլղարիայում, Հունաստանում մոլեգնող սպիտակ տեռորի կազմակերպիչներին, քաղաքական, բարոյական ու նյութական օգնություն կազմակերպում բանտերում տառապող տասնյակ հազարավոր հեղափոխականների օգտին: Ըստ էության, արդեն 1925 թ. սկսվում է Բարբյուսի հասարակական գործունեության նոր շրջանը՝ ուղղված միապետական կարգերի, տեռորի ու հասունացող ֆաշիստական ռեժիմի դեմ:

Բարբյուսն անհագ հետաքրքրությամբ հետևում էր ՍՍՀՄ-ում կատարվող տնտեսական-սոցիալական ու քաղաքական խոշոր փոփոխություններին: Գրողի համար ակնհայտ էր դառնում, որ ֆաշիզմին ու ռեակցիային, նոր համաշխարհային պատերազմին դիմագրավող հիմնական ուժը Սովետական Միությունն է: Հսկայական է սովետական գրականության դերը Բարբյուսի ստեղծագործական սկզբունքների ձևավորման գործում: Երկար տարիներ նա նամակագրության մեջ էր պրոլետարական մեծ գրող Մ. Գորկու հետ, որին համարում էր իր լավ բարեկամն ու ուսուցիչը: Բարբյուսը բազմիցս հանդիպել էր Ա. Լունաչարսկուն և սովետական մտավորականության բազմաթիվ այլ գործիչների: Քսանական թթ. Ֆրանսիայում նա եռանդուն պրոպագանդում էր սովետական գրողների ստեղծագործությունները, ամեն անգամ շեշտելով, որ սովետական հեղինակների լավագույն ստեղծագործությունները ֆրանսիական գրողներին օգնում են լուծելու իրենց սեփական խնդիրները:

1927 թվականին, Հոկտեմբերյան հեղափոխության 10-րդ տարեդարձի տոնակատարության կապակցությամբ, Հանրի Բարբյուսը հրավիրվեց ՍՍՀՄ: Մոսկվայում նա Պոլ-Վայան Կուտյուրիեի և այլոց հետ հիմնադրում է «Սովետական Միության բարեկամների» ընկերությունը: Ընկերության առաջին կոնգրեսում Բարբյուսն արտասահմանյան պատվիրակություններին անունից հանդես է գալիս նոր պատերազմի վտանգի մասին հատուկ զեկուցմամբ, որը հասարակական մեծ արձագանք է գտնում ինչպես ՍՍՀՄ-ում, նույնպես և եվրոպական երկրներում:

Սոցիալիստական շինարարության փորձի բազմակողմանի ուսումնասիրությանը զուգընթաց Բարբյուսը, մասնավորապես, հետաքրքրվում էր ՍՍՀՄ-ում ազգային հարցի լուծման պրոբլեմով, տարբեր ազգերի ու էթնիկական խմբերի տնտեսական, սոցիալական ու քաղաքական որակական նոր միասնության, դաշինքի, փոխօգնության ու համագործակցության հարցերով: Այս նպատակով էլ գրողն ուղևորվեց Անդրկովկաս: Այցելության արգասիքը եղավ Հ. Բարբյուսի **Ահա թե ինչ է կատարված Վրաստանում** ուշագրավ աշխատությունը: Գրքում նա վառ գույներով ներկայացնում է Անդրկովկասի հանրապետությունների տնտեսական ու կուլտուրական վերելքը, ամենուր զգացվող խաղաղ, ստեղծարար աշխատանքի մթնոլորտը: Ֆրանսիայի ռեակցիոն շրջանները և տեղի էմիգրանտ-մենշևիկները ավիններով դիմավորեցին հրապարակախոսական մեծ շնչով գրված այս աշխատությունը, որն անհերքելի փաստերով մերկացնում էր բուրժուական մամուլի կեղծիքն ու զրպարտանքը Անդրկովկասի երիտասարդ սովետական հանրապետությունների մասին: 1929 թվականի մայիսի 27-ին «Յումանիտեում» հանդես եկավ Մարսել Կաշենը, կոչ անելով ֆրանսիական կոմունիստական կուսակցության անդամներին ու բանվորական կազմակերպություններին բոլոր ուժերով օգնել Բարբյուսի գրքի տարածմանը, որովհետև այն ուժգին հարվածում է սովետական պետության թշնամիներին:

1927 թվականի հոկտեմբերի 20-ին Բարբյուսը Թբիլիսիից ժամանում է Լենինական, իսկ հաջորդ օրը՝ Երևան: Պրոլետարական մեծ գրողին արտակարգ սիրով ու ջերմությամբ են հյուրընկալում Սովետական Հայաստանի աշխատավորությունն ու մտավորականությունը:

Բարբյուսը մեծ հետաքրքրությամբ ուսումնասիրում է հանրապետության արդյունաբերությունն ու գյուղատնտեսությունը, այցելում Երևանի հիդրոկայանը, ծանոթանում ոռոգման գործին: Մեծ արվեստագետն արտակարգ ուշադրությամբ է հետևում մշակութային կյանքի զարգացմանը, իր հիացմունքը հայտնում գրականության, նկարչության, թատրոնի ու կինոյի ստեղծագործական հաջողությունների առթիվ: Նրան սրտագին դիմավորեցին պետական թատրոնի դերասանները, ապա Բարբյուսն այցելեց Հայկինո, որի ստեղծագործական կոլեկտիվի անունից նրան ջերմորեն ողջունեց հանրահայտ դերասան Մ. Ջանանը: Դիտելով Խաս-Փուշը, Բարբյուսը գրել է.

**«Ջերմորեն շնորհավորում եմ այն ընկերներին, որոնք էկրան են բարձրացրել «Խաս-փուշը»: Այս նկարն իմ տեսած, նույնիսկ խորհրդային նկարների մեջ ամենից արժեքավորն է, խաղը, շարժումը մտածված են և ներդաշնակ, գեղեցիկ պատկերացումով կենտրոնացրած այնպիսի մի փոնի վրա, որ երբեք չեմ տեսել»** («Խորհրդային Հայաստան», № 242, 1927 թ.):

Պետական թանգարանի պատվավոր այցելուների մատյանում կարդում ենք:

**«Ի հարգանս հայ ժողովրդի գեղեցիկ ու հետաքրքրական, ցեղային գունագեղ անհատականության, թանգարան այցելելու առթիվ»:**

**Հ. ԲԱՐԲՅՈՒՍ, 21 հոկտեմբերի, 1927 թ.:**

Ամփոփելով իր տպավորությունները Հայաստան կատարած այցելության մասին, Հանրի Բարբյուսը «Խորհրդային Հայաստան» թերթում գրում էր.

**«Իմ եղբայրական ողջույնը Խորհրդային Հայաստանին: Այդ անունն է նաև մի թերթի, որին լավ ծանոթ եմ և որին խորապես համակրում եմ: Եվ այդ բառերն ուղղակի իմ աչքերի առաջ պատկերացնում են այն սքանչելի, կենարար գործը, որ կատարվում է այս երկրում այն օրվանից, երբ նա հարեց Միությանը: Հայաստանն իր պատմության երկրորդ շրջանն է, որ ապրում է»** («Խորհրդային Հայաստան», № 242, 22 հոկտեմբերի, 1927 թ.):

Բարբյուսի ստեղծագործություններից հայերեն թարգմանվել և հրատարակվել են **Դահիճները** (1928 թ.), **Ես մեղադրում եմ** (1933 թ.), **Կրակը** (1935 թ.): Հայ պարբերական մամուլում և հանդեսներում տարբեր առիթներով մեր գրականագետներն ու գրողները ջերմ տողեր են նվիրել խաղաղության ու առաջադիմության մեծ պաշտպանին, մեր ժողովրդի անկեղծ բարեկամին:

Դեռևս 1922 թ. Վիեննայում հրապարակվել է եվրոպական գրականության մեր լավագույն գիտակներից մեկի՝ Սիմոն Հակոբյանի **Ռոմեն Ռոլան, Հանրի Բարբյուս** ուսումնասիրությունը, ուր բարձր են գնահատվում ֆրանսիական այդ մեծ գրողների գրական ժառանգությունը, հասարակական-քաղաքական բեղմնավոր գործունեությունը:

Սովետական Միություն կատարած երկրորդ այցելությունից հետո, 1930 թ. Բարբյուսը հրատարակում է **Ռուսաստան** գիրքը, որտեղ գրողը հրապարակախոսի իր ողջ տաղանդով արևմտյան ընթերցողին է ներկայացնում սոցիալիստական շինարարության աննախընթաց հաջողությունները: 20-ական, 30-ական թվականներին հաստատակամորեն պայքարելով ռեակցիայի ու ֆաշիզմի դեմ, Բարբյուսը եռանդուն գործունեություն է ծավալում ի պաշտպանություն գաղութային լծի տակ հեծող ժողովուրդների: Մերկացնելով գաղութարարությունը՝ որպես XX դարի ամենաամոթալի երևույթ, նա ընդգծում էր, որ գաղութային ռեժիմը ոչնչով չի տարբերվում ամենադաժան աքսորից, իմպերիալիստական գերշահույթների ստացման, տասնյակ միլիոնավոր մարդկանց քրտինք քամելու ռեժիմ է դա: Միաժամանակ գրողն արտահայտում է իր համոզմունքը՝ այդ ռեժիմը դատապարտված է կործանման. գաղութային ժողովուրդները ելնում են գիտակից պայքարի՝ հանուն ապրելու իրավունքի: 1925 թ. Բարբյուսը համարձակ հանդես եկավ ընդդեմ ֆրանսիական իմպերիալիզմի՝ Մարոկոյում սանձազերծած զավթողական պատերազմի: Նա իր համախոհների հետ հուժկու հասարակական շարժում ծավալեց ի պաշտպանություն Հնդկաստանի, Ֆիլիպինների, Հնդկաչինի ժողովուրդների արդարացի ազատագրական շարժումների: Գրողի նախաձեռնությամբ ստեղծվեց «Իմպերիալիզմի դեմ մղվող պայքարի և ազգային ազատագրության միջազգային լիգա», որի՝ Բրյուսելում (1927 թ.) և Ֆրանկֆուրտում (1929 թ.) կայացած կոնգրեսները վիթխարի նշանակություն ունեցան գաղութային ժողովուրդների՝ իմպերիալիզմի դեմ մղած պայքարի միավորման ու կազմակերպման մարզում: Մեծ ջանքեր է թափել Բարբյուսը նեգրերի իրավունքների պաշտպանության հարցում: Նա երկար տարիներ գլխավորում էր «Սև ռասայի շահերի պաշտպանության կոմիտեն»: Չնայած բոլոր սպառնալիքներին, ԱՄՆ կատարած այցելության ժամանակ նա համարձակ հանդես եկավ Հարվարդի համալսարանի նեգր ուսանողության առջև, կապեր հաստատեց Հառլեմի նեգրերի իրավունքների պաշտպանության կոմիտեի հետ: Իր հասարակական-քաղաքական գործունեության նոր փուլում կոմունիստ-գրողը ծավալուն պայքար էր մղում ընդդեմ ֆաշիզմի, նոր պատերազմի սպառ-

նալիքի, ամեն ջանք գործադրում էր միասնական ճակատի ստեղծման համար։

Բարբյուսի և Ռոլանի նախաձեռնությամբ 1928 թ. ստեղծվում է հակաֆաշիստական միջազգային կոմիտե, որի գլխավոր խնդիրը բոլոր հակաիմպերիալիստական, դեմոկրատական ուժերի միավորումն էր ընդդեմ ֆաշիզմի։ 1929 թ. Բեռլինում գումարվում է հակաֆաշիստական առաջին կոնգրեսը, որն ընդունեց աշխարհի բոլոր ժողովուրդներին ուղղված կոչ՝ ֆաշիզմի դեմ միասնական ճակատ ստեղծելու նպատակով։ 1932 թ. ապրիլին ստեղծվում է Միջազգային հակապատերազմական կոնգրեսի հրավիրման նախաձեռնող կոմիտե, որի կազմում էին Ալբերտ Էյնշտեյնը, Հենրիխ Մանը, Պոլ Լանժևենը, Ռոմեն Ռոլանը, Հանրի Բարբյուսը, Մաքսիմ Գորկին, Թեոդոր Դրայզերը, Ջոն Դոս Պասոսը, Էպտոն Սինկլերը, Սուն Ցին-լին (Սուն Յաթ-սենի այրին), Սեն Կատայաման։

Կոնգրեսի նախապատրաստման օրերին, 1932 թ. հուլիսի 12-ին, «Յումանիտեում» լույս է տեսնում Բարբյուսի **Ես մեղադրում եմ** նշանավոր պամֆլետը։ Այդ օրերին ֆրանսիական և միջազգային ռեակցիոն ուժերը, օգտագործելով պրեզիդենտ Պոլ Դումերի սպանությունը (1932 թ. մայիսի 6-ին նրան սպանեց սպիտակգվարդիական էմիգրանտ Գորգուլովը), սկսել էին կատաղի հակասովետական կամպանիա։ Գրողը հրապարակավ հայտարարում էր.

**Ես մեղադրում եմ պատերազմին հաջորդած ֆրանսիական բոլոր կառավարություններին այն բանում, որ նրանք ապաստան են տվել, հովանավորել և օգնել, դրդել, ֆինանսավորել ու զինել են ամեն տեսակ սպիտակգվարդիական խմբակցությունների, որոնք միջազգային ոճրագործների կազմակերպություն են, որոնց նպատակն է սպանություններ կատարելը, պատերազմ նախապատրաստելը։**

**Ես մեղադրում եմ այդ կառավարություններին. նրանք պատասխանատու են այդ բանդիտների կատարած սպանությունների համար, Ֆրանսիայում բուն դրած նրանց բազմաթիվ խմբակներն իրենց շոշափուկներն են տարածել աշխարհով մեկ։**

**Ես պատկանում եմ այն մարդկանց խմբին, որոնք պատրաստ են իրենց արյան վերջին կաթիլը, կյանքը զոհել, որպեսզի մարդկային հոծ զանգվածները վերջնականապես ազատագրվեն ուրիշ մարդկանց կողմից կեղեքվելուց և հարստահարվելուց։ Եվ ոչ մի անհաբեկում, ոչ մի այլ միջոց չեն կարող հարկադրել փոխել իմ կարծիքը, որը նաև իմ պայքարի զինակից ընկերների կարծիքն է** (տե՛ս Հանրի Բարբյուս— **Ես մեղադրում եմ,** Երևան, 1933 թ., էջ 3—4)։

1932 թվականի օգոստոսի 27-ին Ամստերդամում բացվեց միջազգային հակապատերազմական կոնգրեսը, որի 2196 պատգամավորները ներկայացնում էին աշխարհի բոլոր մայրցամաքների բազմամիլիոն մարդկանց։ Նոր պատերազմի դեմ ուղղված ամենամասսայական համաժողովն էր այդ, որը մարդկությանը կոչ էր անում միավորելու բոլոր ուժերը ընդդեմ պատերազմի, հանուն խաղաղության։

1932 թ. սեպտեմբերին Բարբյուսը երրորդ անգամ այցելում է ՍՍՀՄ, որտեղ մեծ գրողին ու քաղաքացուն ընդունում են արտակարգ ջերմորեն ու խանդավառությամբ։ Բարբյուսը հիանում է կարճ ժամանակամիջոցում ՍՍՀՄ-ի ձեռք բերած վիթխարի նվաճումներով. Դնեպրոգէսի բացման ժամանակ արտասանած ճառում հայտարարում է. «Ձեր ամեն մի ստեղծագործ քայլը փոխում է հին աշխարհի քարտեզը»։

Վերադառնալով հայրենիք, նա շարունակում է պայքարը ֆաշիզմի դեմ. իրար են հաջորդում հակապատերազմական կոնգրեսները՝ Եվրոպայի տարբեր քաղաքներում։ Նա իր համախոհների հետ անհավատալի ջանքեր է գործադրում Գ. Դիմիտրովին, Է. Թելմանին ֆաշիստական մեռնախցերից ազատելու համար։ Եվրոպական երկրներում (Գերմանիայում ընդհատակյա ձևով) մեծ տիրաժով տարածվում էր Բարբյուսի **Գիտե՞ս դու արդյոք Թելմանին** բրոշյուրը, որտեղ գրողն ստեղծել էր գերմանական կոմունիստների առաջնորդի սքանչելի և անմոռաց կերպարը։

Մինչև իր հրաշալի կյանքի վերջը Բարբյուսը բոլոր ուժերը նվիրեց խաղաղության, ֆաշիզմի դեմ միասնական ճակատի ստեղծման գործին։

1935 թ. հուլիսի 16-ին Հ. Բարբյուսը վերջին անգամ ուղևորվում է ՍՍՀՄ, մասնակցում Կոմինտերնի VII կոնգրեսին, մասնավորապես մեծ ուշադրությամբ հետևում պատերազմի և ֆաշիզմի դեմ մղվող պայքարի կազմակերպման հարցերի **քննարկմանը։**

Առջևում էին բազմաթիվ ստեղծագործական մտահղացումներ, քաղաքական, հասարակական նոր ու բարդ խնդիրներ։ Սակայն երկար տարիների լարված աշխատանքը քայքայել էր գրողի առողջությունը։

Հ. Բարբյուսը վախճանվեց Մոսկվայում, 1935 թվականի օգոստոսի 30-ին։



# ԴԱՍՏԻԱՐԱԿԵԼ ՀԱՄՈԶՎԱԾ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻՍՏՆԵՐ

*Սովետական Միության Կոմունիստական կուսակցությունը միշտ էլ մեծ նշանակություն է տվել և տալիս է սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և սովետական հայրենասիրության ոգով մասսաների դաստիարակմանը։ Դա կուսակցական, պետական և հասարակական կազմակերպությունների, գաղափարախոսական բոլոր աշխատողների գլխավոր խնդիրներից է։*

*ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի կապակցությամբ հանրապետական կուսակցական ամսագրերը մեծաքանակ նյութեր են նվիրել ինտերնացիոնալիզմի թեմային, սովետական մարդկանց ինտերնացիոնալիստական և հայրենասիրական դաստիարակության հարցերին։*

*Ստորև ամփոփվում են 1972 թ. հանրապետական ամսագրերում հրապարակված այդ հոդվածները։*

I

*ՍՍՀՄ ժողովուրդների անխախտ միասնությունն է՛լ ավելի ամրապնդելու, աշխատավորության ինտերնացիոնալիստական դաստիարակությունը խորացնելու հետ կապված հարցերը հանրապետական ամսագրերի էջերում քննության են առնվում կոմունիստական շինարարության մյուս պրոբլեմների, ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած խնդիրների հետ սերտորեն կապակցված, համագումար, որն աչքի ընկնող ավանդ մուծեց մարքսիզմ-լենինիզմի գանձարանը, բազմակողմանիորեն հիմնավորված եզրահանգումներ արեց կոմունիզմին անցնելու ուղիների, ձևերի վերաբերյալ։*

*«Մեր երկրում,— ընդգծեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՍՀՄ 50-ամյակի մասին տված զեկուցման մեջ,— ծնվեց և ամրապնդվեց աշխատավոր մարդկանց մեծ եղբայրությունը, որոնք, անկախ ազգային պատկանելությունից, միավորվել են դասակարգային շահերի ու նպատակների ընդհանրությամբ, ստեղծվեցին պատմության մեջ չտեսնված այնպիսի հարաբերություններ, որոնց մենք իրավամբ անվանում ենք ժողովուրդների լենինյան բարեկամություն։ Այդ բարեկամությունը, ընկերներ, մեր անգնահատելի նվաճումն է, սոցիալիզմի ամենանշանակալի և սովետական յուրաքանչյուր մարդու սրտամոտ ամենաթանկ նվաճումներից մեկը։ Եվ այդ բարեկամությունը մենք, սովետական մարդիկ, միշտ կպահպանենք աչքի լույսի պես»։ Ինտերնացիոնալիզմի ոգով աշխատավորների դաստիարակումը կոմունիստական աշխարհայացքի ձևավորման կարևոր բաղկացուցիչ մասն է, առանց որի անհնարին է նոր մարդու ձևավորումը։*

*Օրինաչափ է, որ հանրապետական կուսակցական ամսագրերը մեծ ուշադրություն են նվիրում լենինյան ազգային քաղաքականության ուժի և կենսունակության աղբյուրների, Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման՝ պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների կենդանի մարմնավորման համաշխարհային-պատմական նշանակության բացահայտմանը։ Մասնավորապես, հետաքրքրական են* «Կոմունիստ Մոլդավի» *ժուռնալում հրատարակված Ս. Աֆտենյուկի՝ «Ազգային հարցի վերաբերյալ կոմունիստական կուսակցության ծրագրի մշակումը Վ. Ի. Լենինի կողմից» և Վ. Դեմյանովի՝ «Վ. Ի. Լենինը ՍՍՀ Միության հիմնադիր» հոդվածները։ Դրանցում ցույց է տրվում, թե աշխատանքի մարդկանց ճակատագրի վրա ինչպիսի ազդեցություն է ունեցել լենինյան ազգային քաղաքականության հետևողական կենսագործումը, թե հանրապետության աշխատավորները ՍՍՀՄ եղբայրական ժողովուրդների հետ միասնական շարքում ինչպես են վիթխարի հաջողությունների հասել իրենց էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման գործում։*

*Մեր բազմազգ սոցիալիստական պետության ստեղծման, ազգային հարցի վերաբերյալ կոմունիստական կուսակցության ծրագրի մշակման գործում Վլադիմիր Իլյիչ Լենինի դերի բազմակողմանի բացահայտմանը հոդվածներ են նվիրված հանրապետական մյուս ամսագրերի շատ համարներում։ Դրանցից բովանդակալից են Բ. Բարիայի՝ «Վ. Ի. Լենինը Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության հիմնադիր»* («Կոմունիստ Ուկրաինի», *№ 1), Ի. Դեյատկինայի՝ «Վ. Ի. Լենինը ՍՍՀ Միության ոգեշնչողն ու կազմակերպիչն է»* («Կոմունիստ Սովետսկոյ Լատվիի», *№ 4), Ս. Բեյսեմբաևի՝ «Վ. Ի. Լենինը սովետական բազմազգ պետության հիմնադիր»* («Ղազախստան կոմունիստի», *№ 1) հոդվածները և այլն։*

II

Սովետական պետության ամբողջ պատմության ընթացքում կոմունիստական կուսակցությունը կյանքում մարմնավորում է պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները, հաստատակամորեն ամրապնդում է ժողովուրդների բարեկամությունը։

ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամությունը խարսխվում է ամուր հիմքի՝ մեր երկրի բոլոր ազգերի ու ազգությունների միացյալ ջանքերով ստեղծված և պլանաչափորեն զարգացող միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսի վրա։ Այն կազմվում է հասունացած սոցիալիզմի պայմաններում զարգացման բարձր մակարդակի հասած բոլոր միութենական հանրապետությունների տնտեսական կոմպլեքսներից։ Որքան ավելի ամուր են հանրապետությունների, երկրամասերի ու մարզերի ձեռնարկությունները կապող թելերը, այնքան ավելի ամուր է նրանց եղբայրական բարեկամությունը, փոխադարձ օգնությունը։

Մեր երկրի ժողովուրդների բարեկամությունը հիմնված է նաև նրանց քաղաքական ու հոգևոր կյանքի միասնության վրա։ Սոցիալիստական դեմոկրատիայի, մարքս-լենինյան գաղափարախոսության հաղթանակը ՍՍՀՄ-ի կազմի մեջ մտնող բոլոր ազգերի ու ազգությունների միջև եղբայրական կապերի ամրապնդման կարևոր գործոնն է։

ՍՍՀՄ ժողովուրդների մեծ բարեկամությանն են նվիրված հանրապետական ամսագրերի շատ ելույթներ։

«Սամարտվելոս կոմունիստի» («Վրաստանի կոմունիստ») ամսագիրը, օրինակ, իր էջերում լայնորեն լուսաբանել է բոլոր միութենական հանրապետությունների պատմա-հեղափոխական փոխադարձ կապերը, նրանց հերոսական կենդարյա ուղին։ Յուրաքանչյուր հանրապետության կյանքի զարկերակը, ինչպես ցույց է տրված Պ. Սամտավնելու «Մոսկվան մեր հայրենիքի սիրտն է» հոդվածում (№ 8), միաձուլվում է ՍՍՀՄ մայրաքաղաքի սրտի զարկի հետ։ «Կոմունիստի Տաջիկիստոնի» ամսագիրը հատուկ բաժին է բացել, որտեղ տպագրվում են ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության ամրապնդման տարբեր կողմերը բացահայտող հոդվածներ։ Նրանցում քիչ չեն ցայտուն վկայությունները փոխադարձ աջակցության, նախապատերազմյան հնգամյակների կատարմանը ժողովուրդների համատեղ մասնակցության, Տաջիկստանի և մյուս եղբայրական հանրապետությունների էկոնոմիկայի ու կուլտուրայի զարգացման գործում ռուս ժողովրդի անշահախնդիր օգնության մասին։

Բնորոշ փաստեր են բերվում, մասնավորապես «Կոմունիստ» ամսագրում (Կիրգիզիայի կոմկուսի Կենտկոմի օրգան) հրապարակված Պ. Սավելևի հոդվածում Սովետական Կիրգիզիայի նկատմամբ Լենինգրադի բանվորների ստանձնած շեֆության պատմության մասին։ 1933 թ. Լենինգրադի աշխատավորները պայմանագիր ստորագրեցին Սովետական Կիրգիզիայի նկատմամբ շեֆություն ստանձնելու մասին։ Պայմանագրի հիման վրա լենինգրադցիները կիրգիզ ժողովրդին օգնեցին հետազոտելու բնական հարստությունները, կազմակերպեցին կոմպլեքսային հետազոտական էքսպեդիցիա՝ հանրապետության տնտեսական, քաղաքական և կուլտուրական կյանքի ուսումնասիրման համար, իրենց վրա վերցրին արդյունաբերական ձեռնարկությունների կադրերի պատրաստումը, մասնակցեցին Ֆրունզեի էլեկտրակայանի, նորոգման-մեխանիկական գործարանների, մանածագործարանների և տպարանների, դրադարանների ստեղծմանը։

Մեր երկրի ժողովուրդների մեծ բարեկամությունը ստուգվեց Հայրենական մեծ պատերազմի դաժան տարիներին, երբ ջարդուփշուր եղան ազգային երկպառակությունների վերածնման, սովետական բազմազգ պետության քայքայման վերաբերյալ իմպերիալիստների պլանները։

Սոցիալիստական Հայրենիքի պաշտպանության թեմային են նվիրված կուսակցական ամսագրերի շատ էջեր։ «Արյամբ ամրապնդված բարեկամություն»— այս խորագրով «Ղազախստան կոմունիստի» ամսագրում հրապարակված են Հայրենական մեծ պատերազմին մասնակցած տարբեր ազգությունների ներկայացուցիչների ակնարկներ, պատմվածքներ, հիշողություններ։ Բրեստի ամրոցի պաշտպանության, 28 գվարդիական-պանֆիլովականների սխրանքի և այլ օրինակներով ամսագիրը վառ կերպով ցույց է տվել սովետական մարդկանց ռազմական եղբայրությունը, մեր մեծ սոցիալիստական Հայրենիքի ժողովուրդների բարեկամության ամենահաղթ ուժը։

Սովետական Միության հերոս Ի. Զախարովի հոդվածում («Կոմունիստ Մոլդավիի»), որ նվիրված է բելոռուսական պարտիզաններին, խոսվում է այն մասին, որ բելոռուսական ժողովրդի հերոսական որդիների և դուստրերի հետ ուսուսի ժողովրդական վրիժառուների շարքերում կռվում էին ռուսներ և ուկրաինացիներ, լատիշներ և լիտվացիներ, ղազախներ և մոլդավացիներ, ուզբեկներ և թաթարներ՝ բոլոր սովետական ժողովուրդների ներկայացուցիչները։ Միայն «Իսկրա» ջոկատում, որը գործում էր Պոլեսյեում, կային 28 ազգությունների մարտիկներ։ Հեղինակը նշում է, որ Բելոռուսիայում պարտիզանական շարժման զարգացման համար հատկապես շատ բան արեցին ռուս մեծ ժողովրդի զավակները։ Հանրապետության տերիտորիայում գործում էին Սմոլենսկի և Բրյանսկի պարտիզաններից բաղկացած ամբողջ միավորումներ ու ջոկատներ։

Սովետական հանրապետությունների հիսուն



տարվա նվաճումները վերլուծող հոդվածներում կարմիր թելի պես անցնում է այն միտքը, որ միասնական սոցիալիստական պետության շրջանակներում, ժողովուրդների մշտական փոխադարձ օգնության պայմաններում միայն հնարավոր դարձավ նրանց էկոնոմիկայի և կուլտուրայի այնքան արագ թռիչքը։

Սոցիալիզմի, սոցիալիստական պետության նշանակությունը ֆիզիկական բնաջնջման սպառնալիքից հայ ազգի փրկության գործում, սոցիալիստական հասարակական հարաբերությունների բաղայի վրա նրա զարգացման համար պայմանների ստեղծումը ցույց է տրված «Լենինյան ուղիով» ամսագրի (Հայաստանի ԿԿ Կենտկոմի օրգան) դեկտեմբերյան համարում տպագրված Մ. Մելիքյանի «Լենինյան միության մեծագույն նվաճումները» հոդվածում։ Այնտեղ հատուկ ընդգծվում է այն միտքը, որ սովետական ժողովուրդների պատմական միավորումը լիովին համապատասխանում է նրանց ազատասիրական ձգտումներին, դարավոր երազանքներին։ Հայաստանի, ինչպես նաև մյուս սովետական հանրապետությունների վերածումը զարգացած և ծաղկող սոցիալիստական հանրապետության՝ ՍՍՀՄ կազմավորման, ժողովուրդների եղբայրական համագործակցության արդյունք է։

Խ. Խաուզը «Բարեկամություն, եղբայրություն, միասնություն» («Կոմունիստ Էստոնիի», № 7) հոդվածում նշում է. «ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի նախօրյակին ետադարձ հայացք ձգելով իրենց անցած ուղու վրա, Սովետական Մերձբալթիկայի ժողովուրդները կրկին ու կրկին համոզվում են տնտեսության սոցիալիստական սիստեմի մեծ առավելություններում, այն բանում, թե ինչպիսի հարուստ պտուղներ է տալիս երկրի ժողովուրդների համախմբումը միասնական, հզոր Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության մեջ։ ՍՍՀ Միության կազմի մեջ Սովետական Մերձբալթիկայի ժողովուրդները արագ տեմպերով հսկայական ճանապարհ անցան։ Երեսուն տարուց քիչ ավելի առաջ միայն նրանք թոթափեցին կապիտալիզմի լուծը, իսկ այժմ, ինչպես և ՍՍՀՄ մյուս ժողովուրդները, ապրում են զարգացած սոցիալիստական հասարակությունում, որը բնութագրվում է ժողովրդական տնտեսության, սոցիալիստական հասարակական հարաբերությունների, կուլտուրայի և ժողովրդական լայն մասսաների գիտակցության բարձր մակարդակով»։

Կոմունիստական կուսակցության կուրսը ազգային ծայրամասերի տնտեսական, կուլտուրական և սոցիալ-քաղաքական արագ զարգացման գործում, երկրի ավելի զարգացած շրջանների, ամենից առաջ ռուս ժողովրդի, նրա բանվոր դասակարգի օգնությունը արտակարգ ուժով դրսևորվեցին փոքր ժողովուրդների ճակատագրի վրա, որոնք ցարիզմի օրոք դատապարտված էին ոչնչացման։ ՍՍՀՄ շրջանակներում նրանք կարողացան արագ հաղորդակից լինել մյուս ժողովուրդների նվաճումներին, հասնել տնտեսական և կուլտուրական վիթխարի վերելքի։

Տպավորիչ օրինակ է բերվում ՌՍՖՍՀ Մինիստրների սովետի նախագահի տեղակալ Վ. Կոչեմասովի «Մեր ընդհանուր սեփականությունը» («Կոմունիստ Մոլդավիի», № 5) հոդվածում։ 1923 թ. ազգային գործերի ժողկոմատը որոշեց Մոսկվայում Համառուսաստանյան գյուղատնտեսական ցուցահանդես հրավիրել գոնե մեկ գրագետ խանտի։ «Գրագետներ չկան»,— պատասխանեցին Տոբոլսկի գործկոմից։ Բայց ահա անցնում են տարիներ, և կուսակցության կամքով ստեղծվում է խանտի-մանսիյական ժողովրդի նոր պատմությունը։ Երեկվա եղջերվապահները ստանում են ինժեների, բժշկի, մանկավարժի դիպլոմներ։ Նույնիսկ ստորագրել չիմացող որսորդների, կայուրների երեխաներն ու թոռները տայգայում վարում են հզոր ամենագնացներ, տրակտորներ, աշխատում են հետախուզական խմբերում, նավթամուղների, հորատումների ուղեգծերում, մասնակցում են հյուսիսային երկրի ամենահարուստ ընդերքի մշակմանը, իրենց ավանդն են ներդնում կոմունիզմի կառուցման մեծ գործում։

Խոր և բազմակողմանի սոցիալ-տնտեսական վերափոխությունների հիման վրա մեր երկրում հաստատվեց զարգացած սոցիալիստական հասարակություն, ձևավորվեց մարդկանց նոր պատմական հանրություն՝ սովետական ժողովուրդը։ Այդ հանրության ծագումը, ինչպես ասված է ՍՍՀՄ 50-ամյակի մասին ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ, մեր մեծ նվաճումն է, յուրովի ամփոփումը այն տնտեսական ու սոցիալ-քաղաքական փոփոխությունների, որոնք կես դարի ընթացքում կատարվել են երկրում։

Հանրապետական կուսակցական ամսագրերը մշտական ուշադրություն են նվիրում այդ թեմային։ Իրենց հրապարակած նյութերում նրանք բացահայտում են երկրի կյանքի ինչպես նյութական, այնպես էլ հոգևոր ոլորտում տեղի ունեցած խոր օբյեկտիվ փոփոխությունները, ցույց են տալիս սոցիալիստական ազգերի ծագումն ու զարգացումը, նրանց սերտ համագործակցությունն ու փոխադարձ օգնությունը։

Բազմապլանայնորեն է լուսաբանում այդ թեմաները «Կոմունիստ Ուկրաինի» ամսագիրը։ Կարելի է, մասնավորապես, նշել Ի. Ստուպնիցկու «Սոցիալիստական ազգերի բազմակողմանի զարգացման ու մերձեցման տնտեսական պայմանները», Մ. Պալամարչուկի՝ «Սովետական ժողովրդի տնտեսական ընդհանրությունը», Վ. Սուլժենկոյի՝ «Կոմունիստական շինարարությունը և ազգային հարաբերությունների զարգացումը»,

Պ. Բաշինսկու «Սովետական ժողովուրդը նոր պատմական հանրություն է» հոդվածները:

Այդ կարևոր թեմայի տարբեր կողմերը բացահայտվում են նաև մյուս հանրապետական ամսագրերի հոդվածներում: Կարելի է, որպես օրինակ, մատնանշել Ս. Թուրսունմուխամեդովի և Գ. Ռաֆիկովի «Սովետական բազմազգ հասարակությունը որպես մի համասեռ սոցիալական կառուցվածք» («Կոմունիստ Ուզբեկստանա», № 7). Ա. Վադերի «Էստոնական սոցիալիստական ազգը որպես մարդկանց նոր պատմական հանրության օրգանական մաս» («Կոմունիստ Էստոնիի», № 5). Ֆ. Կոնստանտինովի՝ «Մարդկանց նոր պատմական հանրություն» («Կոմունիստ Բելոռուսիի», № 1). Գ. Բայրամովի «Սոցիալիստական ազգերի մերձեցումը մեր հասարակության օբյեկտիվ օրինաչափությունն է» («Ազերբայջան կոմունիստի», № 11) հոդվածները:

III

Ամսագրերում հրապարակված այն բոլոր նյութերի մեծ մասում, որոնք նվիրված են ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակին, խորապես պարզաբանվում է կուսակցության XXIV համագումարի լենինյան կուրսը, որը նախատեսում է Սովետական Միության տնտեսական և սոցիալ-քաղաքական զարգացման հեռանկարները, մշակում մեր երկրի ազգերի ու ազգությունների հետագա բարգավաճման ու աստիճանաբար մերձեցման, սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման, սովետական հասարակության ամբողջ քաղաքական կազմակերպության կատարելագործման ուղիների հետ կապված տեսական հարցերը:

Մեր երկրի բոլոր ազգերի ու ժողովուրդների մերձեցման, նրանց բարեկամության ու համագործակցության ամրապնդման պրոցեսում վճռական դեր է պատկանում բանվոր դասակարգին: Հանրապետական կուսակցական ամսագրերը պետք է հատուկ ուշադրություն նվիրեն այդ պրոբլեմին:

Զարգացած սոցիալիզմի պայմաններում բանվոր դասակարգի մեջ տեղի ունեցած պրոցեսների վերլուծությունը, նոր հասարակության կառուցելու գործում նրա առաջատար դերի հիմնավորումը, նրա քաղաքական կերպարի, շահերի, բարոյականության խոր բացահայտումը այսուհետև էլ պետք է լայնորեն տեղ գրավեն կուսակցական ամսագրերի էջերում: Այդ կապակցությամբ պակաս հետաքրքրություն չի ներկայացնում նաև սոցիալիստական հասարակությունում սոցիալական համասեռության ուժեղացման, դասակարգերի ու սոցիալական խավերի մերձեցման պրոցեսի ուսումնասիրությունը:

Ամսագրերում զետեղված նյութերը բացահայտում են բազմազան կոլեկտիվների արտադրական առօրյան, համատեղ աշխատանքում ծնվող նոր փոխադարձ կապերը: Այդ տեսակետից հետաքրքրական է Բ. Շուքուրովի «Տաջիկական ժողովրդի վաղեմի երազը» հոդվածը Նուրեկի էլեկտրակայանի կառուցման մասին, մի կառուցում, ուր աշխատում են բոլոր միութենական հանրապետությունների, շատ ազգերի ու ժողովուրդների ներկայացուցիչներ («Կոմունիստի Տաջիկիստանի», № 12): Ռ. Կարապետյանի «Սևանի կանչով» ակնարկում («Լենինյան ուղիով», № 12) համոզիչ է ցույց տրված Արփա—Սևան թունելի շինարարությունում աշխատող մարդկանց հաստատուն ինտերնացիոնալ փոխհարաբերությունները: «Այդ կառույցը,— գրում է հեղինակը,— նման է մի լաբորատորիայի, ուր սինթեզվում, բյուրեղանում, նոր երանգներ է ընդունում սովետական ժողովրդի մեծ բարեկամությունը»:

Հավանության է արժանի «Ազերբայջան կոմունիստի» ամսագրի խմբագրության կոլեկտիվի կողմից գիտնական-սոցիոլոգների օգնությամբ կատարած ազգամիջյան հարաբերությունների ուսումնասիրությունը Սումգաիթի քիմկոմբինատում, որտեղ աշխատում են 43 ազգությունների ներկայացուցիչներ: Հետազոտությունների արդյունքները, որոնք հրապարակվել են ամսագրում, ցույց են տալիս, թե բազմազգ կոլեկտիվի պայմաններում սոցիալիստական աշխատանքը ինչպիսի հսկայական չափով է ազդում աշխատավորների ինտերնացիոնալիստական դաստիարակության վրա: Սակայն նպատակահարմար կլիներ չսահմանափակվել «գործարանային շրջանակներով», ինտերնացիոնալ և ազգային միասնությունը հետևել թե՛ կենցաղում, թե՛ ընտանիքի կյանքում:

Մեր իրականությունը, բազմազգ կոլեկտիվի պայմաններում կյանքի ու աշխատանքի սոցիալիստական բնույթը, կուսակցության գաղափարախոսական-դաստիարակչական հետևողական աշխատանքը նպաստում են աշխատավորների ինտերնացիոնալիստական գիտակցության զարգացմանը: Այդ տեսակետից հաջող ընդհանրացում է կատարում լիտվական գրող Ա. Իոնինասը («Կոմունիստ», № 8, օրգան Լիտվայի ԿԿ Կենտկոմի): «Հանդիպելով ընդհանուր աշխատանքում, ուսման մեջ, օգնելով միմյանց և միասին անցկացնելով հանգիստը, սովետական մարդիկ է՛լ ավելի լավ են ճանաչում միմյանց, ավելի խորապես են ըմբռնում, ավելի ճիշտ են գնահատում ու հարգում մյուս ժողովուրդների նվաճումները, նրանց բնավորությունն ու ավանդույթները, ավելի ուշադիր են թափանցում բարեկամների հոգու մեջ... Ժողովուրդների ու հանրապետությունների փոխհարաբերություններից այն ավելի ու ավելի ցայտուն կերպով է փոխարկվում անձնական փոխադարձ հարաբերությունների... հարստացնելով նրանց և բացահայտելով կոմունիստական անհատի ձևավորման նորանոր ասպարեզներ: Խոր ինտերնացիոնալիզմի և եղբայրական փոխադարձ հարգանքի զգացմունքն արդեն դառնում է սովետական յուրաքանչյուր ժողովրդի հասարակական գիտակցության անբաժանելի գիծը:

Զարգացած սոցիալիզմի պայմաններում մեր երկրի ազգերի ու ժողովուրդների մերձեցումը և նրանց բարգավաճումը միասնական պրոցես է: Բացահայտել այդ պրոցեսը իր իրական դրսևորումներում, հետևել նրա ուղղությանը՝ կուսակցական ամսագրերի կարևոր խնդիրն է:

IV

Հենվելով լենինյան գաղափարախոսական ժառանգության վրա, ամսագրերը մերկացնում են բուրժուական նացիոնալիզմը նրա բոլոր տարատեսակություններով և դրսևորումներով հանդերձ: Նացիոնալիստական նախապաշարմունքները չափազանց կենսունակ են, նրանք համառ կերպով պահպանվում են քաղաքական տեսակետից բավականաչափ չհասունացած մարդկանց հոգեբանության մեջ: Վ. Ի. Լենինը ընդգծում էր, որ մանրբուրժուական նախապաշարմունքներից ամենախորը ազգային էգոիզմն է, ազգային սահմանափակությունը (տե՛ս Երկեր, հ. 31, էջ 172): Այդ նախապաշարմունքները, ինչպես մատնանշվել է ՍՍՀՄ 50-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում տրված զեկուցման մեջ, շարունակում են պահպանվել նույնիսկ այն ժամանակ, երբ նրանց օբյեկտիվ պայմանները վաղուց են դադարել գոյություն ունենալուց:

Ազգային վերապրուկների բնույթը, արմատները, պատճառները բացահայտող նյութեր են հրապարակվում «Կոմունիստ» ամսագրի (Լիտվայի ԿԿ Կենտկոմի օրգան) համարներում: Այդ թեմային վերաբերող ելույթներում ուշադրություն է գրավում, մասնավորապես, Պ. Գելբակի «Բարեկամության օրենքներով» հոդվածը: Անդրադառնալով ազգային վերապրուկների կենսունակությանը, հեղինակը գրում է. «Նացիոնալիզմը մի հիվանդություն է, որը մարդիկ միշտ չէ որ տանում են թեթև ձևով, միշտ չէ, որ այն խոցում է միայն սահմանափակ մարդկանց, պատահում է, որ իր թույնով թմրեցնում է ազնիվ, բայց չափից ավելի դյուրաբորբոք գլուխներ: Նացիոնալիզմ առաջանալ կարող է նաև մեր աշխատանքում տեղ գտած թերությունների հետևանքով...»:

Ամսագիրը նշում է, որ նացիոնալիստական նախապաշարմունքների դեմ պայքարը կոմունիստները միշտ համարում են իրենց կարևորագույն խնդիրը: Եվ այդ պայքարում գերիշխող նշանակություն ունի աշխատավորության գաղափարական զինվածությունը, նրանց քաղաքական գիտակցության աճը:

Նացիոնալիստական մնացուկների դեմ պլանաչափ պայքար են տանում նաև ուրիշ հանրապետական ամսագրեր: «Սաքարթվելոս կոմունիստի»-ում, մասնավորապես, սկզբունքային քննադատության են ենթարկվել որոշ վրացական պատմաբանների աշխատություններում տեղ գտած սխալ դրույթները:

Բուրժուական գաղափարախոսները տարեցտարի ուժեղացնում են գաղափարախոսական դիվերսիաները ամբողջությամբ վերցրած ՍՍՀՄ-ի և նրա առանձին հանրապետությունների դեմ: Հանրապետական կուսակցական ամսագրերը կարևոր տեղ են հատկացնում ՍՍՀՄ-ում և եղբայրական սոցիալիստական երկրներում ազգային հարաբերությունների վերաբերյալ հակակոմունիզմի գաղափարախոսների հերյուրանքների հիմնավորված գիտական քննադատությանը: Հրապարակված հոդվածներում հակահարված է տրվում բուրժուական կեղծարարներին, մերկացվում են նրանց հակագիտական կոնցեպցիաները:

Հակակոմունիզմի գաղափարախոսների դեմ ուղղված ելույթների շարքում ուշադրության են արժանի «Կոմունիստ Ուկրաինի»-ում տպագրված Լ. Նազորնու «ՍՄԿԿ և սովետական պետության ազգային քաղաքականության բուրժուական կեղծարարության քննադատությունը» (№ 3) հոդվածը, ինչպես նաև Յու. Ռիմարենկոյի և Վ. Չերեդնիչենկոյի՝ «Ուկրաինական բուրժուական նացիոնալիզմը հակակոմունիզմի զենքն է» (№ 10) հոդվածը, որտեղ մերկացվում է արտասահման գաղթած ուկրաինական բուրժուական նացիոնալիստների՝ ուկրաինական ժողովրդի ոխերիմ թշնամիների, իսկական էությունը:

Ամեն տեսակի «սովետոլոգների» ճարպիկ հնարանքները հմտորեն է մերկացնում «Կոմունիստ Թաթարիի» ամսագիրը: Մ. Աբդուլլինի՝ «Թաթարական ավտոնոմիայի պատմության կեղծարարության դեմ» հոդվածում Ռ. Փայպսի, Է. Կարրի, Գ. Մենդեի և ուրիշ հակասովետականների հերյուրանքների մերկացմանն օգնող համոզիչ օրինակներ են բերվում: Հեղինակը հետևողականորեն և հիմնավորված ջախջախում է ամերիկյան «սովետոլոգներից» մեկի՝ Ս. Զենկովսկու, թեզերը, որոնք շարադրված են նրա «Պանթուրքիզմը և իսլամը Ռուսաստանում» զրպարտչական գրքում:

Իմպերիալիզմի գաղափարախոսներն ամեն կերպ փորձում են հենվել բուրժուական նացիոնալիզմի վրա, ուժեղացնել գաղափարախոսական դիվերսիան ազգային հարցի բնագավառում: Կուսակցական ամսագրերի պարտքն է անհաշտ պայքար մղել նրանց դեմ, խափանել մեր երկրի ժողովուրդների միասնությունն ու բարեկամությունը ջլատելու նրանց փորձերը:

ՍՍՀՄ 50-ամյակին նվիրված զեկուցման մեջ ցույց է տրված, թե սովետական իշխանության

գանդիստական աշխատանքի ներգործունության ուսումնասիրություններ։ Մասնավորապես, Լատվիայի ԿԿ Վենտսպիլի քաղաքային կոմիտեի նախաձեռնությամբ հետազոտվել են բազմազգ կոլեկտիվներում աշխատող մարդկանց հարաբերությունները, վերլուծվել ինտերնացիոնալ դաստիարակության ձևերն ու մեթոդները։ Ստացված նյութերն ընկել են քաղաքային տեսական կոնֆերանսի հիմքում։ Վերջինի մասնակիցները՝ կուսկազմակերպությունների քարտուղարները, պրոպագանդիստները, կոմերիտական աշխատողները, փորձի փոխանակություն են կատարել։ Կոնֆերանսում ընդունվել են գործնական հանձնարարականներ, որոնք այսօր էլ իրենց աշխատանքում հաշվի են առնում կուսկազմակերպությունները («Կոմունիստ Սովետսկոյ Լատվիի»։ № 10)։

Ներկայումս կուսկազմակերպությունների առջև դրված է պատասխանատու խնդիր՝ ապահովել, որպեսզի ՍՍՀՄ 50-ամյակին նվիրված հանդիսավոր նիստի նյութերը լայնորեն պրոպագանդվեն և խորապես ուսումնասիրեն կոմունիստները, բոլոր աշխատավորները։ Կուսակցական ամսագրերի, ինչպես և սովետական ամբողջ մամուլի պարտքն է լայն մասսաների սեփականությունը դարձնել Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ ձևակերպված տեսական հետևություններն ու գործնական խնդիրները, ցույց տալ կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականության նշանակությունը, ՍՄԿԿ հարաճուն դերը կոմունիզմի կառուցման գործում, լենինյան ազգային քաղաքականության հաջողությունները և ազգային հարաբերությունների զարգացման հեռանկարները ՍՍՀՄ-ում։

Հանրապետական ամսագրերը մեծ փորձ են կուտակել պրոպագանդիստներին, դասախոսներին, զեկուցողներին, քաղինֆորմատորներին, ագիտատորներին օգնություն ցույց տալու գործում։ Անհրաժեշտ է խորացնել այդ աշխատանքը, սիստեմատիկաբար լուսաբանել հոբելյանական նիստի տեսական դրույթները, մեթոդական մշակումներին համապատասխան հրապարակումներով օգնել գաղափարախոսական բնագավառի աշխատողներին։

ՍՍՀՄ հիսնամյակի տարում քիչ փորձ չեն կուտակել և իրենք՝ ամսագրերի աշխատողները, ավելի բազմապիսի են դարձել հրապարակվող նյութերի ժանրերը, հայտնվել են նոր բաժիններ ու խորագրեր, ընդարձակվել է հեղինակային կոլեկտիվը։ Բեղմնավոր կերպով է կենսագործվել համագործակցությունը խմբագրությունների միջև, որոնք նյութեր են փոխանակել, օգնել միմյանց այս կամ այն հանրապետության կյանքին վերաբերող հոդվածներ կազմակերպելու գործում։

Խմբագրությունները հոգ են տարել, որպեսզի անմիջականորեն ՍՍՀՄ կազմավորմանը նվիրված համարները լինեն առանձնապես ցայտուն և բովանդակալից։ Որպես կանոն, այդ համարներում ելույթ են ունեցել միութենական հանրապետությունների կոմկուսակցությունների քարտուղարները, պետական ու տնտեսական ղեկավարներ, աշխատանքի հերոսներ, արտադրության նորարարներ, հասարակական գիտությունների առավել աչքի ընկնող ներկայացուցիչներ, գրականության ու արվեստի գործիչներ։ «Ազերբայջան կոմունիստի», «Սաքարթվելոս կոմունիստի» և «Լենինյան ուղիով» ամսագրերը ինտերնացիոնալիզմին, ժողովուրդների բարեկամությանն ու եղբայրությանն են նվիրել համատեղ հավաքածու համարներ։ Կցանկանայինք նշել «Կոմունիստ Ուզբեկիստանա» ամսագրի հոբելյանական համարը, որի մեջ եղբայրական հանրապետությունների կյանքի պատմությամբ հանդես են եկել միութենական հանրապետությունների կոմկուսակցությունների առաջին քարտուղարները։

Հարկավոր է նշել, որ խմբագրությունները տարբեր ժանրեր օգտագործելով, սկսել են ավելի շատ հրապարակախոսական նյութեր տալ, ժողովրդի մեծ բարեկամությանը նվիրված վառ, հուզիչ ելույթների համար ամսագրերի էջերում տեղ հատկացնելով բանվորներին, կոլտնտեսականներին, կուլտուրայի և արվեստի գործիչներին, գրականագետներին։ Հրապարակախոսությանը մեծ ուշադրություն են դարձրել «Կոմունիստը» (Լիտվիայի ԿԿ Կենտկոմի օրգան), «Թուրքմենստանի կոմունիստի»-ն և մի շարք այլ ամսագրեր։

Ինտերնացիոնալիստական, հայրենասիրական դաստիարակության հարցերին, որոնք մամուլում լայնորեն լուսաբանվում էին ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի տարում, հարկավոր է այսուհետև էլ չթուլացող ուշադրություն նվիրել, աշխատանքում օգտագործելով եղբայրական հանրապետությունների կուսակցական ամսագրերի գրական փորձը, գրական ժանրերի բազմազանությունը։

Կուսակցությունը մեծ նշանակություն է տալիս Սովետական Միության քաղաքացիներին հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով սիստեմատիկաբար և խոր դաստիարակելուն։ Նա քաղաքական-գաղափարախոսական բնագավառի աշխատողներին կոչ է անում ակտիվորեն նպաստել սովետական մարդկանց ինտերնացիոնալիստական գիտակցության, նրանց համազգային հպարտության զարգացմանը, աշխատավորներին սովորեցնել հետևողական դասակարգային, խիստ գիտական մոտեցում ցուցաբերել ժողովուրդների պատմության ու կուլտուրայի գնահատմանը, անհանդուրժողականություն՝ նացիոնալիզմի դրսևորումների հանդեպ, մերկացնել բուրժուական գաղափարախոսների մեքենայությունները, որոնք ձգտում են նացիոնալիստական վերապրուկներ գրգռել դրսից։

«Коммунист», № 3, 1973 г.



# ՎՐԻԺԱՌՈՒՆԵՐԻ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼ ՊԱՐՏՔԸ

Մ. Գ. ՍԱՀԱԿՅԱՆ

Սովետական բազմազգ ժողովուրդը նշեց ՍՍՀՄ կազմավորման 50 տարին։ Այդ նշանավոր տարելիցը նա դիմավորեց ժողովրդական տնտեսության, գիտության ու կուլտուրայի բնագավառներում ձեռք բերած խոշոր նվաճումներով։ Պատմական այդ 50 տարիները միայն խաղաղ աշխատանքի ժամանակաշրջան չեն եղել։ Դրանք եղել են նաև իմպերիալիզմի դեմ մղած համառ պայքարի տարիներ, որոնց ընթացքում աճեց, ամրապնդվեց ու հզոր ուժի վերածվեց ՍՍՀՄ տարբեր ազգությունների մեծ բարեկամությունը։ Ռուսի, ուկրաինացու, բելոռուսի, ղազախի, ուզբեկի, վրացու, հայի, ադրբեջանցու և ՍՍՀՄ մյուս ժողովուրդների ամուր միասնությունն ու անխորտակելի բարեկամությունն ուժեղ արտահայտվեց Հայրենական մեծ պատերազմի տարիներին։

Հայրենական պատերազմի ռազմաճակատներում, ՍՍՀՄ ժողովուրդների մարտական շարքերում գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ արիաբար մարտնչեցին հարյուր հազարավոր հայ ռազմիկներ, որոնք հերոսության ու հայրենասիրության նոր էջեր գրեցին սովետական ժողովրդի պատմության մեջ։

Գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մղված պայքարի տարեգրության մեջ արժանավոր տեղ են գրավում Լենինգրադի մարզի ժողովրդական վրիժառուների մարտական գործերը։ Նրանց շարքերում կային նաև բազմաթիվ հայ պարտիզաններ։

Պարտիզանական 3-րդ բրիգադի 4-րդ գնդի կազմում գերմանական գերությունից փախած հայ մարտիկներից ստեղծվում է 41-րդ ջոկատը։ Սկզբում ջոկատի հրամանատար է նշանակվում Զավեն Համբարձումյանը։ Պարտիզանական նոր ստորաբաժանման մարտունակությունը բարձրացնելու համար նրան են հանձնըվում երկու վաշտ և այնտեղ ուղարկվում փորձառու հրամանատարներ Կ. Ֆ. Մատյուշենկոն, Ա. Ա. Ցուլենինը, Գ. Գ. Սվետլովը և ուրիշներ։ Հրամանատարական պաշտոններ են ստանում Լազար Արզումանի Բալոյանը, Արտեմ Գևորգի Սալումյանը, Սուրեն Առաքելի Սարգսյանը, Գառնիկ Ռուշանի Ղարիբյանը, Մուրադ Սամսոնի Մկրտումյանը, Պարույր Արշակի Մարտիրոսյանը, Հապետնակ Աղաջանի Դանիելյանը, Բորիս Դավիթի Բալաևը, Արծվիկ Գրիգորի Դավթյանը, Երվանդ Հովհաննեսի Եղիազարյանը, Պերճ Սերգեյի Աղաջանյանը և ուրիշներ[1]։ Նրանց եռանդուն աշխատանքի շնորհիվ 41-րդ ջոկատի պարտիզաններն արագորեն յուրացրին պարտիզանական պայքարի ձևերն ու մեթոդները, և կարճ ժամանակից հետո ջոկատը դարձավ պարտիզանական 3-րդ բրիգադի մարտական կուռ ստորաբաժանումներից մեկը։

Ջոկատն իր առաջին մարտական մկրտությունն ստացավ օգոստոսի 17-ին։ Այդ օրը

---

1 Լազար Արզումանի Բալոյան, 1910 թ. ծնված, Ադր. ՍՍՀ Հադրութի շրջանից։ Սուրեն Առաքելի Սարգսյան, 1918 թ. ծնված, Ադր. ՍՍՀ Ստեփանակերտի շրջանի Սարման գյուղից։ Գառնիկ Ռուշանի Ղարիբյան, 1916 թ. ծնված, Էջմիածնի շրջանից։ Մուրադ Սամսոնի Մկրտումյան, 1913 թ. ծնված, ք. Բաքու։ Պարույր Արշակի Մարտիրոսյան, 1915 թ. ծնված ք. Լենինական։ Հապետնակ Աղաջանի Դանիելյան, 1910 թ. ծնված, ք. Կիրովաբադ։ Բորիս Դավիթի Բալաև, 1916 թ. ծնված, Ուզբեկ. ՍՍՀ ք. Սամարղանդ։ Արծվիկ Գրիգորի Դավթյան, 1916 թ. ՀՍՍՀ ք. Արթիկ։ Երվանդ Հովհաննեսի Եղիազարյան, 1922 թ. ծնված, ք. Կիրովաբադ։ Պերճ Սերգեյի Աղաջանյան, ՀՍՍՀ ք. Դիլիջան։

4-րդ գնդի 35-րդ և 37-րդ ջոկատները հանկարծակի գրոհով հարձակվեցին Պսկով—Պորխով երկաթգիծը պաշտպանող գերմանական պահակակետերի վրա, ոչնչացրին այն և սկսեցին պայթեցնել ռելսերը: Նրանց գործողությունները պաշտպանում էր 41-րդ ջոկատը՝ Ջ. Համբարձումյանի ղեկավարությամբ:

1943 թ. սեպտեմբերի սկզբին պարտիզանական 3-րդ բրիգադը ծանր փորձություն ապրեց: Ֆաշիստական հրամանատարությունը, անհանգըստացած այդ բրիգադայի աճող ակտիվությունից, նրա դեմ նետեց խոշոր ուժեր: Սկսվեցին ծանր մարտեր: Մահվան օղակից դուրս գալու միակ ելքն այն էր, որ գրավեին Ժիտնիցա գյուղը, ոչնչացնեին թվով 500 մարդուց բաղկացած թշնամու կայազորը և դուրս գային շրջապատումից: Առաջինը թշնամու դեմ գրոհի են նետվում 2-րդ գնդի մարտիկները՝ Դմիտրի Խուդյակովի հրամանատարությամբ: Մեծ դժվարությամբ հաղթահարելով հակառակորդի դիմադրությունը՝ պարտիզանները մարտերով անցնում են գյուղի միջով: Նրանց ետևից առաջ է նետվում դեռևս անհրաժեշտ մարտական փորձ չունեցող 4-րդ գունդը՝ Եֆիմովի հրամանատարությամբ: Վերջինիս չի հաջողվում օգտվել հարմար պահից[1]: Բրիգադի հրամանատար Ա. Վ. Գերմանը, շփոթություն նկատելով 4-րդ գնդի մարտակարգերում, շտաբի հետ շարժվող № 11 ջոկատի մարտիկներին գրոհի է տանում հակառակորդի դեմ: Պարտիզանները ճեղքում են թշնամու օղակը և դուրս գալիս շրջապատումից: Հերոսի մահով զոհվում է բրիգադի հրամանատար Ալեքսանդր Գերմանը[2]:

Այդ մարտերին ակտիվորեն մասնակցեց նաև 41-րդ ջոկատը: Սեպտեմբերին 4-րդ գնդի հրամկազմի մեջ տեղի ունեցան որոշ փոփոխություններ: Սեպտեմբերի 12-ին Ջավեն Համբարձումյանը ազատվեց 41-րդ ջոկատի հրամանատարի պարտականություններից և նշանակվեց նույն ջոկատի հրամանատարի տեղակալ՝ հետախուզության գծով[3]: Այդ ջոկատի հրամանատարի պարտականությունը դրվեց կապիտան Արտեմ Սաղումյանի վրա: Մարտական վարժական պարապմունքներից հետո 41-րդ ջոկատն ակտիվ մարտական գործողություններ ծավալեց թշնամու դեմ: Հոկտեմբերի 1—15-ը Սաղումյանի ջոկատը Բոլշոկ, Վիբոր, Նովոռժև, Զիմարի և Պետրովսկի բնակավայրերի շրջանում ոչնչացրեց 103 գերմանանկան զինվոր ու սպա, հոկտեմբերի 16-ին Օստրով—Ռեզեկնե երկաթգծում խորտակեց տանկերով ու ավտոմեքենաներով բեռնված թշնամու զինվորական էշելոնը, ոչնչացրեց երկու շոգեքարշ և 25 վագոն:

Հոկտեմբերի 18—19-ը Սաղումյանի պարտիզանները պայթեցրին Դնո—Նովոսոկոլնիկի երկաթգիծը, Ուդա գետի վրայի 40 մետրանոց կամուրջը, ոչնչացրին 3420 մետր էլեկտրական ու կապի գիծ, 21 հիտլերական և այլն[4]: Մարտական ակտիվ գործողություններ վարելու և թշնամու կենդանի ուժի ու տեխնիկայի կորուստներ պատճառելու համար 4-րդ գնդի հրամանատարը հոկտեմբերի 21-ի № 82 հրամանով շնորհակալություն հայտնեց Կիսիլևին, Գորյաչևին, Սաղումյանին, Մատյուշենկոյին, Կրուգլովին, Համբարձումյանին, Ալեքսեևին և Վասիլևին[5]:

Հակառակորդի դեմ մղված մարտերում բազում հերոսական սխրագործություններ կատարեցին 41-րդ ջոկատի պարտիզանները: Յոթ ամիս Ա. Վ. Գերմանի անվան պարտիզանական 3-րդ բրիգադի 4-րդ գնդի կազմում ջոկատը հերոսաբար մարտնչեց հակառակորդի դեմ, պատվով կատարեց հրամանատարության մարտական առաջադրանքները: Իր գոյության ընթացքում 41-րդ ջոկատը ոչնչացրեց 1993 գերմանական զինվոր ու սպա, խորտակեց ու պայթեցրեց 25 զինվորական էշելոն, 88 ավտոմեքենա, 7 գնդացիր, 65 քարշակ, 2 տրակտոր, 8 կամուրջ, երեք պահեստ, 14700 մետր կապի գիծ և այլն[6]:

Հակառակորդի դեմ մղված մարտերում արիաբար կռվեցին և հերոսի մահով ընկան Սուրեն Միքայելի Մարգարյանը, Աղասի Արշակի Սարգսյանը, Աշոտ Դավթի Հովհաննիսյանը, Ջավեն Սերգեյի Համբարձումյանը, Սերգեյ Սահակի Հովհաննիսյանը, Էլբակ Հարութի Մանուկյանը, Հակոբ Բաղդասարի Բաղդասարյանը, Գեորգի Ցվետկովը և ուրիշներ:

[1] *ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Լենինգրադի ֆիլիալի կուսարխիվ (հետագայում Լենինգրադի կուսարխիվ), ֆ. 0—116, ց. 9, գ. 767, թ. 91:*

[2] *Նույն տեղը, ց. 1, գ. 1694, թ. 66:*

[3] *Նույն տեղը, գ. 1698, թ. 49—55:*

[4] *Նույն տեղը, ֆ. 0—116, ց. 1, գ. 1694, թ. 87:*

[5] *Նույն տեղը, թ. 54—180:*

[6] *Աղասի Արշակի Սարգսյան, 1908 թ. ծնված, Ամասիայի շրջան, գ. Ջալաբ: Աշոտ Դավթի Հովհաննիսյան, 1913 թ. ծնված, Ադր. ՍՍՀ Ստեփանակերտի շրջան, գ. Դահրավ: Ջավեն Սերգեյի Համբարձումյան, 1913 թ. ծնված, Երևան: Սերգեյ Սահակի Հովհաննիսյան, 1920 թ. ծնված, Ադր. ՍՍՀ ք. Խանլար: Էլբակ Հարութի Մանուկյան, 1907 թ. ծնված, Հոկտեմբերյանի շրջան գ. Հոկտեմբեր: Հակոբ Բաղդասարի Բաղդասարյան, 1917 թ. ծնված, Կամոյի շրջան, գ. Ղուլալի (այժմ Կարմիր գյուղ):*



Հակառակորդի հաղորդակցության ճանապարհների, կամուրջների, պահեստների պայթեցման և այլ դիվերսիաների կազմակերպման գործում հմուտ մասնագետ էր նույն գնդի 37-րդ ջոկատի վաշտի հրամանատար Հովսեփ Սողոմոնի Մելիքյանը[1]: Վերջինս 1943 թ. օգոստոսին ինքնաթիռից պարաշյուտով իջեցվել էր Ա. Գերմանի անվան պարտիզանական 3-րդ բրիգադի գործողությունների շրջանը: Սկսած օգոստոս ամսից մինչև Լենինգրադի մարզի ազատագրումը՝ Հ. Մելիքյանը բազմաթիվ պարտիզանների սովորեցրեց ականապատման ու պայթեցման տեխնիկան: Նա ոչ միայն սովորեցնում, այլև, որպես վաշտի հրամանատար, ղեկավարում էր դիվերսիոն գործողությունները: Դիվերսիոն այն խումբը, որի մեջ մտնում էին Վալենտին Բարինովը, Վասիլի Բելովը, Կոստանդին Պոնկրատովը, Հ. Մելիքյանի անմիջական ղեկավարությամբ ու մասնակցությամբ, 1943 թ. նոյեմբերի 12-ին և դեկտեմբերի 8-ին Պսկով—Պորխով, Պսկով—Կարամիշևո գծում խորտակեց տանկերով, թնդանոթներով և ավտոմատներով բեռնված ռազմաճակատ շարժվող թշնամու երկու զինվորական էշելոն, ոչընչացրեց 2 շոգեքարշ, 20 վագոն և 9 հարթակ[2]: Հ. Մելիքյանի մասին 4-րդ գնդի քաղբաժնի դեկտեմբերի 2-ի զեկուցագրում գրված է. «ՀամԿ(բ)Կ անդամ Մելիքյանը ոչնչացրել է զենքով ու ռազմամթերքով բեռնված 3 զինվորական էշելոն: Էշելոնները խորտակվել են բացառիկ դժվարին պայմաններում»[3]:

Լենինգրադի մարզում մեծ թվով հայ պարտիզաններ էին մարտնչում թշնամու դեմ նաև մյուս բրիգադաներում ու ջոկատներում: 1941 թ. սեպտեմբերից սկսած, երբ սկսվեց թշնամու առաջխաղացումը դեպի Լենինգրադ, կործանիչ գումարտակների ու պարտիզանական ջոկատների կազմում բազմաթիվ հայ ուսանողներ, ասպիրանտներ, բանվորներ, ծառայողներ անցան ռազմաճակատի գիծը և մասնակցեցին պարտիզանական պայքարին: Նրանցից Հմայակ Արամի Աղուզումցյանը Լենինգրադի Լենսովետի անվան տեխնոլոգիական ինստիտուտի 3-րդ կուրսի ուսանող էր, երբ սկսվեց պատերազմը: 1941 թ. հուլիսին, որպես աշխարհազորային, մեկնում է ռազմաճակատ և կռվում թշնամու դեմ, իսկ օգոստոսին 4-րդ պարտիզանական գնդի 40-րդ ջոկատի կազմում անցնում է թշնամու թիկունքը և մասնակցում մի շարք դիվերսիաների: Նա իր ղեկավարած խմբով ոչնչացնում է հակառակորդի շտաբը, սպանում գեներալին և երկու պայուսակ փաստաթղթերով վերադառնում զորամաս (տե՛ս «Технолог», 1964, մայիսի 9):

Պարտիզանական 4-րդ գունդը, հակառակորդի թիկունքում մղված մարտերում ծանր կորուստներ կրելու պատճառով, համալրվում է և նորից անցնում ռազմաճակատի գիծը: Հ. Աղուզումցյանը Լենինգրադում չի մնում: Թշնամուն հարվածելու անհագ ձգտումը նրան մղում է ռազմաճակատ: Սեպտեմբերին վիրավորվում է և շուտով, բուժվելուց հետո, նորից մեկնում ռազմաճակատ: Հոկտեմբերի 26-ից հարազատները նրանից այլևս ոչ մի նամակ չեն ստանում: Ռազմաճակատից ստացված նրա նամակները ընթերցելիս՝ սես տեսնում ես 22-ամյա հայ երիտասարդի վեհ կերպարը: Աղուզումցյանի նամակները ներծծված են հայրենասիրությամբ ու լավատեսությամբ. «Ես այսօր ռազմաճակատ եմ մեկնում,— գրում է Հմայակը ծնողներին:— Եղեք հպարտ, չընկճվեք, չարտասվեք, արիաբար ինքներդ համոզվեք, որ զոհեր շատ կլինեն ու եթե զոհվողը մենք լինենք (խոսքը վերաբերում է նաև մյուս երեք եղբայրներին, որոնք նույնպես ռազմաճակատում էին), սառնասրտությամբ ընդունեք այդ, որովհետև մեծ հաղթանակը մեծ զոհեր է պահանջում: Դուք հպարտացեք նրանով, որ ձեր զավակներն իրենց կրծքով պաշտպանում են սոցիալիստական հայրենիքը»: Մեկ այլ նամակում նա գրում է. «Հարց է ծագում, ինչն է մարդու համար ամենաթանկը: Մի՞թե կյանքը չէ: Այժմ հիմնականը ատելի թշնամու դեմ մըղվող պայքարն է, որը կարող է զրկել մարդուն կյանքից, ես ընտրել եմ մտածված և գիտակցաբար: Այժմ ամբողջ մարդկության առաջ դրված է ամենալուրջ հարցը— ոչնչացնել հիտլերականներին ու ֆաշիզմին: Ով չի ցանկանում լինել ստրուկ, ով ցանկանում է ապրել, նա պետք է մասնակցի այդ պատերազմին (տե՛ս «Ավանգարդ», 1964, մայիսի 9):

Տեխնոլոգիական ինստիտուտի սաներից Լենինգրադի համար մարտնչեցին ասպիրանտներ Գուրգեն Լևոնի Պետրոսյանը, Խաչիկ Արամի Պետրոսյանը[4], ինստիտուտի ԼԿԵՄ կազմակերպության քարտուղար Վ. Ազիզյանը, ուսանողներ Աշոտ Բարսեղի Հարությունյանը և Թովմաս Ստեփանի Նաջարյանը: Պարտիզանական

[1] *Հովսեփ Մելիքյանը այժմ բնակվում է Երևանում:*

[2] *Լենինգրադի կուսարխիվ, ֆ. 0—116, ց. 1, գ. 1698, թ. 65—75:*

[3] *Նույն տեղը, ց. 9, գ. 770, թ. 268:*

[4] *Գուրգեն Լևոնի Պետրոսյան, 1914 թ. ծնված և Խաչիկ Արամի Պետրոսյան, 1910 թ. ծնված, երկուսն էլ ավարտել են Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտը 1938 թ.: Առաջինը զոհվեց 1941 թ., իսկ երկրորդը՝ 1942 թ.:*

շարժման ակտիվ մասնակիցներից էին Լենինգրադյան 4-րդ պարտիզանական գնդի հրամանատար, գնդապետ Հայկ Թամամյանը[1], պարտիզանական ջոկատների հրամանատարներ Արթուր Երվանդի Աբրոյանը և Հովհաննես Հովսեփի Վասիլյանը[2]: 1941 թ. սեպտեմբերին Ա. Աբրոյանի հրամանատարությամբ պարտիզանական 73-րդ ջոկատը, որը հիմնականում կազմված էր «Բոլշևիկ» էլեկտրասարքերի և Բալտեխֆլոտի գործարանների բանվորներից (183 հոգի), 23-րդ բանակի հրամանատարության հատուկ առաջադրանքով անցավ ռազմաճակատի գիծը, խնդիր ունենալով հանկարծակի հարձակումներով կազմալուծել հակառակորդի ստորաբաժանումների շտաբների աշխատանքը, ոչնչացնել գերմանական սպաներին, գրավել օպերատիվ կարևոր փաստաթղթեր, պայթեցնել հեռախոսային կապի գծերը, կամուրջները, խընուղային ճանապարհները և այլն: Ռազմաճակատի գիծն անցնելու ժամանակ թշնամու հետախույզները նկատում են պարտիզաններին և հետևում նրանց: Սեպտեմբերի 5-ին հակառակորդի մեծաթիվ ուժերը հանկարծակի արշավում են Աբրոյանի ջոկատի ճամբարի վրա: Ա. Աբրոյանը հրամայում է մարտերով ետ քաշվել և նորից միանալ յուրայիններին: 187 պարտիզաններից վերադառնում են 87-ը[3]: Չնայած անհաջողությանը, 73-րդ ջոկատը Ա. Աբրոյանի հրամանատարությամբ, 41 հոգով հոկտեմբերի 6-ին երկրորդ անգամ անցնում է ռազմաճակատի գիծը և նույն օրն էլ մարտական գործողություններ սկսում թշնամու թիկունքում: Տուրիշկինո բնակավայրի մոտ պարտիզանները պայթեցնում են երկաթուղային կամուրջը և ոչնչացնում թշնամու պահակակետերը: Այս գործողությունների ժամանակ աչքի են ընկնում Ծիլովը, Յանուշիսը, Ուվարովը, Կոշելևը և լեյտենանտ Դմիտրևը: Հոկտեմբերի 11-ին պարտիզանները Ա. Աբրոյանի հրամանատարությամբ Բերեզովկա—Ծապկի խճուղում ոչնչացնում են թշնամու բեռնատար ավտոմեքենան և սպանում 30 հիտլերականի, իսկ այնուհետև ներխուժելով գյուղը, դուրս են քշում այնտեղից հիտլերականներին և պայթեցնում պահեստներ, այրում 4800 տոննա խոտ[4]:

Լենինգրադի պարտիզանական շտաբում հըմուտ հետախույզի համբավ ուներ Հովհաննես Հովսեփի Վասիլյանը, որը սկզբում 1-ին հատուկ բրիգադի հետախուզական ջոկատի կոմիսարն էր, իսկ հետո՝ նույն բրիգադի շտաբի պետի տեղակալը: 1943 թ. հունիսից նրան վստահվեց առանձին, հատուկ պարտիզանական հետախուզական ջոկատի հրամանատարի պաշտոնը[5]: Նրա հրամանատարությամբ ջոկատը գործել է Դեմյանսկի, Դեդովիչի, Պոլովսկի, Բելեբեյկովսկի, Աշևսկի, Ալավկովսկի, Պսկովի, Օստրովի, Կարամիշևի շրջաններում և շատ կարևոր տեղեկություններ հաղորդել Լենինգրադի պարտիզանական շտաբին ու Լենինգրադի ռազմաճակատի զորքերի հրամանատարությանը՝ հակառակորդի ուժերի դասավորության, շարժման ուղղության, օդանավակայանների տեղաբաշխման, տանկային ու մոտոմեքենայացված զորամասերի քանակական կազմի ու զինվածության մասին: Հետախուզական աշխատանքներում դրսևորած մեծ ծառայությունների համար նա պարգևատրվեց Կարմիր աստղի և Հայրենական պատերազմի պարտիզանի 1-ին աստիճանի շքանշաններով[6]:

Համարձակ էին գործում թշնամու թիկունքը պարաշյուտով իջեցված դեսանտայինները, որոնք օգնում էին պարտիզաններին՝ ստեղծելու դիվերսիոն ջոկատներ և ռելսեր պայթեցնող խմբեր: Պարտիզանական 1-ին բրիգադում էր գտնվում ականներ դնող 9-րդ առանձին գվարդիական գումարտակի գվարդիայի սերժանտ Սուրեն Մովսեսի Մելքումյանը[7], որը թշնամու թիկունքն էր իջեցվել 1943 թ. օգոստոսին: Պարտիզանական բրիգադում եղած ժամանակ նա պատրաստեց մի շարք դիվերսիոն խմբեր, որոնց կողմից ռելսային պայթեցումների «համերգները»[8] ծանր վիճակի մեջ էին դնում հակառակորդին: Նա խորտակում է հակառակորդի ռազմական տեխնիկայով բեռնված զինվորական երկու էշելոն. առաջինը՝ 1943 թ. նոյեմբերի 23-ին, իսկ երկրորդը՝ 1944 թ. հունվարի 24-ին[1]: Մարտական սխրանքի համար նա պարգևատրվեց Հայրենական պատերազմի 2-րդ աստիճանի շքանշանով:

Մարտական համարձակ գործողություններ է կատարում նաև դեսանտային, պարտիզանական 10-րդ բրիգադի պարտիզան Կոստանդին Հակոբի Մկրտումյանը[2]: Խիտնիցկ գյուղի համար մղված մարտերում նա իր դասակով առաջինը ներխուժեց գյուղ և հնարավորություն տըվեց, որ բրիգադի ջոկատներից մեկը դուրս գա շրջապատումից: Ֆիկլիստով բնակավայրի մոտ վաշտը նրա հրամանատարությամբ ոչնչացրեց 80 հիտլերական: Նա թշնամուն ծանր հարվածներ հասցրեց նաև Կարամիշևի, Պորխովի, Պսկովի և Դնոյի շրջաններում: Թշնամու թիկունքում եղած ժամանակ Մկրտումյանը խորտակեց հակառակորդի զինվորական երկու էշելոն, պայթեցրեց 16 կամուրջ, 400 մետր ռելս, 1 ավտոմեքենա և ոչնչացրեց 60 հիտլերական:

Լենինգրադի մարզի տարբեր շրջաններում էին գործում պարտիզաններ Աղասի Հակոբի Ազիզյանը (11-րդ բրիգադ) և Պյոտր Պետրոսի Հակոբյանը (5-րդ բրիգադ): Նրանք մեկական զինվորական էշելոն ջախջախելու համար Լենինգրադի պարտիզանական շտաբի կողմից պարգևատրվել են Հայրենական պատերազմի պարտիզանի առաջին աստիճանի շքանշանով:

Թշնամու դեմ մղված մարտերում իրենց լավ դրսևորեցին պարտիզանական 2-րդ բրիգադի մատակարարման պետ Մանավազ Հասրաթի Հարությունյանը, 10-րդ բրիգադի հետախուզական պետի տեղակալ, լեյտենանտ Աղվան Հովակիմի Պետրոսյանը, զինվորական ինժեներ Վարուժան Իոսիֆի Գասպարյանը, Զաքար Մակարի Սարգսյանը, Քրիստափոր Բագրատի Պետրոսյանը, Զավեն Արշակի Միրզախանյանը, Միքայել Լազարի Թումասովը, Գրիգոր Մատվեյի Հարությունովը, Սասունիկ Վաղարշակի Ավդալյանը, Գրիգոր Ստեփանի Սախանյանը, Արկադի Վարդևանի Զաքարյանը և ուրիշներ:

Լենինգրադի մարզում պարտիզանական պայքարի ամբողջ ընթացքում իրենց հայրենանվեր գործերով ու սխրանքներով աչքի ընկավ սովետական փառապանծ այն օդաչուների ջոկատը, որը, ճեղքելով գիշերային մթությունը, ռելեֆային անբարենպաստ դժվարին պայմաններում վայրէջք էր կատարում թշնամու թիկունքում, պարտիզաններին հասցնելով անհրաժեշտ զինամթերք և պարենամթերք:

Այդ օրերին լարված էին գործում Գատչինյան 12-րդ հեռավոր գործողության ավիացիոն գնդի օդաչուները, որոնք զինամթերք ու պարենամթերք էին տեղափոխում պարտիզանների համար: Միայն մեկ գիշերվա ընթացքում (1943 թ. հունվարի 31-ի լույս փետրվարի 1-ի գիշերը) գնդի օդաչուները, գվարդիայի կապիտաններ Վազգեն Սեմյոնի Բաղդասարովը, Պլատոն Պլետնիկովը, գվարդիայի լեյտենանտ Ավագ Ջավադի Մանուչարովը և գվարդիայի կրտսեր լեյտենանտ Աֆանասի Կոմարովը պարտիզանների համար տեղափոխեցին 11820 կգ ռազմամթերք: Գվարդիայի կապիտաններ Վազգեն Բաղդասարովը և Պլատոն Պլետնիկովը մեկական թռիչքի փոխարեն կատարեցին երկու թռիչք. յուրաքանչյուրը տեղափոխեց 3000 կգ բեռ: Գվարդիայի լեյտենանտ Ավագ Մանուչարովը տեղափոխեց 1560 կգ բեռ: Մարտական առաջադրանքի կատարման ժամանակ աչքի ընկան օդային հրաձիգներ, գվարդիայի ավագ Կուզմին Ռակազովը, Լեոնիդ Տիմանյուկը, Իվան Կիսելյովը և ուրիշներ: Այդ օդաչուներն ու հրաձիգները պարգևատրվեցին Հայրենական պատերազմի պարտիզանի 2-րդ աստիճանի շքանշանով:

Բացի զինվորական ինքնաթիռներից, Լենինգրադին սպասարկում էին նաև քաղաքացիական ավիացիայի օդաչուները: 4-րդ առանձին գնդում հմուտ տեխնիկի համբավ էր վայելում Սուրեն Գլավուզյանցը, որի սպասարկած ինքնաթիռները, 1942 թ. օգոստոսից սկսած, թշնամու թիկունքը կատարել էին 152 մարտական թռիչք՝ տեղափոխելով 955 դեսանտային, 144.250 կգ ռազմամթերք և նետել 1540 կգ թռուցիկ: Ինքնաթիռների տեխնիկական լավ սպասարկման համար Լենինգրադի պարտիզանական շարժման շտաբը Ս. Գլավուզյանցին պարգևատրեց Հայրենական պատերազմի պարտիզանի 2-րդ աստիճանի շքանշանով[2]: Հրամանատարության առաջադրանքները ճիշտ և ժամանակին կատարելու համար այդ շքանշանով պարգևատրվեցին տեխնիկներ Միխայիլ Բայատինը, Անատոլի Կոնդրատևը, Սերգեյ Միխայլովը, Միխայիլ Նազարովը և ուրիշներ:

Գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մղված մարտերում հայ պարտիզանները բազում հերոսական սխրագործություններ կատարեցին, թշնամու դեմ կռվեցին անձնազոհաբար ու հայրենասիրական բուռն զգացումով և իրենց համեստ ավանդը ներդրին լենինգրադի մարզը ֆաշիստական զավթիչներից ազատագրելու գործում:

[1] Տե՛ս Ա. Մախասյան, Սովետական բանակի հայ գործիչները, էջ 326:

[2] Արթուր Երվանդի Աբրոյան, 1911 թ. ծնված, պատերազմի նախօրյակին աշխատում էր Վ. Ի. Լենինի անվան գործարանում: Հովհաննես Հովսեփի Վասիլյան, 1918 թ. ծնված, 1939 թ. ավարտել է Երևանի էլեկտրատեխնիկական տեխնիկումը:

[3] Լենինգրադի կուսարխիվ, ֆ. 0—116, ց. 1, գ. 689, թ. 1—15:

[4] Լենինգրադի կուսարխիվ, ֆ. 0—116, ց. 1, գ. 690, թ. 6:

[5] Նույն տեղը, ց. 14, գ. 40, թ. 113:

[6] Նույն տեղը, ց. 4, գ. 828, թ. 3, գ. 742, թ. 52:

[7] Սուրեն Մովսեսի Մելքոնյան, 1918 թ. ծնված, Շամշադինի շրջան Բերդ գյուղում: 1944 թ. նոյեմբերին մի խումբ ընկերների հետ թռչում է թշնամու թիկունքը, որտեղ մարտերից մեկի ժամանակ հերոսաբար զոհվում է:

[8] Պայթեցումները պարտիզանները անվանում էին «համերգներ»:

[1] Լենինգրադի կուսարխիվ, ֆ. 0—116, ց. 4, գ. 908, թ. 31:

[2] Կոստանդին Հակոբի Մկրտումյան, 1902 թ. ծնված, Սիսիանի շրջան գ. Անգեղակոթ: Նա այժմ բնակվում է նույն շրջանի Բազարչայ գյուղում և աշխատում է Որոտանի սովխոզում որպես գըլխավոր հաշվապահ:

## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ

# ՃԳՆԱԺԱՄԸ ԽՈՐԱՆՈՒՄ Է

ՎԱՐՍԻԿ ՓԻԼՈՅԱՆ

*ՍՄԿԿ XXIV համագումարին կուսակցության Կենտկոմի տված հաշվետու զեկուցման մեջ, վերլուծելով կապիտալիստական աշխարհի այժմյան տնտեսական-քաղաքական իրավիճակը, Լ. Ի. Բրեժնևը ասաց. «Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը շարունակվում է խորանալ։ Նույնիսկ առավել զարգացած կապիտալիստական պետությունները զերծ չեն տնտեսական լուրջ ցնցումներից։ Օրինակ, ահա արդեն մոտավորապես երկու տարի է, ինչ ԱՄՆ-ը չի կարողանում դուրս պրծնել հերթական տնտեսական ճգնաժամից։ Վերջին տարիներին տեղի ունեցավ կապիտալիզմի նաև վալյուտա-ֆինանսական սիստեմի լուրջ ճգնաժամ։ Մշտական երևույթ է դարձել ինֆլյացիայի ու գործազրկության միաժամանակյա աճը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 19)։*

*Կապիտալիստական աշխարհի վալյուտային ճգնաժամը սկսվել է վաղուց, երբ ժամանակ առ ժամանակ թուլանում կամ ուժեղանում էր։ Կապիտալիստական երկրների ֆինանսական ու բանկային մագնատները, կապիտալիստական առաջատար երկրների կառավարող օրգանները, ինչպես նաև միջազգային ֆինանսա-տնտեսական կազմակերպությունները (միջազգային վալյուտային ֆոնդն ու ոսկյա պուլը և այլն) մշտապես ելք են որոնել ճգնաժամից դուրս գալու համար, բայց որևէ լուրջ արդյունքի չեն հասել։ Այժմյան վալյուտա-ֆինանսական ճգնաժամը կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի ամենալուրջ արտահայտությունն է, քանի որ այն ընդգրկում է ո՛չ թե մի առանձին երկիր կամ մի խումբ երկրներ, այլ կապիտալիստական երկրներն ընդհանրապես։ Այս ճգնաժամը այնքան խոր է, որ հնարավոր չէ կանխել սովորական միջոցներով։*

*Հայտնի է, որ միջազգային տնտեսական փոխհարաբերությունների հետ կապված հաշվարկների իրականացման համար բոլոր պետությունների ընդունած վճարման միակ միջոցը ոսկին էր։ Առաջին համաշխարհային պատերազմից հետո սկսեցին վերոհիշյալ նպատակների համար օգտագործել նաև կապիտալիստական աշխարհի երկու հարուստ երկրների (Անգլիա, ԱՄՆ) վալյուտաները։ Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ԱՄՆ-ը առաջնակարգ դիրք գրավեց և՛ համաշխարհային կապիտալիստական տնտեսության մեջ, և՛ վալյուտա-ֆինանսական ոլորտում. այնտեղ կուտակվեց ոսկու համաշխարհային պաշարների մոտ 70 տոկոսը։ Այդ հանգամանքը օբյեկտիվ անհրաժեշտություն ստեղծեց ոսկին օգտագործելու կա՛մ համաշխարհային շրջանառության մեջ, կա՛մ փոխարինելու ոսկուն համարժեք դրամական միավորով։*

*1944 թվականին Բրետոն-Վուդի (ԱՄՆ) միջազգային վալյուտա-ֆինանսական կոնֆերանսում ստեղծվեց միջազգային վալյուտային ֆոնդ, ընդունվեց դրա կանոնադրությունը, որի համաձայն համաշխարհային վալյուտային սիստեմի հիմքում դրվեց ամերիկյան դոլարը։ Այն դարձավ բոլոր ազգային վալյուտաների վալյուտան և ոսկու գնի վերահսկողը. սահմանվեց փոխանակման կայուն կուրս։ Կանոնադրության համաձայն բոլոր վալյուտաների կուրսը ոսկու պաշտոնական բովանդակությունից կարող է շեղվել մի տոկոսի սահմաններում՝ վեր կամ վար։ Այդ ժամանակից ի վեր, դոլարի նկատմամբ եվրոպական վալյուտաների արժեքների անկման (դևալվացիայի) կամ բարձրացման (ռևալվացիայի) հարցերը լուծվում էին միջազգային վալյուտայի ֆոնդի միջոցով։ Տարբեր երկրների կենտրոնական բանկերը պարտավոր էին պահպանել կայուն կուրսը. այսինքն՝ դոլարի կուրսի անկման ժամանակ նրանք պարտավոր էին իրենց ազգային վալյուտայով գնել անսահմանափակ քանակությամբ դոլարներ։ Միջազգային վալյուտային ֆոնդում ստեղծվեցին վալյուտային ռեզերվներ, դոլարի կուրսի տատանման դեպքում առաջացած անհարթությունների վերացման նպատակով։ Քանի որ դոլարին արտոնություններ էին տրվել, ուստի, ԱՄՆ-ը պարտավորվեց հարկ եղած ժամանակ արտասահմանյան երկրներում կուտակված դոլարները ընդունված կայուն գնով փոխանակել ոսկով՝ մեկ ունցիա ոսկին (31,1 գր) 35 դոլարով։*

*Հետպատերազմյան շրջանի տասը-տասներկու տարիներին դոլարի այդպիսի արտոնյալ վիճակը միջազգային վալյուտային ֆոնդում ընդգրկված երկրներում անհանգստություն չէր հարուցում, քանի որ ԱՄՆ-ը պատերազմից հետո այդ երկրների գլխավոր մատակարարն էր։ Եվրոպական երկրները, առաջացած դժվարությունների վերացման և հատկապես արդյունաբերության վերականգնման համար, ԱՄՆ-ից գնում էին սարքավորումներ, մեքենաներ, հաստոցներ, ինչպես նաև սննդամթերք։ Դրա համար էլ 1949 թ. վերջում ԱՄՆ-ի ոսկու պաշարները հասան 24 մլրդ 637 մլն դոլարի, 1941 թ. 22 մլրդ 713 մլն դոլարի դիմաց (*А. И. Стадниченко, Валютные потрясения на Западе, *1968* г., стр. *18—20)։ 1949 թ. ԱՄՆ-ի թղթադրամների ոսկով ապահովվածությունը հասնում էր 57 տոկոսի. նման ապահովվածություն այդ ժամանակաշրջանում ոչ մի կապիտալիստական երկիր չուներ։ Բացի դրանից, ամերիկյան դոլարը ձեռք բերեց նաև ռեզերվային վալյուտայի ֆունկցիա, այսինքն՝ այն երկրները, որոնք չունեին ոսկու համապատասխան պաշարներ, որպես վալյուտա իրենց մոտ պահում էին դոլարը։ Այդպիսի երկրների թիվը պատերազմից հետո շատ էր, ուստի, ամերիկյան դոլարի նկատմամբ մեծ պահանջարկ առաջացավ։*

*Օգտվելով ստեղծված իրադրությունից, ամերիկյան գործատերերը դոլարով գնում էին արդյունաբերական ձեռնարկություններ և մեծ կապիտալ ներդրումներ կատարում այդ երկրներում։ Նրանք կարծում էին, թե դոլարի շնորհիվ (որպես ռեզերվային վալյուտայի) միշտ կարող են իշխել այդ երկրների*

վրա, նրանց թելադրել իրենց կամքն ու պայմանները։ Բայց վերջին տասնհինգ տարիների իրադարձությունները վկայում են, որ ԱՄՆ-ը ո՛չ միայն չիրականացրեց իր նպատակը, այլ հասավ բոլորովին այլ արդյունքի։

Անցնելով տնտեսության միլիտարիզացիայի քաղաքականությանը, ԱՄՆ-ը համաշխարհային վճարման շրջանառության մեջ ավելացրեց դոլարի տեսակարար կշիռը. դրանով նա ծածկեց ռազմական, դիվերսիայի, տարբեր երկրներում իր ռազմական բազաների պահպանման հետ կապված ծախսերը (տարեկան մոտ 5 մլրդ դոլար), ինչպես նաև ուրիշ երկրներին ցույց տրվող ռազմական օգնության (տարեկան 3,5—4 մլրդ դոլար) և յուրաքանչյուր տարի արտահանվող կապիտալի (տարեկան մոտ 3 մլրդ դոլար) ծախսերը։

Այդ բոլորի հետևանքով մեծացավ ԱՄՆ-ի վճարային հաշվեկշռի ճեղքվածքը։ Երեք տարվա ընթացքում (1958—1960 թթ.) այն հասավ 4 մլրդ դոլարի, այսինքն՝ դրան նախորդող 7 տարիների տարեկան միջին ճեղքվածքի համեմատությամբ աճեց 3,3 անգամ (նույն տեղը, էջ 29)։ Դոլարի սովի փոխարեն շատ երկրներում առաջացավ դոլարի ավելցուկ. սկսվեց այն ներկայացնել ԱՄՆ-ին՝ ոսկով փոխանակելու համար։ Այս պայմաններում ԱՄՆ-ի ոսկու պաշարները պակասեցին։ Սպասվում էր, որ վճարային հաշվեկշռի կարգավորման նպատակով ոսկու մեկ ունցիայի գինը կբարձրացվի, ուստի, մեծացավ ոսկու սպեկուլյատիվ պահանջարկը։ Ազատ շուկայում ոսկու մեկ ունցիայի գինը 1960 թվականին հասավ 41 դոլարի։ Վալյուտային այս իրարանցումը միջազգային վալյուտային սիստեմի անկման վտանգ ստեղծեց։ Այս ամենը ԱՄՆ-ի կառավարող շրջանների վարած քաղաքականության հետևանք էր։ Պրեզիդենտ Քենեդիի իշխանության գլուխ անցնելուց հետո որոշ փոփոխություններ տեղի ունեցան ԱՄՆ-ի ֆինանսական քաղաքականության մեջ։ Առաջին անգամ հարց հարուցվեց սահմանափակելու ամերիկյան կապիտալի հոսքը արտասահման, քանի որ դա համարվեց վճարային հաշվեկշռի պասիվության գլխավոր պատճառը։ Ընդլայնվեցին արտաքին առևտրական հարաբերությունները, փոքրացավ վճարային հաշվեկշռի ճեղքվածքը, պակասեց ոսկու արտահոսքը երկրից և դոլարի կուրսը ինչ-որ չափով կայունացավ։ Հետագայում, սակայն, հատկապես, 1965 թվականից, երբ ուժեղացավ ԱՄՆ-ի ագրեսիվ քաղաքականությունը, կրկին մեծացավ վճարման հաշվեկշռի ճեղքվածքը, ուստի և ոսկու արտահոսքը։ 1960 թվականից սկսած մի քանի անգամ վալյուտային ուժեղ ցնցումներ եղան, որոնք մասնակիորեն կանխվեցին ԱՄՆ-ի և նրա դաշնակից պետությունների համատեղ ջանքերով։

Ոսկու սպեկուլյատիվ տատանումների առաջն առնելու նպատակով 1962 թ. արևմտա-եվրոպական առաջավոր երկրների կենտրոնական էմիսիոն բանկերի համաձայնությամբ կազմակերպվեց Միջազգային ոսկյա պուլ (միավորումը)։ Պուլի մեջ ընդգրկված երկրների համար սահմանվեց քվոտա (մասնաբաժին) ոսկով, որը պետք է մուծեր յուրաքանչյուր երկիր՝ դիմացը ստանալով դոլար։ Պուլի ղեկավարումը հանձնարարվեց անգլիական բանկին, քանի որ ոսկու հետ կապված մասնավոր գործարքները կատարվում էին լոնդոնյան շուկայում։ Անգլիական բանկը, օգտագործելով պուլի ոսկու ռեզերվները, ոսկու գնմամբ ու վաճառքով կարգավորում է դրա գինը, որը պետք է տատանվեր 35,08—35,16 դոլարի սահմաններում։ Յուրաքանչյուր տարվա վերջում մասնակից պետություններին հայտնվում էին պուլի գործարքների արդյունքները և առաջացած դրական կամ բացասական մնացորդը (սալդոն) քվոտայի համաձայն բաշխվում էր մասնակից պետությունների միջև։ Այդ կազմակեր-



պության կողմից իրականացվող կարգավորման գործարքները արդյունք չտվին։

1965 թվականից ի վեր, Վիետնամի պատերազմի ընթացքում, ԱՄՆ-ի ֆինանսական վիճակը ավելի վատթարացավ. խախտվեց նրա ոսկու պաշարների և աշխարհում շրջանառության մեջ եղած թղթե դոլարների համամասնությունը։ 1971 թվականի հունիսին արտասահմանում արդեն կար 80 մլրդ դոլար, որը ցանկացած ժամանակ կարող էր ներկայացվել ԱՄՆ-ին ոսկով փոխանակելու համար (Экономическая газета, 1971 г., № 35, стр. 22)։

ԱՄՆ-ի միլիտարիստական քաղաքականությունը և կապիտալի մեծ չափերի արտահանումը ԱՄՆ-ի վճարային հաշվեկշիռը միշտ դրել է անելանելի վիճակի մեջ։ ԱՄՆ-ի վճարային հաշվեկշռի ճեղքվածքի մեծացման գործոնների մեջ ամենակարևորը ռազմա-քաղաքական և պետական ծախսերն էին, որոնք մեծ մասամբ արվում էին Հնդկաչինում վարվող պատերազմի և Իսրայելին ցույց տրվող օգնության, ինչպես նաև Արևմտյան Եվրոպայի օկուպացիոն զորքերի պահպանման նպատակով։ Այդ ծախսերի ընդհանուր գումարը 1958—1965 թթ. (առանց ռազմական օգնության) կազմեց 72,5 մլրդ դոլար։

ԱՄՆ-ի վճարային հաշվեկշռի ճեղքվածքը 1958—1968 թթ. կազմել է 31,6 մլրդ դոլար, որը դրան նախորդած 1947—1957 թթ. համեմատ մեծացել է 7 անգամ։ 1970 թ. ճեղքվածքը հասավ 11 մլրդ (Известия, 1971 г., № 206), 1972 թ. 13,8 մլրդ դոլարի։

ԱՄՆ 1971 թվականին առաջին անգամ (սկսած 1893 թ.) չկարողացավ երկրի արտաքին առևտրի հաշվեկշիռը փակել առանց դեֆիցիտի (ԱՄՆ-ը արտահանման գերազանցման հաշվին էր փակում վճարման հաշվեկշռի ճեղքվածքի $^{2}/_{3}$-ը), որը 1971 թ. կազմեց 2 մլրդ դոլար (տե՛ս Известия, 1973 г., № 75)։

Այս բոլորի հիման վրա էլ ահա մեծացավ անվստահությունը դոլարի նկատմամբ. բարձրացավ ոսկու մեկ ունցիայի գինը, տատանվելով 42—45 դոլարի սահմաններում։ Ոսկու մեկ ունցիայի գինը (1934 թ. համեմատ) զրկվեց իր տնտեսական հիմնավորումից, քանի որ նրա գնողունակությունը այդ տարեթվից պակասել էր ավելի քան 2,9 անգամ։

Վերջին տարիներին ամերիկյան դոլարը հսկայական չափով կուտակվեց եվրոպական երկրների թե՛ պաշտոնական ռեզերվներում և թե առևտրական բանկերում։ Այն դարձավ միջազգային փոխատվական կապիտալի աղբյուր և սկսեց օգտագործվել տարբեր երկրների բանկերի կողմից։ Միայն վերջին երեք տարում այդ երկրների կենտրոնական բանկերի դոլարի պաշարներն ավելացան երեք անգամ։

Դոլարի տերերը, օգտագործելով տարբեր երկրներում ավանդների դիմաց տրվող տոկոսների տարբեր մակարդակը, շատ «վաստակելու» նպատակով դոլարը երկրից երկիր են տեղափոխում։ Կապիտալի տեղաշարժի ժամանակ տարբեր երկրների կենտրոնական բանկերի միջոցով դոլարը փոխանակվում է տեղական ազգային վալյուտայով՝ և՛ տնտեսության մեջ օգտագործելու, և՛ որպես ձեռնտու ավանդ առևտրական բանկերում ձևակերպելու համար, քանի որ յուրաքանչյուր երկրում բանկային գործարքների տոկոսային դրույքները սահմանվում են ըստ տեղական վալյուտայի։

Տեղաշարժի հետևանքով դոլարը կուտակվեց տարբեր երկրների կենտրոնական բանկերի ռեզերվներում, իսկ դրանց դիմաց ստացված ազգային վալյուտան՝ առևտրական բանկերի հաշիվներում. դրանով ընդլայնվեց վարկա-

վորման հնարավորությունները, միաժամանակ, հսկայական չափով ավելացավ այդ երկրների դրամաշրջանառության մեջ եղած դրամական մասսան, ուժեղացավ ինֆլյացիան։

Սպեկուլյատիվ կապիտալի տեղաշարժն ավելի է ուժեղանում այն շրջանում, երբ լուրեր են տարածվում որևէ երկրի վալյուտայի ռևալվացիայի մասին։ Այդպես եղավ, 1961 և 1969 թթ. Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետության մարկի ռևալվացիայի նախօրյակին, ինչպես և 1971 թ. մայիսին, երբ ԳՖՀ կենտրոնական բանկը (Բունդեսբանկ) ստիպված եղավ մարկով փոխանակել 2,2 մլրդ դոլար, և ԳՖՀ դոլարի պաշարները հասան 16 մլրդ։ Այդ նույն օրը փոխանակման համար հսկայական գումարների հասնող վալյուտա ներկայացվեց Արևմտյան Եվրոպայի երկրների և Ճապոնիայի բանկերին (Журнал США, 1971, № 9, стр. 75)։

Այսպիսով ստեղծված իրավիճակը միջազգային անվստահություն առաջացրեց ԱՄՆ-ի վալյուտայի նկատմամբ։ Շատ երկրներ ժամանակավորապես փակեցին վալյուտային բորսաները և դադարեցրին փոխանակման գործարքները (օրինակ՝ ԳՖՀ, Ավստրիան, Բելգիան, Հոլանդիան, Իսպանիան, Պորտուգալիան, Ֆինլանդիան, Շվեյցարիան և այլն)։ Այդ երկրները խախտեցին միջազգային վալյուտային կանոնադրությունը, հրաժարվեցին պահպանել դոլարի շուկայական գինը։ Ավելին, Ֆրանսիան, Բելգիան ու Հոլանդիան իրենց մոտ կուտակված դոլարային պաշարների մի մասը ներկայացրին ԱՄՆ-ին ոսկով փոխանակելու համար։ Ճգնաժամային այդ օրերին փոխանակման ներկայացվեց 400 մլն դոլար։ Դրությունն ավելի վատացավ, երբ 1971 թ. օգոստոսի 15-ին ԱՄՆ-ի կառավարությունը հայտարարեց դոլարի փոխանակումը ոսկով դադարեցնելու մասին։

Վալյուտային ճգնաժամն առաջացրեց նաև կապիտալի հսկայական գումարների տեղաշարժ, կապիտալիստական երկրների միջև վալյուտային և ոսկու ֆոնդերի վերաբաշխում տեղի ունեցավ, որը, իր հերթին, ուժերի տեղաշարժ ստեղծեց կապիտալիստական էկոնոմիկայում։

1971 թվականին ոսկու վալյուտային ամենաշատ ֆոնդերը Արևմտյան Գերմանիայում էին, նրա ոսկու պաշարները հասան 19 մլրդ դոլարի (Экономическая газета, 1972, № 38, стр. 22)։ ԱՄՆ-ը երկրորդ տեղում էր։ Նրա ոսկու ռեզերվները 1961—1971 թթ. 18,7 մլրդ դոլարից հասավ 13,5 մլրդ դոլարի (Известия, 1973, № 39)։ Ճապոնիան, որ 1968 թ. յոթերորդ տեղում էր, անցավ Ֆրանսիայից ու Իտալիայից և գրավեց երրորդ տեղը։

Թվում է, թե վալյուտային ճգնաժամը պետք է ամերիկյան կառավարող շրջաններին հարկադրեր անցկացնելու դոլարի ռևալվացիա, բայց նրանք դրա փոխարեն, դոլարը փրկելու այլևայլ միջոցներ ձեռնարկեցին։ 1971 թ. օգոստոսի 15-ին Սպիտակ տունը որոշում ընդունեց երեք ամսով, իսկ հետագայում մեկ տարով «սառեցնել» աշխատավարձի բարձրացումը։ Բացի այդ, ԱՄՆ-ի կառավարությունը, խախտելով միջազգային առևտրի նորմաները, տասը տոկոսով ավելացրեց ներմուծվող կարևորագույն ապրանքների հարկերը։ Դրանով ԱՄՆ-ը հույս ուներ բարձրացնել ԱՄՆ-ի տնտեսության աճը և ամրապնդել դոլարի դրությունը արտասահմանում. ավելին, նա ուզում էր ստիպել խոշորագույն կապիտալիստական երկրներին (ԳՖՀ, Ճապոնիա և այլն) անցկացնելու ազգային վալյուտաների ռևալվացիա, որը խիստ կբարձրացներ ամերիկյան ապրանքների մրցակցության ունակությունը համաշխարհային շուկայում։ Բայց մյուս երկրները ընդդիմացան դրան։ Կապիտալիստական



երկրները ստիպողաբար կրճատեցին առևտրական կապերը ԱՄՆ-ի հետ։ 1971 թ. սեպտեմբերի վերջին Ճապոնիայի արտաքին առևտրի և արդյունաբերության մինիստրությունը պաշտոնապես հայտարարեց, որ սեպտեմբերի առաջին տասնամյակում արդեն ստորագրված էքսպորտ համաձայնությունները սովորականից 90 տոկոսով պակաս են կնքվել (Журнал за рубежом, 1971, № 44, стр. 19)։

Միջազգային վալյուտային ֆոնդի անդամ 118 երկրների ֆինանսների մինիստրները և կենտրոնական բանկերի ղեկավարները ֆինանսական և առևտրական այդ փակուղուց դուրս գալու համար հանդիպումներ էին ունենում։ Շատ երկրներ ԱՄՆ-ից պահանջեցին վերացնել ներմուծվող ապրանքների վրա դրվող հարկը և անցկացնել դոլարի դևալվացիա, ոսկու գինը 10 տոկոսով բարձրացնելու ճանապարհով։ Ինչպես Եվրոպական երկրներում, այնպես էլ Ճապոնիայում աշխատում էին դոլարը դուրս մղել իրենց դրամաշրջանառությունից. այդ երկրները միմյանց հետևից սահմանափակեցին դոլարի ներհոսքը։

Այսպիսով, վաշինգտոնյան միջոցառումները դրությունը բարելավելու փոխարեն է՛լ ավելի սրեցին կապիտալիստական պետությունների հակասությունները և շարունակեցին իրենց կործանարար ազդեցությունը կապիտալիզմի միջազգային վալյուտա-ֆինանսական սիստեմի վրա։ Միջազգային վալյուտա-ֆինանսական հարաբերությունների կարգավորումը և, հատկապես, դոլարի դևալվացիան հրատապ հարց դարձավ Միացյալ Նահանգների և կապիտալիստական բոլոր երկրների համար։ ԱՄՆ-ի կառավարող շրջանները ստիպված եղան անցկացնել դոլարի դևալվացիա։

1949—1971 թթ. կապիտալիստական երկրներում վալյուտային արժեզրկումը տեղի էր ունեցել մոտ 400 անգամ, բայց ԱՄՆ-ը կարողացել էր իր դրամը զերծ պահել դրանից, թեև ցնցումների հիմնական կենտրոնը միշտ եղել է ամերիկյան դոլարը, որին պատկանում էր միջազգային վալյուտային մենաշնորհը։

1971 թվականի դեկտեմբերի դևալվացիան սպասված արդյունքը չտվեց։ Ընդհակառակը, ԱՄՆ-ի արտաքին առևտրի հաշվեկշռի ճեղքվածքը, 1971 թ. համեմատ, 1972 թ. մեծացավ ավելի քան երեք անգամ, հասնելով 6,4 մլրդ դոլարի։

ԱՄՆ-ի արտաքին վիճակի վատթարացումն ու նրա արտասահմանում ունեցած ֆինանսական պարտավորությունների և եղած հնարավորությունների միջև առաջացած մեծ խզումը նորից անվստահություն առաջացրին դոլարի նկատմամբ։ Բոլորը ձգտում են ազատվել ամերիկյան դոլարից, փոխարինել այն ավելի կայուն դրամով. օրինակ, ԳՖՀ մարկով, ճապոնական իենով, շվեյցարական և ֆրանսիական ֆրանկներով։ Դրա հետ մեկտեղ ավելի աճեց ոսկու պահանջը։ 1972 թ. փետրվարին մեկ ունցիա ոսկու գինը ազատ շուկայում հասավ՝ 50 դոլարի, ապրիլին՝ 55, տարվա կեսին՝ 70, իսկ 1973 թ. սկզբներին՝ 72 դոլարի։

1972 թվականի վերջին և 1973-ի սկզբներին Արևմտյան Եվրոպայի և Ճապոնիայի վալյուտային բորսաներում դոլարը խիստ շատացավ։ Դոլարի հետագա արժեզրկումը կանխելու համար Արևմտյան Եվրոպայի երկրներն ու Ճապոնիան, նախկին պարտավորությունների համաձայն, ստիպված էին գնել հսկայական քանակությամբ արժեզրկված դոլարներ։ Միայն ԳՖՀ ֆեդերալ բանկը փետրվարի սկզբին գնեց 24 մլրդ մարկի ամերիկյան դոլար։ Դոլարի

հարկադրական գնումը առաջ բերեց թղթադրամի հսկայական կուտակում թե՛ Արևմտյան Եվրոպայի երկրներում և թե Ճապոնիայում, դա, իր հերթին, ուժեղացրեց ինֆլյացիայի տենդենցը։ Հայտնի դարձավ, որ դոլարի մասսայական գնումը անգամ չի կարող քիչ թե շատ կայունացնել դրա կուրսը։

Այդ պայմաններում Ճապոնիան, ԳՖՀ, Ֆրանսիան, Շվեյցարիան և մի քանի այլ երկրներ հրաժարվեցին դոլարն ազգային վալյուտաներով փոխանակելուց և փակեցին վալյուտային բորսաները։ Ստեղծված իրավիճակը ստիպեց ԱՄՆ-ին 1973 թ. փետրվարի 13-ին տասը տոկոսով կրկին արժեզրկել դոլարը։ Մեկ ունցիա ոսկու գինը նախկին 38 դոլարի փոխարեն, սահմանվեց 42 դոլար։ Դոլարի կուրսը ոսկու նկատմամբ վերջին 14 ամիսների ընթացքում փաստորեն 17,1 տոկոսով իջավ։

Հայտարարվեց նաև ճապոնական իենի և իտալական լիրայի ազատ տատանվող կուրսի սահմանման և անգլիական ֆունտ ստեռլինգի, շվեյցարական ֆրանկի, կանադական դոլարի տատանվող կուրսի պահպանման մասին։

Նորից հնարավոր համարվեց արևմտագերմանական մարկի և ճապոնական իենի ռևալվացիան և նորից ուժեղացան սպեկուլյատիվ գործարքները, տեղի ունեցավ դոլարի մեծ տեղաշարժ, որի նպատակը ազգային վալյուտաների կուրսի բարձրացման դեպքում մեծ գումարներ շահելն էր։

Արժեզրկելով դոլարը, ԱՄՆ հույս ուներ արտաքին շուկայում էժանացնել արտահանվող ապրանքները և բարձրացնել նրանց մրցունակությունը հատկապես ճապոնական ու արևմտագերմանական ապրանքների նկատմամբ, հասնել այն բանին, որպեսզի այդ ապրանքների պահանջարկի իջեցման միջոցով կրճատվի մրցակից պետություններից ԱՄՆ կատարվող ներմուծումը։

Դրամի արժեզրկման դեպքում իջնում է թղթադրամի ոսկու պարունակությունը. արտաքին շուկայում ապրանքը, ըստ էության, էժանանում է, քանի որ վճարելով մինչև արժեզրկումը գոյություն ունեցող գներով, փաստորեն վճարվում է ավելի քիչ քանակությամբ օտար վալյուտա և ոսկի։ Ընդհակառակը, երբ բարձրացվում է դրամի ոսկու պարունակությունը, ապա արտահանվող ապրանքները պահպանելով իրենց նախկին գինը՝ թանկանում են, քանի որ այդ դեպքում ավելի մեծ չափով օտար վալյուտա կամ ոսկի են վճարում։

Այժմ վալյուտա-ֆինանսական խոր ճգնաժամը ուղեկցվում է առևտրի բնագավառում հակասությունների սրմամբ իմպերիալիստական խոշոր պետությունների՝ հիմնականում ԱՄՆ-ի, Արևմտյան Եվրոպայի երկրների և Ճապոնիայի միջև։

Վերջին տասը տարում Ճապոնիայում այդ աճի միջինը հասավ տարեկան 7,7 տոկոսի, մինչդեռ ԱՄՆ-ի արտահանման աճը չգերազանցեց 4,2 տոկոսից։ Ճապոնիայի արտահանման 30 տոկոսը բաժին է ընկնում Ամերիկայի Միացյալ Նահանգներին։ Երկրի արտադրության շատ ճյուղեր համարյա լրիվ աշխատում են ամերիկյան շուկայի համար։ Ամերիկայի Միացյալ Նահանգներն են իրացնում ճապոնական հեռուստացույցների, մագնիտոֆոնների, ռադիոընդունիչների և մի շարք այլ ապրանքների կեսից ավելին։ Միևնույն ժամանակ Ճապոնիան կանխեց ԱՄՆ-ից ու եվրոպական երկրներից ապրանքների ներմուծումը և նրա մոտ գոյացավ արտաքին առևտրի ակտիվ սալդո։ 1972 թ. սալդոն հասավ 8,9 մլրդ դոլարի, որից 4,2 մլրդ՝ ԱՄՆ-ի հետ ունեցած հաշվարկներում։

Դրա համար էլ Ամերիկայի Միացյալ Նահանգները Ճապոնիայի վրա ճն-



շում են գործադրում, ստիպում նրան միջոցներ ձեռնարկել երկու երկրների միջև առևտրական հավասար հաշվեկշիռ ստեղծելու համար։ Հակառակ դեպքում նրանք սպառնում են Ճապոնիայի դեմ գործնական քայլեր կատարել, ինչպես և մեծացնել ԱՄՆ ներմուծվող ճապոնական ապրանքների վրա դրվող մաքսատուրքերը։ Միաժամանակ, ԱՄՆ-ը Արևմտյան Եվրոպայի երկրներից պահանջում է թուլացնել ամերիկյան արտահանման դեմ եղած մաքսային սահմանափակումները, իսկ Ճապոնիայից՝ կրճատել որոշ ապրանքների արտահանությունն Ամերիկայի Միացյալ Նահանգները։

Չնայած ԱՄՆ-ը իր գործընկերներին ստիպում է որոշ զիջումներ անել առևտրի բնագավառում, բայց ինքն ավելի շատ է դիմում հովանավորական քաղաքականությանը։ Պրեզիդենտ Նիքսոնը հայտարարել է, որ կոնգրեսի քննարկմանը պետք է ներկայացնի նոր առևտրական օրենսդրություն, որը մասնավորապես պատնեշների ուժեղացում կկանխատեսի ներմուծվող ապրանքների ճանապարհին, երբ այդ բանը կպահանջեն ԱՄՆ-ի շահերը։

Այսպիսով, ԱՄՆ-ի ձեռնարկած միջոցառումները ծանր հարված են նրա գլխավոր առևտրական գործընկերներին։ Դևալվացիայի միջոցով նա հույս ուներ ուրիշ երկրների հաշվին բարելավել իր ֆինանսական դիրքերը։ Սակայն թե՛ Ճապոնիայի և թե Արևմտյան Եվրոպայի կառավարող շրջանները պահանջում են արմատապես բարելավել կապիտալիստական ողջ վալյուտա-ֆինանսական սիստեմը, քանի որ ԱՄՆ-ի կատարած դևալվացիան ժամանակավոր միջոցառում էր և փոխանակ կարգավորելու եղած իրավիճակը, նոր խուճապ առաջացրեց, լոնդոնյան ֆոնդային բորսայում մեկ ունցիա ոսկու գինը փետրվարին հասավ 76,5 դոլարի, իսկ մարտին՝ 90։

Արևմտյան Եվրոպայի երկրների ֆինանսների մինիստրները տենդագին որոնումներ են կատարում ստեղծված իրավիճակից դուրս գալու համար։ Այդ են վկայում վերջին ժամանակներս Վաշինգտոնում, Փարիզում, Բրյուսելում գումարված խորհրդակցությունները։ Դրանց արդյունքը եղավ այն, որ արևմտյան տերությունները որոշեցին Եվրոպական տնտեսական փոխօգնության երկրների շրջանակներում վալյուտային համագործակցության ֆոնդ ստեղծել։ Նրանք այդ ֆոնդը մուծեցին 1400 միլիոն հաշվարկային միավոր, որը կազմում է 7,7 միլիարդ ֆրանկ (Известия, 1973, № 82)։ Ֆոնդի նպատակն է՝ սահմանել այդ երկրների վալյուտաների միջև կայուն պարիտետ, ինչպես նաև վարկեր տրամադրել Արևմտյան Եվրոպայի կենտրոնական բանկերի միջև համագործակցությունն ամրապնդելու համար։ Ֆոնդի խորհուրդը կարող է պայքարել արևմտյան երկրներում դոլարի սպեկուլյատիվ շարժման դեմ ու դրանով ստեղծել պաշտպանողական վալյուտային գոտի։

Արևմտա-եվրոպական երկրները հույս ունեն պաշտպանվել վալյուտային ճգնաժամի նոր բռնկումից և ամբողջ ծանրությունը բարդել ԱՄՆ-ի վրա։ Նրանք ներկայումս ծրագրեր են մշակում միասնական վալյուտա ստեղծելու վերաբերյալ, նույնիսկ մտածված է նոր դրամական միավորի անունը՝ էքյու։ Համաձայն այդ պլանի, Արևմտյան Եվրոպայում ամերիկյան կապիտալ ներդրումները պետք է վերահաշվարկվեն էքյուներով և բոլոր վճարային գործարքները կատարվեն այդ նոր դրամի հիման վրա։ Եվրոպական երկրները պետք է այդ նոր դրամը ապահովեն համապատասխան ոսկու ֆոնդով։

Այս ամենը ավելի կսրի արևմտյան երկրների տնտեսական ու քաղաքական հարաբերությունները և կխորացնի վալյուտային ճգնաժամը։

## ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅԱՆ ՓՈԽԱՐԵՆ

# ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՇՐՋԱՆԱՅԻՆ ԹԵՐԹԵՐԸ

Ջերմորեն արձագանքելով հնգամյակի երրորդ՝ վճռական տարվա պլանները ժամկետից շուտ կատարելու համար համամիութենական սոցիալիստական մրցություն ծավալելու մասին ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի հայտնի որոշումներին, մեր հանրապետության աշխատավորները ևս մրցության մեջ մտան ու ստանձնեցին բարձր պարտավորություններ։

Մոտ կանգնած լինելով աշխատավորական կոլեկտիվներին, շրջանային թերթերը ժամանակին արձագանքում են նրանց նախաձեռնությանը, ամեն կերպ օգնում մրցությունը նպատակասլաց դարձնելու, ստանձնած պարտավորությունները պատվով կատարելու։ Այդ են ցույց տալիս «Արտաշատ», «Զանգեզուր», «Բարեկամություն» թերթերի գործունեությունը, նրանց 1973 թվականի առաջին եկուսուկես ամսվա համարներում զետեղված նյութերի ուսումնասիրությունը։

Պրոպագանդելով համամիութենական սոցիալիստական մրցության կարևոր նշանակությունը և ժամանակին հրապարակելով շրջանների աշխատավորների սոցիալիստական պարտավորությունները, վերոհիշյալ թերթերն այժմ գլխավոր շեշտը դրել են դրանց կատարման վրա։ «Բողարկել ավելի շատ, ավելի լավորակ արտադրանք՝ ավելի քիչ ծախսումներով» կուսակցության կոչը կարմիր թելի պես անցնում է մրցությանը վերաբերող նյութերում, բոլորին ոտքի հանում կազմակերպված ու եռանդուն աշխատանքի, որի առաջին արդյունքները հուսադրող են, նշանակալի։

Արտաշատի, Գորիսի, Կրասնոսելսկի շրջանային թերթերը ստուգայցերի, ռեպորտաժների, ինֆորմացիաների, տնտեսությունների ղեկավարների և արտադրության առաջավորների հոդվածների միջոցով ցույց են տալիս, թե ինչ է արվում ստանձնած պարտավորությունների կատարման ասպարեզում, ո՞վ ինչպես է գործի վերածում իր խոստումը և ինչպիսի ցուցանիշների է հասնում։

Տարբեր ձևերով լուսաբանելով մրցության ընթացքը, թերթերն ապահովում են նրա արդյունքների հրապարակայնությունը և համեմատությունների միջոցով բոլորին իրազեկ դարձնում պլանային առաջադրանքների, ստանձնած պարտավորությունների կատարման վիճակին։

Դա հասարակական հսկողության գործուն ձև է, որը մրցողներին պահում է մոբիլիզացիոն դրության մեջ, ցույց է տալիս առաջավորներին ու ետ մնացողներին։

«Մեր հարվածային աշխատանքը՝ հնգամյակի երրորդ տարվան», «Բարձր ծածանել մրցության դրոշը», «Սոցիալիստական մրցության ստեղծարար ուժով նվաճենք նորանոր բնագծեր», «Ձմռան ամիսներին ավելի շատ կաթ ու միս» ընդհանուր խորագրերի տակ «Զանգեզուր» թերթը բազմաթիվ նյութեր է հրապարակել անասնապահների, դաշտավարների, գյուղատնտեսության մասնագետների աշխատանքի մասին, ցույց տվել ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքը, համընդհանուր ճանաչման արժանացրել առաջավորներին։ «Վճռական տարվա առաջին հաղթանակը» հոդվածում (№ 25) Խնածախի կոլտնտեսության նախագահ Գ. Ղազարյանը պատմում է անասնապահների հայրենանվեր աշխատանքի և ձեռք բերած առաջին հաջողությունների մասին։ Խոսքը գործի վերածելու շնորհիվ նրանք փետրվար ամսին 37 ցենտներով գերակատարել են պետությանը մսի վաճառքի առաջին եռամսյակի պլանը։ Շարունակելով եռանդուն աշխատանքը, նշում է ընկ. Ղազարյանը, անասնապահները մսի վաճառքի առաջին կիսամյակի պլանը կկատարեն երկուս ու կես ամիս առաջ, որի համար կան ռեալ հնարավորություններ։

Փետրվարի 24-ին թերթը (№ 24) ցույց է տվել «Ավանգարդ» սովխոզի հաջող մեկնարկը։ Կանգնելով հնգամյակի հարվածային հերթափոխում, սովխոզի կթվոր-անասնապահները ձգտում են 1973 թ. կաթի արտադրությունն ավելացնել 12 տոկոսով։ Դա նրանց սոցիալիստական պարտավորությունն է, որի կատարման համար տարվա սկզբից եռանդուն պայքար են տանում և արդեն հասել են որոշակի հաջողության։ Հունվարի մեկից մինչև փետրվարի 20-ը, նախորդ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, սովխոզում մեկ կովի կաթնատվությունն ավելացել է 47 կիլոգրամով, իսկ կաթի ընդհանուր արտադրանքը՝ 189 ցենտներով։

«Զանգեզուրը» քայլում է կյանքի հետ, պատկերավոր, գունեղ լեզվով ցույց տալիս կոլտնտեսային գյուղի մարդկանց՝ մաքառումներով հարուստ առօրյան, ոգևորում և օգնում նրանց՝ պատվով կատարելու հարազատ կուսակցության հոյակապ նախագծումները, սոցիալիստական մրցությամբ ստանձնած բարձր պարտավորությունները։ Այդ առումով հետաքրքրական են շրջանի ամենախոշոր գյուղի՝ Խնձորեսկի «Լենինյան ուղիով» կոլտնտեսության անասնապահների ու դաշտավարների աշխատանքին նվիրված նյութերը, որոնց մենք հանդիպում ենք թերթի տարբեր համարներում։ Դրանք գրված են սրտաբուխ, բանիմացությամբ։

Իր «Առաջնությունը չենք զիջի» (№ 7) հոդվածում կոլտնտեսության հովիվ, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Սմբատ Մարությանը գրում է. 1973 թ. յուրաքանչյուր 100 մայր ոչխարից ստացել ենք 110 գառ։ Ընթացիկ տարում, 1972 թ. համեմատությամբ, յուրաքանչյուր ոչխարից ավելի կստանանք նաև 200 գրամ բուրդ և առաջնությունը չենք զիջի ոչ-ոքի։

Թերթի մարտի 1-ի համարում Խնձորեսկից մի խումբ ընկերներ «Գարնանամուտից առաջ» հոդվածում (№ 26) ավելի լայնորեն են անդրադառնում իրենց կոլտնտեսության աշխատանքներին։ Գրելով, որ հոբելյանական տարում կոլտնտեսությունը ստացավ լավ բերք, հեկտարից 18,4 ցենտներ, նրանք նշում են, որ դա դեռևս քիչ է, շատ քիչ իրենց հողերի համար։ Ուստի, պատմում են նրանք, ընթացիկ տարում բոլոր միջոցներով կբարձրացնենք բերքատվությունը և հնարավորություն կունենանք լրացնելու հնգամյակի առաջին երաշտային տարում հացահատիկի արտադրության պակասը, որը կազմում է 4000 ցենտներ։

Սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքի վերաբերյալ սիստեմատիկաբար նյութեր է տպագրում նաև Կրասնոսելսկի «Բարեկամություն» թերթը։ Նրա համարներից ընթերցողը որոշակի պատկերացում է կազմում, թե շրջանի տնտեսություններում ինչ է արվում գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնապահության մթերատվության բարձրացման համար, որ տնտեսությունն է առաջավոր, որը՝ ետ մնացող։ Թերթի № 21-ում զետեղված «Լավ սկիզբ» հոդվածից տեղեկանում ենք, որ Մարտունու նորաստեղծ սովխոզը 1972 թ. ավարտել է 54.000 ռ. օգուտով և ընթացիկ տարվա սկզբից հետևողականորեն պայքարում է անասնապահական մթերքների արտադրության ավելացման համար։

Սոցիալիստական պարտավորությունների կատարման ասպարեզում լայն գործունեություն են ծավալել շրջանի երիտասարդները, որոնց հայրենանվեր աշխատանքն իր արժանի գնահատականն է ստացել թերթի էջերում։ Այսպես. «Քույր ու եղբայր ֆերմայում» թղթակցությունում կարդում ենք. սովետական բանակում ծառայելուց հետո Նաքի Հաջիևը միջնակարգ դպրոցն ավարտած իր քրոջ՝ Շամամ Հաջիևայի հետ աշխատանքի անցավ հարազատ կոլտնտեսությունում։ Շամամը ֆերմա եկավ կոմերիտական ուղեգրով և, եղբոր հետ, սկսեց խնամել 300 գլուխ ոչխար։ Նրանց խնամած մայր ոչխարներից ծնել են 160-ը, որոնցից ստացվել է նույնքան գառ։ Հանրապետության վաստակավոր ուսուցչուհի Մասմա Մահմեդովան և երկարամյա ուսուցիչ Հուսեին Հաջիևը հպարտանում են իրենց զավակների հայրենանվեր աշխատանքով։

Սոցիալիստական մրցության ծավալման և ստանձնած պարտավորությունների իրագործման համար գյուղի աշխատավորներին մոբիլիզացնելու ասպարեզում դրվատանքի արժանի գործ է կատարում նաև «Արտաշատ» թերթը։ Մրցության հետ առնչվող արմատական հարցերն այստեղ լուսաբանվում են կոնկրետ փաստերով, տնտեսագիտական համապատասխան վերլուծություններով ու հաշվարկներով։ Թերթը ո՛չ միայն ծանոթացնում է փաստերին ու տվյալ ժամանակահատվածի արդյունքներին, այլև բացահայտում գյուղի մարդկանց աշխատանքի ձևերն ու մեթոդները, ակտիվ միջամտում մրցության պրոցեսին, վերլուծում և իմաստավորում է կատարվածը, խույս չի տալիս կյանքի առաջադրած հրատապ հարցերից։

«Արտաշատ» թերթը ճիշտ է վարվում, երբ հանգամանորեն ցույց է տալիս կոլտնտեսություններում ու սովխոզներում եղած այն հնարավորություններն ու միջոցները, որոնք հնգամյակի երրորդ տարվա առաջադրանքներն ու սոցիալիստական պարտավորությունները ժամկետից շուտ կատարելու երաշխիքն են։ Այդ են ցույց տալիս «Վճռական տարում վճռական ջանքեր» (№ 19), «Առատ բանջարեղենի համար» (№ 31), «Ժամկետից շուտ» (№ 33), «Նվաճենք հնգամյակի վճռական տարվա բնագծերը» (№ 28) և այլ նյութերը։

Ճշմարտությունը պահանջում է ասել, որ բոլոր տնտեսություններում չէ, որ սոցիալիստական պարտավորությունների և պլանային առաջադրանքների կատարումը հաջող է ընթանում։ Դեռևս կան կոլտնտեսություններ ու սովխոզներ, որոնք չեն ապահովում ո՛չ միայն սոցիալիստական պարտավորությունների, այլև պլանային առաջադրանքների կատարումը։ Դա լուրջ թերություն է, պետական կարգապահության խախտում, որը տեղին քննադատության է ենթարկվում մամուլում։

«Ստուգում ենք սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքը» խորագրի տակ «Զանգեզուր» թերթի № 31-ում տպագրված «Վտանգավոր հանգստություն» հոդվածում ասված է, որ այս տարվա փետրվար ամսին հան-

բապետական «Սովետական Հայաստան» թերթում նշվեց, որ Քարաշենի կոլտնտեսության ղեկավարները անհրաժեշտ եզրակացություն չհանելով կուսակցության ու կառավարության որոշումներից, հետին պլանի վրա են մղել անասնապահական մթերքների արտադրության ավելացման հարցերը։ Դրա հետևանքով, անցած տարվա նույն ժամանակի համեմատությամբ, նկատելիորեն պակասել է կաթի արտադրությունը։

Ահազանգը տեղին էր, ժամանակին, բայց տընտեսության ղեկավարները դրանից հետո ևս կըտրուկ միջոցների չդիմեցին կաթի արտադրությունն ավելացնելու համար։ Այստեղ 1973 թ. երկու ամսում կաթի արտադրության ու վաճառքի եռամսյակի պլանը կատարվել է 39,5 և 40 տոկոսով։ Դրությունը բարվոք չէ նաև եռամսյակի վերջին ամսում։

Թերթում քննադատվել են նաև մի շարք այլ տնտեսություններ, ուր անցած տարվա նույն ժամանակի համեմատությամբ զգալիորեն պակասել է կաթի և մսի արտադրությունը։

Լուսաբանելով կոլտնտեսությունների հաշվետու-ընտրական ժողովները, «Բարեկամություն» թերթը բացահայտել է հանրային արտադրության տարբեր բնագավառներում եղած թերությունները, որպեսզի դրանք հնգամյակի երրորդ՝ վճռական տարում չկրկնվեն։ Արտանիշի կոլընտեսության հաշվետու-ընտրական ժողովին նվիրված «Ապահովել տնտեսության առաջընթացը» հոդվածում (№ 17), օրինակ, նշված է, որ ոչխարաբուծական ֆերմայում թերակատարված են մատղաշի ստացման ու պահպանման և բրդի արտադրության պլանները, խիստ ցածր է աշնանացան ցորենի և գարու բերքատվությունը։ Գարու ամեն մի հեկտարից ստացվել է 3,4 ցենտներ բերք, և յուրաքանչյուր ցենտների ինքնարժեքը կազմել է 23 ռ. 35 կ.։ Ցածր բերքատվության պատճառն այն է, որ դաշտերից քարերը չեն մաքրվում, ոռոգման գործն անուշադրության է մատնված, աչքաթող է արված օրգանական և հանքային պարարտանյութերի արդյունավետ օգտագործումը, հողի բերրիության բարձրացման գործը և այլն։

«Արտաշատ» թերթը նույնպես այդ ձևով վեր է հանում առանձին տնտեսություններում անցած գյուղատնտեսական տարում եղած թերությունները, որոնց հետևանքով դրանք ետ են մնացել։ Այսպես. «Ո՞ւր մնացին... հարուստ հեկտարները» հոդվածում (№ 25) ասված է, որ մի ժամանակ Շահումյան գյուղի կոլտնտեսության՝ Գրիգոր Բարսեղյանի ղեկավարած բրիգադը հեկտարից 400—600 ցենտներ սոխ էր ստանում և այդ բրիգադից էլ ծայր առավ հարուստ հեկտարի շարժումը, որը համամիութենական ուղեգիր ստացավ։ Բայց այսօր, ցավոք, այդ հարուստ հեկտարներն աղքատացել են։ Տընտեսությունն անցած տարի 15 հեկտարից 300-ի փոխարեն ստացել է 47,5 տոննա սոխ— հեկտարից՝ 32 ցենտներ։ Յուրահատուկ «ռեկորդ» է սահմանել Վարազդատ Դավթյանի ղեկավարած բրիգադան, որը հեկտարից ստացել է... 2 ցենտներ սոխ։ Սակայն բանը միայն սոխի ցածր բերքատվությամբ չի վերջանում։ Տնտեսությունը նախորդ տարվանից 72 հազար ռուբլու պակաս եկամուտ է ստացել բանջարաբուծությունից, կես միլիոն ռուբլի՝ խաղողագործությունից։

Հոդվածում խորությամբ բացահայտված են նաև պտղաբուծության ու անասնապահության բնագավառներում եղած աղաղակող թերությունները։ Դրանց մասին խոսել են նաև շարքային կոլտնտեսականները, որոնք քննադատել են սըխալները, անկարգապահության և անտնտեսվարության երևույթները։

Սոցիալիստական պարտավորությունների կատարման գործում անգնահատելի դեր են խաղում առաջավոր փորձի տարածումն ու արմատավորումը։ Ուստի և շրջանային թերթերի կարևոր խնդիրն է՝ եռանդուն և հետևողականորեն պաշտպանել ողջ նորն ու առաջավորը, որ ծնունդ է առնում ու ստուգվում մրցության բովում։ Նորի, առաջավորի, պրակտիկ կյանքում դրսևորված լավագույն փորձի բացահայտումը, դրա հիմնավոր ու բազմակողմանի լուսաբանումը իր արժանի տեղը պետք է գրավի շրջանային թերթերի էջերում, դառնա բոլորի սեփականությունը։

«Արտաշատ» թերթի 1973 թ. № 1-ում տպագրված նյութերից մենք ծանոթանում ենք գյուղատնտեսության մի շարք առաջավորների ձեռք բերած բարձր ցուցանիշներին ու գովեստարժան գործերին, որոնք կարող են օրինակ ծառայել բոլորի համար։ «Լենինի շքանշանակիրը» հոդվածը նվիրված է Այգեզարդի Փարիզի կոմունայի անվան կոլտնտեսության առաջավոր օղակավարուհի Ազնիվ Մինասյանին, որն անցած տարվա կլիմայական միանգամայն անբարենպաստ պայմաններում իր և ընկերների նվիրված ու լարված աշխատանքի շնորհիվ յուրաքանչյուր հեկտարից ստացավ 127 ցենտներ խաղող, 800 ցենտներ պոմիդոր, 500 ցենտներից ավելի սոխ, 160 ցենտներ առվույտ։ Չբավականանալով ձեռք բերվածով, շնորհաշատ օղակավարուհին մրցության է դուրս եկել այս տարի ավելի բարձր ցուցանիշների հասնելու։ Նա իր խոսքը գործի կվերածի, որովհետև հողը մշակում է բարեխղճորեն։

Հոբելյանական տարվա շքանշանակիրների ու մեդալակիրների, ինչպես նաև գյուղատնտեսության մյուս առաջավորների փորձի մասին հետաքրքրական և ուսուցանող նյութեր կան նաև «Արտաշատ»-ի մյուս համարներում։ Այդպիսի նյութեր շատ կան նաև «Զանգեզուր» և «Բարեկամություն» թերթերում։ Բերենք միայն մեկ օրինակ «Առաջավոր փորձ» խորագրի տակ («Զանգեզուր», № 22) Խնձորեսկի կոլտնտեսության անվանի կթվոր-անասնապահ Արամայիս Հայրյանը պատմում է, որ ճշտորեն պահպանում է կովերի կերակրման ռեժիմը, թույլ չի տալիս, որ կովերը չափից ավելի ճարպակալվեն՝ ի վնաս կաթնատվության, նրանց հաճախ դուրս է բերում զբոսանքի, արոտավայրերն օգտագործում է հերթականությամբ, կթի վերջում, 6—8 շաբաթ առաջ, փոփոխում է կերաբաժինը, որից հետո դադարեցնում կիթը։ Առաջավոր կթվոր-անասնապահը, որը 1800-ի դիմաց անցած տարի յուրաքանչյուր կովից ստացել է 2653 կիլոգրամ կաթ և խոստացել այն այս տարի հասցնել 2700—2750 կիլոգրամի, իր փորձից ելնելով՝ կթի տևողության ժամանակի վերաբերյալ արտահայտում է ուրույն մտքեր, որոնք ուշագրավ են։

Առաջավոր փորձը մամուլի օգնությամբ իր համար ուղի է հարթում ոչ միայն տվյալ տընտեսությունում, շրջանում, հանրապետությունում, այլև նրա սահմաններից դուրս։ Այդ առումով հետաքրքրական է «Սելսկայա ժիզն» թերթի 1973 թ. № 30-ում զետեղված Արտաշատի շըրջանի Մասիս գյուղի կոլտնտեսության բանջարաբուծական բրիգադայի բրիգադավար Հ. Բաբաջանյանի՝ «Բերքի համար պատասխանատու է յուրաքանչյուրը» հոդվածը, որն արտատպված է «Արտաշատ» թերթի № 18-ում։

Հ. Բաբաջանյանի հոդվածը լայն արձագանք է գտել տարբեր հանրապետություններում. անգամ անծանոթները գրում, խորհուրդներ են հարցնում, խնդրում պատմել փորձի մասին, սերմ ուղարկել և այլն։

> «Հարգելի ընկեր Բաբաջանյան,— գրում է Վրացական ՍՍՀ Ասպինձա քաղաքի «Նակալակևի» կոլտնտեսության նախագահ Գեորգի Բերիձեն,— մեծ ուշադրությամբ կարդացի Ձեր նյութը «Սելսկայա ժիզն» թերթում։ Ուրախություն պատճառեցին բերքատվության Ձեր ցուցանիշները։ Ցանկալի է ստանալ Ձեր կոնսուլտացիան բանջարեղենի, հատկապես գլուխ սոխի բերքատվության մասին։ Իսկ եթե հնարավորություն ունեք, խնդրում եմ ուղարկեք սոխի սերմ։ Երախտապարտ կլինեմ»։

Ստավրոպոլի երկրամասի Պրեդգորնիի շրջանի Բեկեշևսկի գյուղատնտեսական արտելի հողագործ Տիմոֆեյ Սեմյոնովն իր նամակում գրում է.

> «Թանկագին Բաբաջանյան։ Կարդացի Ձեր հոդվածը և շատ հետաքրքրվեցի բանջարանոցային կուլտուրաների բերքատվության Ձեր նվաճումներով։ Հյուսիսային Կովկասում այդպիսի ցուցանիշների դեռ չենք հասել։ Ինձ թվում է, Ձեր հաջողությունները հիբրիդային սերմերի և մշակության արդյունքն են։ Եթե հնարավոր է, խնդրում եմ, ուղարկեք Ձեր մշակած բարձր բերքատու բանջարեղենի սերմերից»։

Եվ այսպես գրում են շատ տեղերից, հետաքրքրվում առաջավոր փորձով, նրա կիրառման եղանակներով։

Կրասնոսելսկի շրջանի աշխատավորները սերտ կապեր են ստեղծել, սոցիալիստական մրցության մեջ մտել եղբայրական Ուկրաինայի Բելովոդսկի շրջանի գյուղի մարդկանց հետ։ Կրասնոսելսկցիներին հետաքրքրում են իրենց մրցակցի գործերը, առաջիկա պլանները։ Հաշվի առնելով այդ՝ «Բարեկամություն» թերթն իր № 26-ում հրապարակել է «Մեր մրցակից Ուկրաինական ՍՍՀ Բելովոդսկի շրջանի գյուղատնտեսության աշխատողների սոցիալիստական պարտավորությունները», իսկ մի այլ համարում Ուկրաինայի կոմունիստական կուսակցության Բելովոդսկի շըրջկոմի քարտուղար Վ. Կոնոնենկոյի՝ «մեր հաջողությունների գրավականն անխախտ բարեկամությունն է» ծավալուն հոդվածը, ուր ուսանելի շատ բան կա մրցակից շրջանի աշխատավորների համար։

Լուսաբանել առաջավոր փորձը, նշանակում է՝ ցույց տալ դրա էությունը, տնտեսական օգուտը, կենսունակությունը, այլ պայմաններում դրա կիրառման հնարավորությունները, դժվարությունների հաղթահարումը և ընդհանուր վերելք ստեղծելու անհրաժեշտությունը։ Ձեռնամուխ լինելով առաջավոր փորձի, նորամուծության պրոպագանդմանն ու արմատավորմանը, հարկավոր է հետևողականություն ցուցաբերել, սկսած գործը հասցնել մինչև վերջ։ Սակայն, «Զանգեզուր» և «Բարեկամություն» թերթերը միշտ չէ, որ այդպես են վարվում, խորությամբ, պատշաճ ձևով լուսաբանում առաջավոր փորձը։

Հանդես գալով «Բարեկամություն» թերթի փետրվարի 8-ի համարում, Ջիլի կոլտնտեսության առաջավոր հովիվ Հուսեին Սուլեյմանովն առաջարկում է օգտագործել ճամբարակցիների փորձը, որոնք ոչխարների ծինը իրենցից 1,5—2 ամիս առաջ են սկսում։ Սակայն նա իր առաջարկությունը հանգամանորեն չի հիմնավորում, ճամբարակցիների փորձի էությունն ինչպես հարկն է չի բացահայտում և ցույց չի տալիս այդ փորձի կիրառման համար իրենց ունեցած հնարավորություններն ու պայմանները։

«Զանգեզուր» թերթում գյուղատնտեսության առաջավորների վերաբերյալ նյութերը շատ են, բայց դրանց զգալի մասը կարծես «երկվորյակներ» լինեն, ունեն միևնույն սկիզբն ու վերջը, հիմնականում գրված են ընդհանուր խոսքերով, չեն տալիս առաջավոր փորձի բուն էությունը, ուսանելին ու ընդօրինակելին։ Օրինակ, Տաթևի տնտեսության № 1 բրիգադայի բրիգադավար

Փարսյանին նվիրված հոդվածում («Հողագործի որդին», № 15) նշված է, որ հացահատիկային կուլտուրաների բերքատվության պլանը նա կատարել է 115 տոկոսով, լավ բերք է ստացել նաև մյուս կուլտուրաներից: Իսկ թե ինչ միջոցներով է նա հասել դրան, բրիգադայում ինչպես է կազմակերպել աշխատանքը, բացահայտված չէ: Դրա փոխարեն կան կենսագրական ավելի շատ նկարագրություններ, ընդհանուր խոսքեր:

Լուսաբանելով առաջավոր փորձի տարածման և սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքը, շրջանային որոշ թերթեր գյուղատնտեսական արտադրության արդյունավետության բարձրացման հետ սերտորեն առնչվող հիմնական հարցերի կողքով են անցնում կամ էլ մի քանի խոսք ասելով, իրենց անելիքը ավարտված համարում: Մինչդեռ մամուլը հաճախակի պետք է սկզբնական կուսակցական կազմակերպությունների, գյուղի բոլոր աշխատավորների ուշադրությունը բևեռի տնտեսության կարևոր հարցերի լուծման վրա, առանց որի չի կարող խոսք լինել սոցիալիստական պարտավորությունների հաջող կատարման մասին:

Հնգամյակի երրորդ՝ վճռական տարվա պլանները գերակատարելու համար ամբողջ երկրով մեկ ծավալված սոցիալիստական մրցությունը միլիոնների հայրենասիրական շարժում է, որն ամենահրատապ ու առաջատար թեման է թերթի էջերում:

> «Դա,— գրում է «Պրավդան»,— գաղափարական, քաղաքական այն բանալին է, որն օգնում է ավելի խոր, ավելի առարկայորեն բացահայտելու, աշխատավորական կոլեկտիվների պրակտիկայի հետ ավելի սերտորեն կապելու թե՛ տնտեսավարման հարցերը և թե մարդկանց կոմունիստական դաստիարակության պրոբլեմները: Որոշ թերթեր պետք է արագորեն ճշգրտեն մրցության լուսաբանման բնույթը: Չի կարելի թույլ տալ, որ ցաքուցրիվ հոդվածները, թվերի ու տոկոսների թվարկումը, ստեղծագործական թռիչքից զուրկ նկարագրությունը պատնեշեն և փոխարինեն գլխավորը՝ խոր ներթափանցումը կոնկրետ իրադրության մեջ, արտադրության վրա մարդու և մարդու վրա արտադրության ներգործության էության մեջ»:

Այս պահանջը վերաբերում է նաև մեր շրջանային թերթերին, որոնց մի մասը դեռևս մակերեսորեն է լուսաբանում մրցության ընթացքը:

Շրջանային որոշ թերթեր հաճախ տարվելով միայն արտադրական պլանների և ստանձնած պարտավորությունների կատարման մասին թվերի ու տոկոսների հրապարակումով և առաջավորների անունների թվարկումով, անտեսում են մրցության մյուս հարցերի՝ աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի, յուրաքանչյուրի մոտ երկրի տիրոջ զգացումի դաստիարակման, կարգապահության ամրապնդման, խնայողության ռեժիմի արմատավորման, թերությունների նկատմամբ անհանդուրժողականության, արտադրության արդյունավետության աճի նորանոր ռեզերվների գործադրման և այլնի լուսաբանումը:

Նոր խնդիրների համաձայն վերակառուցելով իրենց աշխատանքը, շրջանային թերթերը պետք է ավելի խոր, ավելի սիստեմատիկաբար լուսաբանեն մրցության ընթացքը և օգնեն գյուղի աշխատավորներին՝ մրցությամբ ստանձնած պարտավորությունները պատվով և ժամկետից շուտ կատարելու համար:

Վ. Հ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

---




Адрес редакции: Ереван-33, Барекамутян, 59 г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ և պրոպագանդայի բաժին՝ 27—25—29, պատ. քարտուղար և էկոնոմիկայի բաժին՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64:

ՎՖ 06437 Պատվեր 770 Թղթի չափսը $70 \times 108^1/_{16}$: Տիրաժ 14.200: Գինը 25 կոպ.:

Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 3/V 1973 թ.

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան: Ալ. Իսահակյան փող. № 28:




# Содержание

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՊԼԱՍՏՄԱՍՍԱՆ ՓՈԽԱՐԻՆՈՒՄ Է ՄԵՏԱՂԻՆ

*Հորատման աշխատանքների ժամանակ ծագում են զանազան բարդություններ, որոնք հասցնում են մթնոլորտային ճնշման խիստ բարձրացման:*

*Գիտատեխնիկական ընկերության անդամների առաջարկությամբ Ադրբեջանական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի նավթաքիմիական ինստիտուտի մի խումբ հետազոտողներ մշակել ու պատրաստել են պլաստմասսայից ապահովիչ դիաֆրագմաների փորձնական արդյունաբերական պարտիան, որը նախատեսված է 50—200 մթնոլորտային ճնշման դեպքում: Արդյունաբերական ջերմա-ռեակտիվ մամլափոշուց ստացված պլաստմասսայի ապահովիչ դիաֆրագմաները հեշտ են պատրաստվում և վեց անգամ էժան են չուգունե դիաֆրագմաներից:*

## ՄԻԼԻՄԵՏՐԵՐ ՄԵՏՐԵՐԻ ՓՈԽԱՐԵՆ

*Երկու մետրից ավելի հաստություն ունեցող տրադիցիոն բետոնի պատերը, որոնք պաշտպանում են ճառագայթահարումից, այժմ կարելի է փոխարինել ընդամենը 5 միլիմետր հաստությամբ հատուկ երեսապատով: Այդ հայտնագործությունը կատարել են Վարշավայի ֆիզիկոսները: Նրանց առաջարկությամբ բորի կարբիդի միասեռ շերտից պատրաստվում են յուրահատուկ ատոմային պաստառներ:*

*Քանի որ այդ միացությունը հալվում է միայն 2900° C-ում, ապա այդ սովորական պատային պանելներին կամ մետաղյա պատյաններին հաղցնում են հատուկ պլազմային այրիչներ: Բարակ շերտը գերազանց պաշտպանում է ճառագայթահարումից:*

## ԷԺԱՆԱԳԻՆ ՇՇԵՐ (ՇՇԵՐ, ՈՐ ՊԵՏՔ ՉԷ ՀԱՆՁՆԵԼ)

*Ապակյա շիշը բավականին ծանր է. կես լիտրանոց շիշը կշռում է մոտ 500 գրամ: Վերջերս ԳՖՀ-ում պատրաստում են շատ թեթև, 195 գրամանոց շշեր: Դրանք պատրաստում են հատուկ ապակուց:*

*Նոր շշերը ո՛չ միայն թեթև են, այլև այնքան էժան, որ, պարունակությունն օգտագործելուց հետո, կարելի է դեն նետել դրանք: Ի տարբերություն պլաստմասսայից պատրաստված ամանների, որոնք նույնպես գցվում են, այս շշերի ջարդոնը կարելի է օգտագործել որպես հումք:*

## ՌԱԴԻՈՆ ՊԱՀՊԱՆՈՒՄ Է ՍԵՐՄԸ

*Գերկարճ ալիքներն այժմ ավելի լայնորեն են օգտագործվում վնասատու միջատների դեմ պայքարելու համար: Վերջերս ԱՄՆ-ում փորձեր արվեցին միջատներով վարակված ցորենը տասը վայրկյանում ճառագայթահարել գերկարճ ալիքներով. ոչնչացավ հատիկակերների 82, հատիկացեցերի 88, բրնձի երկարակընճիթ վնասատուների 90 տոկոսը:*

## ՊԼԱՏԻՆՆ ԸՆԴԴԵՄ ՔԱՂՑԿԵՂԻ

*Պլատինի որոշ կոմպլեքսային միացություններ դանդաղեցնում են չարորակ ուռուցքների աճը կենդանիների մոտ: Այդ միացությունները կիրառելի են, օրինակ, լեյկոզներից մեկի և Ռուկերի սարկոմայի դեպքում: Դրանք արգելակում են ուռուցքային բջիջների՝ ԴՆԿ-ի ռեպլիկացիան (կրկնապատկումը), դրանով իսկ դանդաղեցնում դրանց բազմացումը: Պլատինի այդ միացություններից մեկը՝ բիսդիքլորդիամինոպլատինը շուտով կըհանձնվի կլինիկական փորձարկման:*

## ԿՈՄԲԱՅՆ ԽԱՂՈՂԱԳՈՐԾՆԵՐԻ ՀԱՄԱՐ

*Իտալական «Ինտերկապ» ֆիրման թողարկել է «Ռոմանյա» խաղողահավաք մեքենան, որի շնորհիվ զգալի չափով աշխատող ձեռքեր են ազատվում խաղողի՝ գինու սորտերի բերքահավաքի ժամանակ: Այն մշակող կետերին է հանձնում ոչ թե խաղողի ողկույզը, այլ՝ քաղցուն:*

*Կոմբայնի արտադրողականությունը հասնում է ժամում 20 ցենտների: Այն աշխատեցնում են վարորդը և չորս բանվորներ: Դրանով կատարվող բերքահավաքի ժամանակ խաղողի տերևները, ճյուղերը և խակ պտուղները չեն պոկվում: Բաքի ցածր ճնշման շնորհիվ, խաղողահյութը չի թթվում:*